# ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆՔ

# ԵՂԻՇԷԻ

## ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՎԵՐԱՅ

ԻՀ. ՎԱՐԴԱՆԱՅ ՀԱՅՈՒՆԻՈՅ

Ի ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ





Ի ՎԵՆԵՏԻԿ Ի Ս. ՂԱԶԱՐ

ՌՅԽԶ — 1896

# ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆՔ

# ԵՂԻՇԷԻ

## ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՎԵՐԱՅ



Ի Հ. ՎԱՐԴԱՆԱՅ ՀԱՑՈՒՆԻՈՅ

*Ի ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ*



ՎԵՆԵՏԻԿ Ի Ս. ՂԱԶԱՐ

ՌՅԽԵ — 1896

# ԱԶԴ

Առաջիկայ երկասիրութիւնս՝ տպագրուած Բազմավիպի 1896—7 ամաց ինն պրակաց մէջ, ի դիւրութիւն ընթերցասիրաց ամփոփեցինք հոս առանձինն։

Մենք թէ եւ սկսանք համառօտ գրութեան մի՝ կամ լաւ եւս՝ հատուածի մի նպատակաւ եւ մասնական պարունակութեամբ, խնդրոց բարդութիւնն ստիպեց զմեզ աւելի յառաջ երթալ, եւ յաւելուածովք բովանդակել Եղիշէի մասին եղած կարեւորագոյն հարցերը։ Յորոց լուծման թէ ո՛րչափ յաջողած ենք կամ ոչ, բանասիրաց կը թողունք դատել։

Բազմավիպէն հոս տեղափոխելու ժամանակ կատարած ենք քանի մի ոչ շատ նշանաւոր փոփոխութիւններ։ Եւ դեռ քանի մի փոքրիկ կէտեր՝ զորս կը փափաքէինք փոփոխած լինել, կը նշանակենք այս տեղ իբր ուղղելիք՝ խառն ընդ տպագրական վրիպակաց, խնդրելով յընթերցողաց ուշադիր լինել անոնց։

# ԿԱՐԵՒՈՐ ՈՒՂՂԵԼԻՔ



| ՎՐԻՊԱԿՔ | ՈՒՂՂԻՂՔ |
|---|---|
| Երես 9, տող 19· — ուրիշ խնդրոյ · · · ուղղակի կապ չունենալով · · · հետ | Թովմայի · · · երկրորդական տեղի բռնելով · · · նկատմամբ |
| 30, 8· — Հայոց Թըղթոյն պատասխանատու միայն Յովսէփ չէր կարող լինել կամ կարծուիլ Յազկերտէն, | Հայոց Թուղթը Թէպէտ եւ նախ Յովսեփայ անունը կը կրէր, բայց |
| 39, 22· — կու տայ· իսկ | կու տայ· նոյն դէպքն եւ անձն առանց անուան կը յիշէ եւ Եղիշէ· իսկ |
| 44, 25· — 238–9 | 238–9· Ղզ· 247 |
| 54, 10· — ընելու մէջ· ուստի | ընելու մէջ, զի երկու իշխանքն այլ ընտիր ուխտապահներ էին· ուստի |
| 55, 29· — յուլիս · · · յունիս | 16 յունիսի · · · 26 մայիսի |
| 60, 25· — Նորա | Վարազդատայ |
| 64, 20· — արդիւնքը· | արդիւնքը (Եղ· 162–3)· |
| 65, 11· — Այս իմաստիւ | Այս վերջին իմաստիւ |
| 73, 18· — Ղզ· 227 | Ղզ· 227, 243 |

| | |
|---|---|
| 77, 5. — յիշել. սակայն | յիշել, բաց ի Բակի դիպուածէն (212). սակայն |
| 93, 5. — որուք | ուրուք |
| 93, 28. — նոյն ինքն | հաւանօրէն նոյն ինքն |
| 96, 15. — «ի տեղիս | 450ին «ի տեղիս |
| 96, 21. — եւ կը յաւելու | եւ վերստին կը յաւելու |
| 99, 6, — կամ | այս ինքն |
| 99, 23. — հրաւիրակի դաւետարանի | հրաւիրակիդ աւետարանի |
| 139, 1. — կատանատես | ականատես |
| 151, 2. — եղական՝ սխալ | եղական՝ դէթ հոս սխալ |
| 164, 15. — Մարտակցութիւնը. եւ մահն ընդ Վարդանանց ; եւ նորա յիշատակի ջնջումն յԵղիշեայ | մարտակցութեան եւ մահուան յիշատակութիւնն յԵղիշեայ եւ յետոյ անոր ջնջումն |
| 166, 28. — թագաւորեճացանել | թագաւորեցուցանել |
| 167, 27. — Վահանայ | Մամիկոնեան Վահանայ |
| 187, 28. — չի համապատասխաններ | չի համապատասխաներ |
| 197, 9. — նորին | նոյն արծրունի պատմչին |
| 200, 24. — քան զնա | քան զարծրունին |

# ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆՔ

# ԵՂԻՇԷԻ

## ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՎԵՐԱՅ



*ՄՐԴԻ ուսումնական հայ երիտասարդաց ոմանք սաստիկ վարակուած են յոռետեսութեամբ։ Իրենց նախնեաց քով ուրիշ բան չեն տեսներ, բայց միայն կեղծիք, առասպել, ստութիւն։ Ամենեւին չգիտեն ճանաչել եւ յարգել նոցա ուսումնական բարձր վիճակն իրենց օրով, եւ մեծ երախտիքը. եւ քանի մի սխալներու համար, որոց չափ ամէն ազգաց մատենագրաց քով կան, նոցա բոլոր վաստակը եւ անունն ոտնակոխ կ'ընեն...»։ Այսպէս կ'ըսէր օր մի հայ մատենագրութեամբ զբաղող օտարազգի նշանաւոր բանասէր ոմն, խօսելով մի ուրիշ հայ բանասիրէ Մ. Խորենացւոյ վերայ հրատարակուած վերջին քննադատութեան մի նկատմամբ։*

Այդ է միանգամայն մեր համոզումն այլ. վերջերս շատից մէջ կը տեսնենք մի բուռն մղումն՝ ամէն ինչ որ հին է կամ սովորական՝ վեր ի վայր շրջելու, ոչ եթէ ճշմարիտը քան զսխալ աւանդականն յարգելու ոգւով, կամ ազգային պատմութեան եւ մատենագրութեան այս կամ այն կէտը լուսաւորելու, այլ խօլ բերմամբ որ եւ է նոր բան մի ըսելու, եւ այնու մատենագէտ եւ քննադատ կոչուելու ազգէն, կամ լաւ եւս՝ անաչառ քննադատ երեւելու՝ խիստ — թէ եւ յաճախ անիրաւ — դատափետութեամբ անձին կամ գործոյն զոր կը քննեն։

Յաճախ մեր երեւակայութեան առջեւ կ՚ելնէ ապագայ դար մի, յորում հրապարակի վերայ փոխանակ՝ օրինակ իմն՝ մի Խորենացւոյ, պիտի շրջին հինգ հարիւր Խորենացիք։ Եւ որպիսի՜ պիտի լինի տագնապն այդ ժամանակի սերնդոց, երբ զիրենք ստիպուած տեսնեն փոխանակ միոյ՝ կարդալ այդչափ մատեան, որոնք ուրիշ բան չեն, բայց եթէ մին միւսոյն եղծումն. ուրեմն բոլորն ի միասին մի ոչինչ։ Այդ ամենէն շատ աւելի նպատակայարմար պիտի լինէր մի միայն քննադատութիւն, որոյ տեսութիւնքն հաստատուած լինէին՝ ոչ թէ սոսկ գրելու համար մտածուած բռնազբօս փաստից, այլ շօշափելի՝ լուրջ եւ եւ անվիճելի հիմանց վերայ։

Մեր դիտողութիւնքն աւանդապահ ոգւոյ արգասիք չեն բնաւ, ինչպէս թերեւս կարծեն ոմանք. այլ բաց յայլոց՝ իրաւամբ ստիպեց

զմեզ կատարել զանոնք տէր Գրիգ. Տէրպօղոսեանի յօդուածը՝ «Նկատողութիւններ Եղիշէի պատմութեան վերաբերեալ» վերնագրով, որ տպուեցաւ Ամսօրեայ Հանդիսի տարւոյս 5, 6, 7 եւ 10 թուոց մէջ*. եւ զոր գրելու առիթ է տուեր իրեն Եղիշէի եւ Ղզ. Փարպեցւոյ անմիաբանութիւնն Ե դարու անցից քանի մի կէտերու նկատմամբ։

Արդար էր իւր շարժառիթն, եւ պէտքն՝ ստուգելու անոնց միջէն ուղիղը։ Ոմանք՝ որ յառաջ խօսած էին նոյն շրջանի վերայ, յամենայնի արժանահաւատ ընդունած էին զԵղիշէ՝ իբրեւ ականատես նոյն դարու անցից, եւ ոմանք նա եւ դիմախօսած Ղազարայ։ Իսկ Տէրպօղոսեան յասպարէզ եկաւ՝ նոցա հակառակ կարծիք յայտնելու, — թէպէտ ոչ ինքնաբերաբար, այլ շարժած յայլմէ՝ զոր ինքն իսկ կը յիշէ ի Հանդ. Թ. 7, յէջ 200, ծն. — իւր կողմանէ բազմապատկելով երկու պատմչաց տարաձայնութիւնքը, եւ գործածելով Եղիշէի դէմ կարիերեան լեզու մի։ Բայց ունէ՞ր արդեօք իրաւունք այդպէս վարուելու, թէ ընդ հակառակն ճշմարտութեան եւ արդարութեան սահմանէն դուրս ելաւ ընդդէմ այն անձին, որ այնչափ մերձաւոր է ամէն հայ սրտի, զայդ պիտի ջանանք ստուգել։

Անցնինք ուղղակի յօդուածին։

* Անցեալ տարի նոյն հանդիսի մէջ ուրիշ մ'այլ հրատարակեց՝ «Եղիշէի պատմութեան աղբիւրը» վերնագրով, որոյ մասին պիտի խօսինք յետոյ։

Տէր քննադատն ի սկզբան կը դնէ Եղիշէի պատմութեան մասին փոքրիկ յառաջաբան մի, յորում կը դատի զնա՝ առաջին, «միակողմանի ազբիւր». երկրորդ, նորա դիւցազունքը «չափազանցրած գործերով ներկայացուած». եւ երրորդ, Եղիշէի պատմածները «շատ անգամ հակասում են» նոյն դարու վերայ միւս գրողաց, Փարպեցւոյ, Յհ. կաթողիկոսի, Թովմ. արծրունւոյ, Վարդան պատմչի եւ այլոց:

Եւ իւր քննադատութեան նիւթ առնլով Եղիշէի եւ Ղազարայ երկրորդ դրուագին համեմատութիւնը, նոցա մէջ եղած տարաձայնութիւններէն կը զատէ հետեւեալ կէտերը. «Վարդանանց պատերազմը իբրեւ պատմական մի խոշոր երեւոյթ, ունէ՞ր արդեօք իւր հիմնական պատճառները, նախապատրաստող շրջանը, թէ թեթեւակի մի միտք էր, որ րոպէապէս ծագեց մոգերի մտքում, որոնց խորհրդով՝ իբր թէ՝ Յազկերտ ձեռնարկեց մի դժուար գործի: Մի եւ նո՞յն ելքով էին կամենում հայոց կուսակցութիւններն վտանգի առաջն առնել, եւ նրանցից իւրաքանչիւրը ինչպիսի՞ ոյժի եւ դիրքի տէր էր: Մարզպանը ի՞նչ դիրք էր բռնել. ունէ՞ր գործունէութեան մի որոշ ծրագիր: Ո՞րքան նպաստեց եւ ո՞րքան վնասեց Վարդանը այդ ծրագրի իրագործմանը»: — Եւ կը յարէ. «մեր կատարած համեմատութեանը նայելով, այդ երեք հարցերի պատասխանները որոշ կերպով տարբերում են Ղազարի եւ Եղիշէի մէջ. մանա-

ւանդ Թէ ուղղակի հակառում են իրար, եւ մենք այդ պիտի ցոյց տանք հետեւեալում »։ Եւ իւր յօդուածը կը բաժանէ չորս մասանց, զորս սկսինք զննել զատ զատ։

~~~~~~~~~~

## Ա

**Հայոց կրօնափոխութեան նպատակը պարսից կողմանէ. — Յազկերտի չար խորհրդատուք. — Մոգաց և եպիսկոպոսաց գործունէութիւնն ի սկզբան. — Պարսից և հայոց թղթերը։**

Առաջին մասին* մէջ Տէրպօղոսեան կը սկսի խօսել, թէ զհայս ի մոգութիւն դարձընելու նպատակն « ըստ Եղիշէի՝ մոգերի ցանկութիւնն էր, որ պարսկական կրօնի երկըրպագուները շատանան, որ Յազկերտն աղանդաւոր հպատակ չունենայ »։ Զայս հաստատելու համար յառաջ կը բերէ պատմչին մի պարբերութիւնն՝ ըստ հաճոյս քաղուածով մի։

* Նորա բուն Ա մասն ուրիշ խնդրոյ վերայ կը խօսի, որ ուղղակի կապ չունենալով յառաջաբանի մէջ յայտնած նպատակին հետ, մենք անոր պատասխանը յետաձգեցինք, եւ Բ մասն կոչեցինք Ա։
~~~~~~~~~~

« Աւեն մոգքն. Արքայ քաջ » * եւ այլն։ — « Բայց այդպէս չէ, կ'ըսէ, Ղազարի մէջ. այստեղ Միհրներսեհն է, որ Յազկերտին հետ առաջին անգամ խօսում է Հայոց խընդրի մասին », եւ կրօնափոխութեան ոչ թէ բուն կրօնական, այլ քաղաքական նպատակ ունենալով. որ է՝ զօրացնել իրենց պետութիւնն՝ Հայոց ընդ պարսս միացմամբ. այսու՝ կ'ըսէ արքային, « Զքեզ սիրեն եւ զարեաց աշխարհս, եւ ի կայսերէ եւ յօրինաց նորա եւ յաշխարհէն մերժին եւ հեռանան ի բաց » եւ այլն **, նոյնպէս ըստ կամս քաղուած մի։ Ապա քննադատը կը դիտէ, թէ այդ միտքը սեպհական էր սասանեանց՝ Բ Շապուհէն սկսած. որով աւելի կը ջանայ հաստատել պարսից հազարապետին խորհուրդը։ Եւ վերջապէս « մեր բոլոր նկատածները ամփոփելով, կ'ըսէ, տեսնում ենք, որ Վարդանանց պատերազմի պատճառների նկատմամբ՝ Ղազարն ունի լայն հայեացք, բուն քաղաքական տեսակէտ. իսկ նոյն խնդրում Եղիշէի միակողմանի, կրօնական մեկնութիւնը նորա հայեացքների եւ հետեւաբար պատմութեան թոյլ կողմն է հանդիսանում »։

Ուրեմն Եղիշէի եւ Ղազարայ տարաձայնութիւնքն ըստ քննադատին կը կայանան, նախ՝ Յազկերտի տրուած խորհրդոյն էութեան մէջ, եւ երկրորդ՝ խորհրդատուաց անձանց մէջ։ Մենք այլ հետազօտենք այդ կէտերը։

* Տպ. վենետեան ի 1864, յէջ 13։

** Տպ. վենետեան ի 1873, յէջ 119, 120։

Ա. Եթէ Եղիշէի եւ Ղազարայ խօսքերը կարդանք այնպէս՝ ինչպէս Տէրպօղոսեան մէջ կը բերէ քաղուածով, յիրաւի նոցա հայեացքը տարբեր պիտի գտնենք իրարմէ. առաջնոյնը՝ կրօնական, եւ երկրորդին՝ քաղաքական։ Բայց որչափ մեծ կը լինի ընթերցողաց զարմանքը, երբ մի եւ նոյն խօսքերը կը կարդան բուն իսկ մատենագրաց քով իրենց ամբողջութեան մէջ, բոլորովին տարբեր բովանդակութեամբ։ Տէրպօղոսեան իրեն նպատակ ունենալով՝ ինչպէս կ'երեւի՝ պարզապէս տկարացնել զԵղիշէ եւ բարձրացնել զՂազար, երկոցուն վկայութեանց մէջ եւս ինչ որ աննպաստ գտեր է իր դիտաւորութեան՝ դուրս է թողեր, եւ նպաստաւորը միայն քաղեր։ Մենք ոչ Եղիշէի հայեացքը կը գտնենք զուտ կրօնական, և ոչ Ղազարայն՝ զուտ քաղաքական. այլ երկուքն ալ ունին թէ կրօնականը եւ թէ քաղաքականը, ուրեմն մի եւ նոյն հայեացքը։ Տեսնենք այժմ իւրաքանչիւրին վկայութիւնքը զատ զատ։

Եղիշէն կը գրէ. «Առեն մոգքն. Արքայ քաջ, աստուածքն ետուն քեզ զտէրութիւնդ եւ զյաղթութիւն, եւ ոչ ինչ կարօտեն նոքա մարմնաւոր մեծութեան, բայց եթէ ի մի օրէնս դարձուցանես զամենայն ազգս եւ ազինս, որ են ի տէրութեան քում». Հոս կ'աւարտի կրօնականը եւ կը յաջորդէ քաղաքականը. «յայնժամ (այս ինքն՝ երբ հետեւանք առաջնոյն) եւ աշխարհն Յունաց հնազանդեալ մնացէ ընդ օրինօք քովք։ Արդ զբանս

գայսոսիկ վաղվաղակի կատարեա դու, արքայ, զօր գումարեա եւ գունդ կազմեա, խաղա գնա… Եւ որպէս երեւիս մեզ ի դենիս մե-րում, տիրես դու եւ երկրին քուշանաց, եւ յոյնք իսկ ոչ եղանեն ընդ քո իշխանութեւնդ։ Բայց միայն զաղանդ քրիստոնէից բարձ ի միջոյ » (15)։ Տէրպօղոսեանի կողմանէ դուրս են թողուած վերջին երկու նոտրագիր նա-խադասութիւնքն, որք կը խախտեն նորա միակողմանի տեսութեան հիմունքը։ Նա պա-հեր է միայն առաջին նոտրագիր տողը՝ հա-ւանօրէն լաւ չիմանալով անոր միտքը. « Աշ-խարհն յունաց, կ'ըսեն, հնազանդեալ մտցէ ընդ օրինօք քովք »։ Հոս օրինօք բառն եթէ նշանակէր կրօնք, պիտի չըսէին քովք, այլ մերովք, ինչպէս ի ստորեւ՝ « ի դենիս մե-րում ». այս ուրեմն օրէնքը կը նշանակէ հոս՝ աշխարհ, տէրութիւն, — զի այդ բառն այդ իմաստն այլ ունի։ — Բայց առանց ա-դոր իսկ շատ պարզ են յապաւեալ տողից ի-մաստներն, եւ աներկբայ ցոյց տալու՝ թէ ինչպէս կը բովանդակեն եւ քաղաքական հա-յեացք, զոր Տէրպօղոսեան չէ ուզած տես-նել։ Այն է, ի շնորհս դից ջնջելով քրիս-տոնէութիւնը հպատակ ազգերէն, այնու միան-գամայն եւ երկու թշնամի հզօր պետութեանց վերայ պարզել իւր բազուկը։

Փարպեցւոյն լսենք այժմ։ Նա այն կետէն՝ յորում կը սկսի խօսել Միհրներսեհի վերայ, կը ներկայացնէ զնա մեզ՝ մարդ մի սաստիկ մոլեռանդ արեւապաշտութեան, որ միշտ

կ՚երկնէր իւր սրտին մէջ «զխորհուրդս անօրէնութեան՝ ի կործանումն եւ ի կորուստ թուլամիտ ոգւոց» (107), եւ ոչ թէ ուրիշ վախճանաւ։ Իւր առաջին որսը՝ Վարազվաղան սիւնեցին իրեն շահելու համար՝ ոչ թէ քաղաքական ակնկալութիւններ կը շնչէ նորա մէջ, (թէպէտ նա առանձին «ի միտս իւր» ունէր այդ յոյսը, 114), այլ երկայն եւ ճարտարաբան ճառերով կը ցուցնէ անոր զրադաշտական կրօնից կարծեցեալ մեծութիւնը, վսեմութիւնը եւ ճշմարտութիւնը։ Եւ երբ կը գիջանի նա, ինքն «խնդամիտ եղեալ» կ՚ուրախանայ, համարելով թէ համոզեց զնա, եւ «կամաւ եւ ախորժելով յանձն էառ» (110)։ Վարազվաղան կ՚առաջարկէ անոր նա եւ հայոց դարձն ի մոգութիւն, «ճանաչելով ի նոյն խորհուրդս չարութեան յորդոր եւ զկամս» նորա (108)։ Եւ երբ վերջինս կը ներկայանայ Յազկերտի՝ նոյն առաջարկութեան համար, մենք տակաւին ուրիշ խօսք չենք գտներ նորա բերանը, բայց եթէ եռանդուն հոգ մի «յաղագս գիւտի ոգւոց... որով ոգիք ծառայից (քրիստ. հպատակաց) մի՛ կորիցեն». թէ «աստուածք զոգւոցն գիւտս ջերմագոյն եւս գրեն եւ կամին տեսանել». զոգիս «ի մոլորութենէ ի ճանապարհ ածել». խորհել «յաղագս այնչափ կորուսեալ ոգւոց գիւտի» եւ այլն. եւ թէ վերջապէս՝ «եթէ հոգայք ընդ այնչափ ոգւոյ փրկութեան, գիտացէք՝ զի աւելի քան զաստի թագաւորութեանդ մեծութիւնդ զոր ու-

նիք, ոգւոցն բարի եւ մեծութիւն որ լինէր անդ (յաշխարհս հայոց, վրաց եւ աղուանից), շատ օգուտ էր ձեզ եւ պիտոյ » (117–8)։

Մինչեւ հոս Միհրներսեհի ճառին ամբողջութեան մէջ, որոյ քանի մի կէտերը միայն քաղեցինք, կը տեսնուի զուտ կրօնական հայեացք եւ նպատակ, ինչպէս մնաց խրատուն առաջին մասին մէջ յԵղիշէէն. բայց ո՛րչափ աւելի եռանդնալից եւ երկայնաբան քան ղայն։ Այսուհետեւ վերջապէս սա այլ կը շրջէ իւր խօսքը քաղաքականի. « Ես առաւել այլ օգուտս մեծամեծս եւ կարեւոր իրս տեսանեմ յիրս յայս՝ արեաց աշխարհիս ». եւ կը սկսի յիշեցնել, — բայց դեռ միշտ կրօնականը՝ հոգւոյ օգուտը ներս խառնելով, — թէ հայոց աշխարհն յունաց սահմանակից լինելով, եթէ մոգութիւն ընդունի, պարսից հետ աւելի սերտիւ կը կապուի. նոցա պատճառաւ աղուանք այլ իրենց կը յարին, եւ այնու կը զօրանայ իրենց պետութիւնն յունաց դէմ, ինչ որ յառաջ տեսանք։ Այս երկրորդ մասին սկզբնաւորութիւնն՝ « Ես առաւել այլ օգուտս... տեսանեմ յիրս յայս », Յազկերտի միտքը եւ սիրտն աւելի եւս հրապուրելու եւ նախորդ առաջարկութեան վրայ համոզելու յայտնի երեւոյթը կ'ընծայէ այս երկրորդին. եւ չի ընդունիր բնաւ՝ որ սա եղած լինի առաջնոյն վախճան, ինչպէս կը կարծէ Տէրպօղոսեան, այլ ընդ հակառակն՝ հետեւորդ եւ օժանդակ անոր։

Ակներեւ է թէ այս խորհուրդը Եղիշէէն

առած է Փարպեցին, եւ աւելի ընդարձակելով՝ պարզաբաներ է Միհրներսեհի չրթանց վերայ, եւ ոչ թէ յայլմէ ստացեր։ Մեր քննադատն այլ նոյնպէս պարզաբաներ է Ղազարայ խօսքերը, առանց համարելու՝ թէ այդու տարբեր բան մի կ՚ըսէ քան զնա։ Միայն թէ Եղիշէի քաղաքական հայեացքն աւելի լայն է քան զՂազարայն, եւ համաձայն գոռոզ ձկտմանց արքայից արքայի, որ ոչ միայն տկարացնել կը ցանկար յունաց ոյժը, այլ եւ եթէ կարելի էր՝ նուաճել իսկ զանոնք. եւ ահա այս միտքն է որ կը փայփայեն մոգերն ըստ Եղիշէի. «Աշխարհն յունաց հնազանդեալ մտցէ ընդ օրինօք քովք»։ Եւ ոչ այս միայն, այլ նա եւ «տիրելն երկրին քուշանաց». խորհուրդ մի, որ Տէրպօղոսեանի գրչին մի հարուածով կը տեղափոխուի հազարապետին մտաց մէջ. «Միհրներսեհի կարծիքով, կ՚ըսէ, յունաց դէմ պատնէշ ունենալ հայերին, այդ ժամանակ երկրի ամբողջ զինուորական ոյժը կարելի էր ուղղել հոնաց դէմ (քուշան)». մինչ մենք նորա խօսից մէջ հոնաց՝ կամ որ նոյն է՝ քուշանաց* անունն իսկ չենք գտներ։

Եթէ երկու պատմչաց հայեցից մէջ անհրաժեշտ հարկ է ընտրութիւն դնել, Ղա-

* «Հոնաց աշխարհին, զոր քուշանս անուանեն» (Եղ. 20). վերջինքն առաջնոց գլխաւոր եւ հզօրագոյն ցեղն էին, որոց անուանքը Եղիշէ անխտիր միմեանց տեղ կը գործածէ։

զարայ վերայ պէտք է այնպէս նայել՝ ինչպէս նա ինք զինք կը ներկայացնէ մեզ, անկեղծութեամբ խոստովանելով, թէ իւր ձեռնարկած գործը՝ պատմագրութիւնն՝ «ի վեր քան զկար գիտութեան մերոյ էր» (17), — գլխաւորապէս այն դիպաց մէջ՝ որք ժամանակականուխ էին քան զինքն. — գործ մի, «ուր պիտոյ են յարմարութիւնք բանից, որոշեալ կարգադրութիւնք ըստ հրամանի կանոնեալ գիտութեանն, բերել պատկառելով ստուգագրութիւն անպարսաւ յականջս իմաստասէր լսողաց»: Մեր քննադատն անտեսելով առաջին վկայութիւնը, անտեսելով նա եւ «պիտոյ են» խօսքը՝ որ կարօտութիւն կը յայտնէ, մէջ կը բերէ լոկ մնացածը, իբր ցուցնելու համար՝ թէ այդ ուղղութեամբ է գրեր Ղազար*: — Գալով Եղիշեայ, իւր պատմածոց «ականատես» (9) եւ «ոչ ի լուր զարթուցեալ» (17) վկայի՝ ինչպէս Ղազարն էր, յայտնի է՝ թէ նա աւելի լաւ կը ճանաչէր պարսից ձկտումները, մօտէն շօշափելով նոցա երակը եւ տարիներով շփուելով նոցա հետ ընդ հայոց գնդին՝ որուն քահանայութիւն կ'ընէր մինչեւ մեծ պատերազմն, ըստ Սոփե-

* Քննադատն այդ համոզումն առած կը թուի Փարպեցւոյ վեննետեան առաջին տպագրին յառաջաբանէն, յորում նոյնպէս մէջ կը բերուին պատմագրին խօսքերն ի գովութիւն անոր: Բայց խոնարհաձեւ բացատրութիւնքը միշտ հակառակ պէտք չէ հասկնալ եւ անտեսել:

բաց (ԺԱ) յայտնի վկայութեան *. լաւ հըմտանալով նոցա կրօնական պաշտամանց եւ իրեն սեպհականելով մինչեւ իսկ նոցա լեզուին շատ բառերը։

Այս անսեթեւեթ ճշմարտութեան յայտնութենէ վերջ, «պրագմատիկական ուղղութիւնից» բոլորովին հեռի կը գտնենք այն երգիծանքը՝ զոր Տէրպօղոսեան կ'ուղղէ Եղիշեայ, թէ «երեւոյթի միայն արտաքինը տեսնելու սրատեսութիւն ունի»։ Մեր նախնեաց սխալներու պաշտպան չենք. բայց եւ չենք արդարացներ նոցա երեսին նետուած այն ձրի հեգնութիւնքը, որք նոցա խօսից արտաքինն անգամ չտեսնելու սրատեսութիւնից յառաջ կու գան։ — Դառնանք այժմ քննել՝ թէ ո՛վ կամ ո՛յք էին բուն խրատտուքն արքայից արքայի։

Բ. Ինչպէս արդէն տեսանք, մոգերն էին ըստ Եղիշէի, եւ հազարապետն ըստ Փարպեցւոյն. արդ ո՞ւմ իրաւունք տալ։

Քննադատը երկրորդին կու տայ. բայց մեր համոզումն ուրիշ է։ Դոցա առաջինն սկսեալ նախ քան Յազկերտի այդ խորհուրդն ընդունե-

* Այդ պաշտամանց միայն կրնար նա յամին 449 (տես ի հետեւեալ ծան.) «անդէն ի տեղւոջն պատահել» (Եղ. 27), այս ինքն ի Պարսկաստան. եւ յետ պատերազմին կը ճգնաւորի (Սոփ.)։ Այս իսկ պատճառներով չէր կարող նոյն 449ին Արտաշատու ժողովոյն մէջ յիշուած «Եղիշայ եպիսկոպոսն Ամատունեաց» (46) լինել, այլ սա պատմչէն տարբեր ոմն էր։

էր՝ կը յաճախէր ի Պարսկաստան, ինչպէս ըսինք. եւ կը վկայէ՝ թէ «ես յինքնին անձամբ ի տեղւոջն պատահեցի եւ տեսի» (27) արքային ընդունած խորհրդոյն գործադրութեան սկըզբնաւորութիւնն ի Պարսկաստան։ Իսկ այն օրէն անցած էին քառասունէն աւելի տարիներ՝ երբ Ղազար սկսաւ գրել իր պատմութիւնը*. մեռեր էին Յազկերտ եւ Միհրներսեհ «ժերն դառնացեալ» (Եղ. 69). առաջ-

* Յազկերտ մոգաց խորհուրդը կ'ընդունի (Եղ. 15) եւ իսկոյն կը սկսի գործադրել մի մասն, որ է՝ քրիստոնեայ հպատակներն առ ինքն կոչել (16–8), առանց տակաւին հրապարակաւ յայտնելու իւր չար միտքը, (յայտնելը տես ի 20). եւ այսպէս կ'ընէր ամէն տարի, «սկսեալ ի չորրորդ ամէ տէրութեանն իւրոյ (Քրիստոսի 441, ուրեմն և նոյն տարւոյն ընդունեցաւ խորհուրդը), մինչեւ յամն մետասաներորդ թագաւորութեանն» (21). իսկ «ի սկզբան երկոտասան ամի թագաւորութեանն իւրոյ» (Քրիստոսի 449) յաղթելով քուշանաց (31), այդ առթիւ մոգերը կը կրկնեն իրենց առաջարկութիւնը (32)։ Նա թէպէտ ատոր յառաջ արդէն սկսած էր բռնադատել ի Պարսկաստան գտուող քրիստոնեայքը (27–31), բայց յայնժամ աւելի խստիւ ձեռնարկեց այդ բանին (33–8), ուր էր եւ Եղիշէ (27)։ — Իսկ երբ գրեց Ղազար հրամանաւ Վահանայ, սա արդէն մարզպան էր (15, 17), եւ այդ պատիւն ստացած յամին 486։ Ուրեմն առաջին խորհրդատուութենէն մինչեւ այդ տարին (աւելին թողլով, զի յայտնի չէ՝ թէ մարզպանութեան ո՞ր տարւոյն գրեց Փրպ.) կ'ընեն քառասուն եւ հինգ տարի. և երկրորդէն՝ երեսուն եւ եօթն տարի։

նոյն յաջորդեր էր Պերոզ, եւ սորա՝ Վաղարշ։ Մեռած էին նոյնպէս Յազկերտի հետ գործող հայ նախարարք. Փարպեցին թէպէտ կանուխ տեսած էր զկամսր. Արշաւիր, բայց անորմէ լսածներն «ըստ տկարամտութեան մերոյ, կ՚ըսէ, ոչ եղաք բաւական՝ յիշել զբովանդակն ի կարգի» (316). նա եւ չգիտենք՝ թէ ամէն բան լսած էր Արշաւրէն, կամ սա ինչպէս ի հայս, նոյնպէս եւ ի պարսս կատարուած ամէն բանին ճշդիւ տեղեակ էր։ Արդ այսպիսի պայմանի մէջ արդարամտութեան դէմ կը թուի մեզ վստահելը Ղազարայ ըսածին՝ թէ Միհրներսեհ էր խորհրդատուն, եւ ոչ մոգերն՝ ըստ Եղիշեայ. եւ չենք ըմբռներ՝ թէ այդ ժամանակէն հազար չորս հարիւր յիսուն եւ հինգ տարի վերջ Տէրպօղոսեան ի՞նչպէս հասկցաւ առաջնոյն ճշդութիւնը եւ երկրորդին սխալը։

Փարպեցւոյն խօսքերն ըստ մեզ բնականութենէ՝ հետեւաբար եւ հաւանականութենէ շատ հեռի են։ Զոր օրինակ, նա ուստի՞ գիտէր՝ թէ Հազարապետն «արկեալ (էր) ի միտս (իւր) ի շատ ամաց զխորհուրդս անօրէնութեան», կամ ադոր «բազմաժամանակեայ մտածութիւն» (107) լինելը։ Խորհուրդը՝ մտածողը միայն գիտէ, եւ նա՝ որուն կը յայտնէ մտածողը. իսկ Փարպեցին յետ այնչափ տարւոյ ե՞րբ տեսաւ զՄիհրներսեհ կամ նորա սրտակիցներէն մին, եւ իմացաւ զայդ։ Կրնար լսել՝ թէ Միհրներսեհ էր այդ խորհրդոյն հեղինակը, եթէ այդպէս լինէր.

բայց խորհրդոյն որչափ ժամանակէ ի վեր Նորա մտաց մէջ երեւելն իմանալ, այդ բանք կարելի էր միայն երեւակայութեամբ։

Բաց այտի, Ղազար յիշեալ դարանը հայ ազգի դէմ լարելու մէջ Միհրներսեհի խորհրդակից գտնելով ցուցնեցին Վարազվաղան, զոր տեսանք յառաջ, կը սկսի գեղեւիլ՝ թէ դոցանէ ո՛ւմ տայ խորհրդոյն գիւտը. այսու յայտնի ընելով տարտամ աւանդութեան մը և կամ վերստին իւր երեւակայութեան հետեւիլը։ Այսպէս, մինչ դեռ զայն հազարապետին ընծայեց, եւ դարձեալ՝ թէ նա «եզիտ սատար մոհաթոյն եւ գրգռիչ (ապա ոչ գտիչ) անօրէն իշխում չար մտածութեանն զայրն զդիւազգեաց զՎարազվաղան» (117) եւ այլն, այլուր կը մերժէ զայն եւ գիւտը միւսին կը սեպհականէ՝ ըսելով. «Խորհէր ի միտս իւր այրն աստուածուրաց, սադրելով Նմա դիւին (Նախ քան դիմելն առ Միհրներսեհ),… թէ կամ հաւանի աշխարհն հայոց եւ ուրանայ», եւ այլն (114). եւ «խորհուրդ դիւական ի միտս (հազարապետին) արկեալ, առաջնորդ կորստեան աշխարհիս լինէր» (108). «եղեւ դեղագործ մահու (այսինքն՝ նա հնարեց դեղը) եւ մատուցող (առաջարկող) կորստեան ոգւոց՝ անօրինաւն Միհրներսեհի» (109). եւ «եղեւ պատճառ կորստեան բազմաց եւ կոտորածի աշխարհիս հայոց» (116)։ Ահա թէ Միհրներսեհ «յայտնի քաղաքագէտն» ուստի՛ կը ստանայ հայոց դարձի միտքը՝ վերջին տողից համեմատ։ Արդ այս

հակասութեան միջէն ի՞նչպէս հանելու է զՂազար։ Այդ պաշտօնը Տէրպօղոսեանի կը թողունք, մեր կարողութենէ վեր լինելով։

Ըստ մեզ, այդ անցից մէջ Եղիշէի անձամբ ներկայութիւնն առանձին բաւական էր հաւատալու իրեն քան Փարպեցւոյ, եթէ չլինէր իսկ ուրիշ փաստ։ Զոր օրինակ, եթէ հազարապետին ընծայուած խորհուրդը «սասանեան տոհմի փայփայած գաղափարն էր Շապուհ երկրորդի օրերից սկսած», ուրեմն Տէրպօղոսեանի այդ վկայութեամբ իսկ չէր կարող այդ խորհուրդը մի անհատի մտաց գիւտ լինել. յարգելի քննադատն այդու իսկ կը տապալէ իւր շինածը Ղազարայ վերայ։ Ընդ հակառակն, ըստ Եղիշէի՝ ոչ լոկ մոգաց, այլ միանգամայն պարսից ամբողջ նախարարութեան համոզումն էր այն, ինչպէս յառաջ տանելով իւր խօսքը՝ կ'իմացնէ. «Հաճոյ թուեցաւ խորհուրդն թագաւորին եւ մեծամեծացն որ էին (եւ ոչ թէ յայնժամ եղեն) ի նմին բանի» (16). ուրեմն մոգերէն լսելէն յառաջ ունէին նոյն համոզումն։ Ուրիշ տեղ մ'այլ կ'իմացնէ Միհրներսեհի մոգաց հետ մասնակցութիւնը եւս ի նմին. «Իսկ չարասէր մոգպետն հանդերձ մեծ հազարապետաւն չնչեաց չարախօսութիւն» (69) եւ այլն. եւ պարսից կրօնական նամակը նորա անուամբ կը դնէ։ Ուրեմն, ըստ իրեն՝ ոչ մոգերը եւ ոչ Միհրներսեհ հեղինակ չէին այդ հինաւուրց խորհրդոյն, այլ արծարծողք միայն, եւ փութացնողք անոր կատարումն. բայց այդ ար-

ծարծման սկիզբը մոգերը տուին, ինչպէս կ'աւանդէ, եւ այս է ուղիղը։ Զայս ինքն իսկ Ղազար կը խոստովանի, առ Հայս գրուած Թղթին մէջ Յազկերտի բերանը դնելով այս խօսքը. «Իսկ իմ զմտաւ ածեալ, ի մոգուցն եւ յայլ իմաստունն եւ յաւագ մարդկանէ արբեաց աշխարհիս տեղեկացեալ, թէ... պարտիմք ընդ փրկութիւն եւ ընդ գիւտ ամենեցուն հոգւոց հոգալ եւ գտանել» (122)։

Եղիշէ բնաւ շահ չունէր մի եւ նոյն խորհուրդը նախ մոգաց բերանը դնելու մէջ, փոխանակ հազարապետին տալու։ Եւ այս կէտիս մէջ Ղազարայ տարաձայնութեան պատճառն իմանալու համար՝ հարկ է նկատել նորա ճիգը՝ միշտ տարբեր բան մի ըսելու Եղիշէէն։ Վարդանանց պատերազմի պատմութիւնը կ'առնու անորմէ, — ինչպէս կ'իմանանք իւր մանրամասն հետեւութենէն՝ Եղիշէի պատմածոց հանդերձ զուգընթաց կարգաբանութեամբ, — եւ նորա անունն անգամ չի տար, որպէս զի հետեւող չկարծուի։ Եւ կը զարդարէ զայն այնպիսի հանգամանօք՝ որ առաջնոյն քով չկան. ինչպէս են՝ Վարդանայ ի յոյնս փախուստը, աղուանից մէջ կամսարական Արշաւրի կռուոյն մանրամասնութիւնքը, Պարսկաստանի ճանապարհին վերայ Ղեւոնդի եւ Վասակայ հանդիպումն եւ խօսակցութիւնը*, եւ այլն. դի-

* Զոմանս յայսպիսի զանազանութեանց կը յիշէ եւ տր. Գր. Խալաթեան՝ ի Ղազար Փարպեցի եւ գործն նո-

պուածք, որք «պրագմատիկական ուղղութիւնից» աւելի՝ ժողովրդական աշխոյժ երեւակայութենէ ծագած լինելու վիպական երեւոյթն ունին*: Փարպեցին ներկայ խնդրոյս մէջ այլ ուզեր է հեռանալ աղբերէն. եւ անշուշտ ժամանակի անցից մէջ Միհըրներսեհի մեծ գործունէութիւնն ապաւէն առնլով, անոր ընծայեր է նա եւ գործոյն սկիզբը, խրատտուութիւնը. բայց Յազկերտի թղթոյն մէջ մատնելով ինք զինքն, եւ յայտնելով ճշմարտութիւնը, ինչպէս տեսանք: — Այժմ անցնինք ուրիշ խնդրոց:

Գ. Երկու պատմչաց հայեցից տարբերութիւնը Տէրպօղոսեան կը նկատէ «նա եւ մոգերի եւ եպիսկոպոսների գործունէութեան խնդրում՝ Յազկերտի ձեռնարկութեան սկըզբին». եւ կը գտնէ, որ ըստ Եղիշէի՝ մոգերն են Յազկերտի քով «հրահանգողի եւ ներ-

րէն, զԵղիշէ միշտ ծանրակշիռ նկատելով միւսին դէմ: Սակայն մեր ընթերցողները չենք կարող վստահեցնել յարգելի գիտնականին 1883ին ունեցած կարծեաց վերայ. որովհետեւ անցեալ տարի Ամսօրեայ հանդէսի մէջ (Թիւ 4) յօդուածով մի ծանոյց թէ փոխած է զանօնք. զոր եւ պիտի տեսնենք ապա. եւ չենք գիտեր՝ թէ այս տարի ինչ կարծիք ունի:

* Ասոնց կարգէն են նա եւ Վահանայ [illegible] հոգւով [illegible] դէմ, եւ [illegible] դէմ տարած դիցաբանական յաղթութիւնքը, կատարուած ոչ թէ երկայն տարիներ յառաջ, այլ որ զարմանալին է, նոյն ինքն Փարպեցւոյն օրով:

գործողի» դեր կատարող, եւ եպիսկոպոսները նախարարաց քով․ իսկ ըստ Փարպեցւոյն՝ Ցազկերտ եւ նախարարք են այդ դերը կատարողք կրօնական դատուն վերայ։ «Այսպէս Ցազկերտը, Ղազարի համաձայն, հրամայում է մոգերին դաւանանքը գրել, ... եւ նախարարները հրամայում են եպիսկոպոսներին ժողովուիլ հրովարտակին պատասխանելու համար․ իսկ մոգերը եւ եպիսկոպոսները միայն հրաման կատարողներ են հանդիսանում։ Բայց Եղիշէի աւանդելով մոգերն են հրամայում թագաւորին — "կատարեա, զօր գումարեա, արա, խաղա, գնա, զաղանդ քրիստոնէից բարձ ի միջոյ„ —... նոյնպէս եւ Ցազկերտին պատասխանում են նախարարների փոխարէն եպիսկոպոսները, եւ այդ խնդրում նախարարները միայն "հաւանութիւն„ են տալիս»։

Այս տեսութիւնն այլ որչափ հեռի է ստուգութենէ եւ անկողմնակալութենէ։ Թէ Եղիշէ «Ցազկերտի ձեռնարկութեան սկզբին» մոգաց «հրահանգողի եւ ներգործողի» դեր կ՚ընծայէ, եւ ոչ թէ նոցա առանձինն, այլ պարսից աւագանւոյն հետ ի միասին, այդ ստոյգ է, ինչպէս տեսանք յառաջ։ Բայց միանգամայն եւ ճշմարտութիւն է այդ, — առ այժմ դեռ չենք խօսիր՝ թէ որպիսի բնութիւն ունէր այդ գերը, — ինչպէս կ՚իմանանք նոյն իսկ նորա հակառակ վկայող կարծուած Ղազարայ այլ բազմաթիւ վկայութիւններէն։ Զոր օրինակ․ Ցազկերտ լսելով Միհրներսեհի

կարծեցեալ խորհուրդը, «յայտնէր մոգուցն եւ այլ աւագանոյն արեաց» (121)։ Պարսից Թղթոյն մէջ ինքն Յազկերտ դարձեալ կը յայտարարէ՝ թէ իւր ձեռնարկութեան համար նախ թելադրութիւն ընդունած է «ի մոգուցն եւ յայլ իմաստուն եւ յաւագ մարդկանէ արեաց աշխարհիս» (122), զոր տեսանք և յառաջագոյն։ Հայոց մերժողական պատասխանին ընդունելով՝ կը հրամայէ «կոչել զմոգսն եւ զամենայն աւագսն դրանն,... եւ կարդալ առաջի ամենեցուն։ Եւ լուեալ զբանս նամակին թագաւորն հանդերձ մոգօքն եւ ամենայն աւագանեաւ դրանն, եւ... հարցանէր զմոգսն եւ զամենայն արեաց աւագանին... իսկ դասք մոգուցն եւ ամենայն մեծամեծացն... Իբրեւ լուաւ զայս ամենայն ի մոգուցն եւ յամենայն դրան աւագանոյն» (130-1)։ Երբ մեր նախարարք կը կոչուին ի դուռն, կը հրամայէ Յազկերտ, «որպէս զի ամենայն աւագանին դրանն՝ հանդերձ երեւելի մոգօք՝ առաջի նորա լիցին ի խորանին» (135), եւ այլն։ — Այս ամէն վկայութիւնքն, յորս առաջին տեղին Ղազար միշտ մոգաց կու տայ եւ ապա կը յիշէ զաւագանին, կը հաւաստեն մեզ՝ թէ մոգերն ոչ միայն «հրահանգող եւ ներգործող» էին Յազկերտի վերայ, այլ եւ գլխաւոր եւ մեծագոյն ազդեցութիւն ունեցող քան զաւագանին։ Ղազարայ այս բոլոր խօսից աչք կը գոցէ Տէրպօղոսեան, եւ մոգաց այդ դերը Յազկերտի կու տայ նոցա վերայ. փաստ. — որովհետեւ

Յազկերտ առ հայս նամակը նոցա գրել կու տայ. «Կոչէր զմոգսն, եւ գրեալ զօրէնս մոգութեանն՝ տայր բերել ի հայս» (121): Եթէ դա փաստ մ'է, չէ կարող հակառակ լինել Եղիշեայ, որ ունի մի եւ նոյն վկայութիւնն աւելի որոշ. «Հրամանն ետուն մոգաց եւ մոգպետաց՝ նամակ մի գրել» (40): Բայց չենք գիտեր՝ թէ արքայի հրամանատարք ինչո՞ւ չէին կարող միանգամայն ներգործող լինել նորա վերայ. հպատակաց իրենց իշխեցողաց վերայ ազդելն ամենասովոր բան չէ՞: Կը զարմանանք այս բանիս դէմ հակառակութեան վերայ: — Այժմ տեսնենք՝ թէ որպիսի՞ ներգործութիւն էր այն:

Յայտնի է Փարպեցւոյն խօսքերէն՝ թէ լոկ խորհրդատուք էին արքային: Բայց ըստ Եղիշէի՝ հրամայողք են եղեր, որովհետեւ կ'ըսեն անոր. «կատարեա, զոր գումարեա, արա» եւ այլն: -- Կ'երեւի՝ մեր քննադատը տեղեակ չէ՝ թէ բայից հրամայական եղանակն հայերէնի մէջ միշտ հրամայել չի նշանակեր, այլ եւ խորհուրդ տալ եւ մինչեւ իսկ աղաչել («խոնարհեցո՛ տէր զունկն քո եւ լո՛ւր ինձ» եւ այլն): Բայց նոյն իսկ Եղիշէի հարցընենք իւր ըսածին մեկնութիւնը. «Հաճոյ թուեցաւ, կը յարէ իսկոյն, խորհուրդն՝ թագաւորին եւ մեծամեծացն» (16): Յայտնի է ուրեմն՝ թէ Եղիշէի խօսքերն այլազգ մեկնելն՝ իրենց կերպարանքէն օտարացնել է զանոնք: — Դառնանք խօսել եպիսկոպոսաց գործունէութեան վրայ:

Փարպեցին խօսելով հայոց Նամակագրութեան մասին, կ՚ըսէ. «Ժողովեցան այնուհետեւ ըստ հրամանի տանուտերացն հայոց սուրբ եպիսկոպոսք» եւ այլն (124). եւ Եղիշէ. «Այս ամենայն եպիսկոպոսք... ժողովեալք ի Թագաւորանիստ տեղին յԱրտաշատ, հաւանութեամբ նախարարացն... արարին Նամակին պատասխանի» (47)։ — Այս տեղ մին միւսին բնաւ չի հակառակիր. այլ երկուքն այլ զատ զատ հանգամանաց վերայ կը խօսին։ Յազկերտի Թուղթն ուղղուած էր ոչ թէ եկեղեցական դասուն, այլ ընդհանուր ազգին, «Հայոց մեծաց» (Եղ. 41), եւ գլխաւորապէս անոնց՝ որք զազգը կը ներկայացնէին Յազկերտի առջեւ. այս ինքն «առ ամենայն հայոց աւագանին» (Փրպ. 121). եւ միանգամայն Թղթոյն պատասխանէն կախուած լինելով Հայաստանի քաղաքական բախտը, հարկ էր որ Նախարարք որոշէին՝ ինչպիսի՞ պատասխան պէտք էր տալ. ուստի եւ իրենց կը վերաբերէր առաջարկել եպիսկոպոսաց՝ որ ժողովին եւ պատասխանեն ինչ որ պատշաճ կը դատէին ըստ կրօնից՝ առանց երկնչելու անոր ծանր հետեւանքներէն։ Այդ առաջարկն է՝ զոր «հրաման» կը կոչէ Ղազար։ Այս մասն չուզեր Եղիշէ, եւ ոչ թէ կը մերժէ. նա կը սկսի այն կէտէն, թէ Նամակը որ գրուեցաւ, տեսան Նախարարք եւ տուին իրենց «հաւանութիւնն» անոր իմաստից նկատմամբ։ Ղազարայ հրամանը ժողովելու մէջ է, եւ Եղիշէի հաւա-

Նուրբիւնը՝ Թղթոյն բովանդակութեան մէջ. ուրեմն իրարմէ տարբեր են բոլորովին: — Այս՝ նամակագրութեան եւ նամակին հանգամանաց նկատմամբ. այժմ խօսինք ժողովոյն վերայ:

Եկեղեցական ժողովոց մէջ, որ կը խմբուի որ եւ է կրօնական խնդրոյ համար, իշխան եւ հրամանատու՝ եպիսկոպոսունքն են, կամ թէ ըսենք՝ եկեղեցական դասը. եւ որոշմունքն որ կը կատարուին, պիտի հրատարակուին նոցա անուամբ: Եթէ գտնուին հոն աշխարհական իշխանք, թէպէտ եւ լինին դոքա կոստանդիանոսներ եւ ժողովն իրենց առաջարկութեամբ կազմուած, հպատակ եւ ունկնդիր են նոցա. եւ իրաւունք չունին այլ ինչ գործել՝ բայց միայն «հաւանութիւն» տալ: — Այսպիսի ժողովներէն մին է Արտաշատու յիշեալ ժողովն, ուր ոչ թէ հաւատոյ մի մասն, այլ ամբողջ քրիստոնէական կրօնքը կը պաշտպանուէր, եւ անոր գոյութեան սպառնացող վտանգաց դէմ կը զինուէր: Հոն եպիսկոպոսունք, որոց գլուխն էր կաթողիկոսը, ներգործող եւ հրահանգող լին նախարարաց: Մոգաց եւ սոցա դերերը բոլորովին տարբեր էին: Մոգերն իբրեւ կրօնից վարդապետք՝ լոկ չարադրեցին պարսից թուղթը, եւ Յազկերտ իւր «աստուածաբար» (Եզ. 118) իշխանութեամբն հաստատեց զայն եւ իւր հազարապետին անուամբ ղրկեց (Եղ. 41): Իսկ եպիսկոպոսունք ժողովոյն մէջ ընդ հակառակն իրենք էին «աստուածաբար» իշ-

խնցողք, եւ քաղաքական իշխանութիւնը՝ միայն հաւանող։ Քրիստոնէական ընդհանուր եկեղեցւոյ ընթացքն այս եղած էր եւ այս պիտի լինէր եւ յայնժամ։ Այս պատճառաւ Եղիշէ հարկ իսկ չի տեսներ նոյն ժողովոյն մէջ գտնուող նախարարաց անուանքն յիշել առանձին. ինքն՝ որ ուրիշ ամէն տեղ, ուր կը յիշէ նոցա յատուկ գործունէութիւնը, զանց չի ըներ յականէ յանուանէ յիշատակել բոլորն այլ։ Իսկ Ղազար թէպէտ կը յիշէ հոս այլ, բայց յետ եպիսկոպոսաց եւ քահանայից (124–6). ինչպէս նա եւ փոքր ինչ յետոյ, «գրեալ զայս... սուրբ քահանայից ժողովոյն, եւ հանդերձ ամենայն նախարարօքն հայոց ետուն տանել առ թագաւորն» (130). Նախարարաց երկրորդական տեղ կու տայ թէ ժողովոյն եւ թէ նամակին առաքման մէջ, հաստատելու համար մեր ըսածին ճշմարտութիւնը։ Ուստի թող չզարմանայ Տէրպօղոսեան՝ Եղիշէի նախարարաց ցուցակը հոս չաւանդելուն, եւ «Նախարարներէ պատասխանատուութեամբ գրուած նամակը Յովսէփ եպիսկոպոսի անունով ներկայացնելուն» վերայ, երբ Ղազար այլ կը վկայէ թէ «քահանայից ժողովն» էր զայն գրողը, եւ ոչ նախարարք՝ որք միայն առաքման մասնակցեցան։

«Պէտք էր կարծել, կ՚ըսէ, որ հայոց պատասխանի պատճառով պատժուող եւ Պարսկաստան կանչուող անձանց մէջ առաջին պատասխանատուն պիտի լինէր այն անձը, որի

անունով Նամակը վերնագրուած է. բայց Յովսէփ եպիսկոպոսը * ոչ պատասխանատու է համարուել այդ Նամակի համար, եւ ոչ էլ Պարսկաստան է գնացել։ Այս հանգամանքը որոշ չափով կասկածի տակ է դնում Նամակի անաղաւաղ մնալու խնդիրը » եւ այլն։ Գանք այդ դժուարութեանց լուծման։

Հայոց թղթոյն պատասխանատու միայն Յովսէփ չէր կարող լինել կամ կարծուիլ Յազկերտէն, քանի որ միայն զինք չէր հռչակեր գրող անոր, այլ կը յաւելուր՝ «ամենայն միաբանելովքս ի մեծամեծաց մինչեւ ցփոքունս» (47). որոց մէջ անվրէպ կ՚իմացուէին եւ Նախարարք, ըստ որում առ ընդհանուր հայս եւ յատկապէս նոցա ուղղուած Նամակին պատասխանն էր այն։ Հետեւաբար Նախարարք եւս պատասխանատու էին, եւ այն պատճառաւ իսկ ի դուռն կոչուեցան։

Բայց թէ ինչո՞ւ Յովսէփ այլ չկոչուեցաւ, պատճառը շատ պարզ է։ Յազկերտ հայոց պատասխանին փոխարէն գրեց հրովարտակ մի, որ թէ ըստ Եղիշեայ (70) եւ թէ ըստ Ղազարայ (132) «միայն կոչոյ հրաման» էր, առանց խօսելու հայոց գրածին վերայ։ Այլ է՝ թէ հայք հրովարտակին անսովոր լեզուէն եւ իրաց ընթացքէն գուշակեցին սպառ-

* Ամէն անգամ զՅովսէփ «եպիսկոպոս» կը կոչէ, արդեօք չէ՞ յիշեր՝ թէ նա կաթողիկոս էր աստիճանաւ, թէ եւ ձեռնադրութեամբ տակաւին սոսկ Երէց (Փարպ. 124)։

նացող փոթորիկը։ Գիտէր Յազկերտ, որ եթէ կաթողիկոսն առանձին կամ նախարարաց հետ միանգամայն առ ինքն կոչէր՝ պատասխան տալու իրենց գրածին համար, կամ առանց իսկ այս յաւելուածին, հայք պիտի գուշակէին իսկոյն կաթողիկոսին եւ իշխանաց տխուր վախճանը, եւ թոյլ չտային երթալ։ Ուստի մտածեց կոչել միայն նախարարքը, որոց ստէպ երթն արդէն սովորական էր (Եղ. 11, 21), եւ չխօսիլ Յովսեփայ եւ նամակին նկատմամբ. յուսալով՝ որ երբ զանոնք կոչէ եւ բռնութեամբ ի մոգութիւն դարձունէ, նոցա զինու զօրութեամբ կարող է այնուհետեւ եկեղեցական դասը եւ ամբողջ ազգն այլ դարձնել։ Այս է մեր մեկնութիւնը։

Դ. Երկու խօսք եւս պարսից եւ հայոց նամակաց մասամբ։

Եղիշէ կը յիշէ հինգ թղթեր, որոց երից պատճէնները միայն մէջ կը բերէ։ Առաջինն է՝ հրովարտակ Յազկերտի առ հպատակ ազգս, որով կը հրաւիրէ զանոնք ընդդէմ քուշանաց (17). Ղազար զայս չէ յիշած, զի իւր պատմութիւնը փոքր ինչ ուշ կը սկսի։ Երկրորդն է պարսից կրօնից վարդապետութիւնը (41). Ղազար սոյն փոխարէն՝ արքայէն հրովարտակ մի կը դնէ նոյն առթիւ, բայց տարբեր բովանդակութեամբ (121)։ Երրորդն է հայոց պատասխանը (47). նոյնը եւ Ղազարայ քով կայ, բայց նոյնպէս տարբեր բովանդակութեամբ (127)։ Չորրորդն է ուրիշ հրովարտակ մի՝ որով զնախարարս ի դուռն

ւուշոց (70)․ զայս եւ Ղազար կը յիշէ (131), եւ ոչ միայն քով չկայ պատճէն։ Հինգերորդն ժողովութեան կեղծ հրովարտակ մի յետ ապստամբութեան (147–8. եւ ի Ղզ. 197), նմանապէս անպատճէն։ Առաջինը եւ վերջին երկուքը խնդիր չեն վերցներ․ կը մնայ քննել միւսները։

Եղիշեայ երկրորդ նամակին՝ զոր գրեցին մոգերն՝ ուղարկող կը հանդիսանայ Միհրներսեհ։ Ասոր մէջ յետ մոգութեան վարդապետութեան կ՚ըսուի․ «Երկու իրք կան առաջի ձեր․ կամ արարէք բան առ բան նամակիդ պատասխանի, եւ կամ արիք ի դուռն եկայք» (45)։ Իսկ Ղազարայ հրովարտակին մէջ՝ որ է յանուն Յազկերտի, բնաւ չկայ մոգութեան վարդապետութիւն․ այլ կ՚ըսուի միայն․ «Զօրէնս մեր զատոյգ եւ զարդար գրեցաք եւ տուաք բերել առ ձեզ» (122)․ կ՚ըսուի եւս․ «Այլ եւ այսկայ մեղ եւ մեզ, զի զկարծեցեալ զձեր օրէնսդ առ մեզ գրել հրամայեցաք ձեզ» (123)․ անտարակոյս այս հրամանն յիշեալ օրինաց հետ էր։ Արդ թէ դաւանութիւնը եւ թէ այս հրամանը կը գտնենք Եղիշէի թղթոյն մէջ․ Իսկ Ղազարայ այդ հրովարտակը լոկ կը ստիպէ ընդունել նախ քան զինքն առաքուածի մի բովանդակութիւնը։ Որեմն դա զատ է պարսից դաւանութեան թղթէն․ ինչպէս յայտնի է եւ այն հանգամանքէն, որ մինչ զայդ կը կարդան եւ կը պատասխանեն, դաւանականն իբր թէ «եւ բանալ անգամ կամ տեսանել ոչ կամեցան» (Ղզ․ 128)։

Արդ՝ Ղազարայ յիշեալ հրովարտակը կը հաստատէ Եղիշէի աւանդած պատճէնին վաւերականութիւնը, զի անոր մէջ կը գտնենք «զօրէնս (պարսից) զստոյգ եւ զարդար գրեալ». եւ ինքն իբրեւ երկրորդ անգամ տրուած հրաման մի կը հանդիսանայ։

Այդ կրկին (ըստ Եղ. մի) թղթոց փոխարէն հայք մի նամակ գրեցին՝ ըստ երկուց պատմչաց եւս. ըստ Եղիշեայ՝ քրիստոնէական կրօնից ընդարձակ պաշտպանութիւն՝ պարսից պահանջին համեմատ. եւ ըստ Ղազարայ՝ Յազկերտի հրովարտակին համառօտ պատասխան մի, յորում կ'ըսուի հակառակ միւսին, «Եւ ոչ զմեր օրէնս գրել եւ տալ բերել առ ձեզ՝ ըստ հրամանիդ ձերոյ՝ պատշաճ համարեցաք» (129)։ Ուրեմն ասոնց մին կամ միւսն անհարազատ է։ Մենք կը կասկածինք երկրորդին վերայ. վասն զի եթէ յիրաւի այդ էր հայոց թուղթը, այդ պարզ եւ չնչին գրութեան համար՝ զոր կարող էր նախարարներէն ո՛ եւ է մին եւս շարադրել, ի՞նչ հարկ կար այնպիսի եկեղեցական մեծ ժողով գումարել, որոյ արդիւնքն ընդ հակառակն պիտի լինէր քան զայդ բարձր՝ նշանաւոր բան մի. թո՛ղ ադոր ներքին պէսպէս թերութիւնքը։ Եւ մեր այս կասկածն ստուգութեան կը փոխուի, երբ կը նկատենք հետեւեալը. պարսից առ Եղիշէի վաւերական *

* Տէրպօղոսեան եւս վաւերական կ'ընդունի զայն,

թղթոյն մէջ դրուած երկու պայմանաց համեմատ — «կամ առնել բան առ բան Նամակին պատասխանի, եւ կամ յառնել ի դուռն գալ», — հայք կամ պիտի երթային, եւ կրնային երթալ՝ ինչպէս յետոյ գնացին, եւ կամ պիտի պատասխանէին նոցա պահանջին համեմատ. իսկ արդ չգնացին մինչեւ վերջին հրովարտակը, ուրեմն կը հետեւի՝ թէ «բան առ բան» պատասխանեցին. եւ այդպիսի պատասխան՝ Եղիշէի Թուղթն է։ Դարձեալ ուրիշ փաստ մի կը գտնենք Յազկերտի հրովարտակին (Ղազարայ աւանդածին) այս խօսքի մէջ. «Այլ եւ այս կայ մեղ եւ մեզ, զի զկարծեցեալ զձեր օրէնսդ առ մեզ գրել հրամայեցաք ձեզ»։ Կայ մեզ մեղ՝ ապաշաւ կը ցուցնէ իւր տուած հրամանին վերայ. եւ այդ ապաշաւն ուրիշ կերպով չէր կարող ունենալ, բայց եթէ հայոց կողմանէ անախորժ պատասխան մի ստանալով՝ նկատմամբ իւր առաջարկութեան, այն է՝ պաշտպանութիւն քրիստոնէութեան ընդդէմ մոգութեան։ Ապա ուրեմն այդ վկայութեամբ այլ Եղիշէի Թուղթը կը հաստատուի։ Հետեւաբար հակասական է Փարպեցւոյն հայոց ընծայած պատասխանին այն խօսքը, թէ «եւ ոչ զմեր օրէնս գրել եւ տալ բերել առ ձեզ... պատշաճ համարեցաք». ուրեմն եւ իւր բոլոր Թուղթն անընդունելի է։ Այսուհետեւ

այնու՝ զի մինչդեռ հայոց գրածին վերայ կը տարակուսի, միւսին վերայ բնաւ կասկած չի հաներ։

կը սպասենք, որ Տէրպօղոսեան ցուցնէ՝ թէ Եղիշէի աւանդած հայոց Նամակը «Ե դարի կէսին շարադրուիլ չէր կարող»։

Ղազարայ աւանդած դէթ յազկերտեան հրովարտակին պատճէնը կրնար ընդունելի լինել, եթէ չլինէր հետեւեալ հանգամանքը։ Երբ Յազկերտ կ՚ընդունի հայոց միակ — Եղիշէի աւանդած — թուղթը, թէ ըստ Եղիշեայ (69) եւ թէ ըստ Ղազարայ (130) բարկութեամբ լցուած, իսկոյն կը գրէ վերջին (անպատճէն) հրովարտակը՝ մեր Նախարարներն ի դուռն կոչելով. հետեւաբար աւելորդ կը լինի՝ յետ հայոց Նամակին եւ նախ քան զայդ հրովարտակ՝ ուրիշ մի դնել։ Ուստի և անհարազատ կը դառնան Փարպեցւոյն երկու պատճէնքն այլ։

Յիշեալ Թղթոց նկատմամբ նա եւ ուրիշ անգամ առիթ ունեցած ենք խօսել*, եւ ցոյց տալ մեր կարծիքն հաւաստող ուրիշ հանգամանքներ եւս։

* Բազմավէպ, ԾԱ, 274–7։



[illegible] . — Դեսպանու-
[illegible] յոյնս. — Զու-
[illegible] Վարդանայ ուժոյ եւ
[illegible] . — Վարդանայ ընդ
[illegible]մարտն, եւ սիւնեցւոյն
[illegible] պատերազմին։

[illegible] Ղազարայ պատմագրելու մէջ
[illegible]թիւն կը գտնէ Տէրպօղո-
[illegible] «Վասակի եւ եպիսկոպոսների
[illegible]ների ոյժի եւ գործունէու-
[illegible]մբ. եւ այդ տարբերութիւնից,
[illegible] երեւում է Եղիշէի պատմա-
[illegible]կցական ոգին». որպէս թէ սա
[illegible] է Վասակի գործունէութիւնը ծած-
[illegible] օրինակ կու տայ՝ առաջին՝ Վա-
[illegible] ձերբակալութեան, եւ երկրորդ՝ առ
[illegible] ուղարկուած դեսպանութեան խնդիր-
[illegible]։

Ա. Ցարգելի քննադատը կը սկսի նկա-
տել, թէ 450 թուին ապստամբութեան սը-
կիզբն՝ ըստ Եղիշէի (113) ուխտապահները
կը բռնեն զՎասակ իբր ուրացող. եւ գիջա-
նելով նորա աղաչանաց եւ ցուցած զղջման,
ապա կ'արձակեն եւ կ'ընդունին իրենց մէջ։
Իսկ Ղազար չէ յիշած թէ նա ձերբակալուե-
ցաւ. այլ «ընդ հակառակն՝ ապստամբութեան

գործի մէջ նա Վասակին՝ իբրեւ մարզպանի՝ իւր տեղն է տալիս», պատմելով (177–81) թէ նախարարք եւ եկեղեցականք կ'ելնեն կը յայտնեն անոր՝ իբրեւ մեծի՝ իրենց ապստամբելու խորհուրդը, երդումն կը դնեն եւ կը կնքեն զայն նախ նորա եւ ապա այլոց մատանեօք։ Այսպէս՝ ըստ Եղիշէի զուրկ էր Վասակ մարզպանական ուժէ եւ արդէն յայտնի պարսկամոլ, զոր եւ մոգաց հետ ձերբակալեցին. իսկ ըստ Ղազարայ՝ անհրաժեշտ էր նորա համաձայնութիւնը, եւ միայն զայն ստանալէն յետոյ ձեռնարկեցին ապստամբութեան։

Մինչդեռ գործոյն սկիզբն այսպէս իրերաց կը հակառակին երկու պատմագիրք, Վասակայ դատապարտութեան արձանագրութեան մէջ Եղիշէ (234) կու գայ կը միաբանի Փարպեցւոյն հետ, ընդդէմ իւր նախորդ նկարագրին պատմելով, թէ ուխտապահից մէջ բերած փաստերով իմացուեցաւ՝ որ մարզպանը խառն էր մոգաց ի Զարեհաւան կոտորածին, Հայաստանի բերդերը պարսից ձեռնէն հանելու եւ այլ անցից մէջ. ցոյց տալով միանգամայն նորա կնքով վաւերացուած զանազան թղթերը նոյն առթիւք։ Այսու Եղիշէ կը հակասէ ինքն իրեն. եւ որովհետեւ իւր վերջին պատմածին կը վկայէ եւ Ղազար, «ուստի ճշմարտութիւնից հեռացած չենք լինել, եթէ ընդունինք Վասակի ձերբակալութիւնը իրականութիւնից զուրկ՝ ստեղծուած մի ֆակտ»։

Այսպէս կը վերջացնէ Տէրպօղոսեան։ Իսկ

մեզ կը մնայ ցուցնել՝ թէ Եղիշէի առաջին եւ վերջին տեղեկութիւնքն իրերաց չեն հակասեր, եւ թէ հետեւաբար մարզպանի ձերբակալումն հնարաւոր է։

Վասակայ գործունէութեան վերայ մենք մեր քննադատէն բոլորովին տարբեր հայեացք ունինք։ Գիտենք՝ թէ մարզպանական իշխանութիւնը բարձր եւ զօրաւոր էր, ըստ որում մարզպանը կը ներկայացնէր զարքայից արքայն. եւ այդպիսի էր Վասակ ի սկզբան։ Բայց երբ հայք ապստամբելով ի պարսից՝ եղան իբրեւ հասարակապետութիւն մի, բնական հետեւանք էր՝ որ այնուհետեւ ի պարսից կարգուած մարզպանին իշխանութիւնը եւ զօրութիւնն այլ ոչընչանար. եւ Վասակ՝ եթէ կ'ուզէր եւ ինքն ուրանալ զինք կարգող տէրութիւնը, դառնայր իբրեւ գլուխ մի նոյն հասարակապետութեան՝ շնորհիւ իւր նախկին գերիշխանութեան, հայութեան եւ ազնուականութեան, թէպէտ եւ դեռ մարզպան կոչուէր լոկ անուամբ։ Ապա թէ կ'ուզէր հաւատարիմ մնալ պարսից, հարկ էր՝ որ ելնէր փախչէր կամ զատուէր ապստամբաց միջէն, եւ գլուխն ազատէր։ Նա արտաքուստ առաջինն ընտրեց, եւ ի ծածուկ վերջինը. եւ այս պայմանի մէջ ստիպուած էր յամենայն դէպս հաւանել ընդհանուր նախարարաց ձայնին, եւ միայն գաղտնի գործել նոցա դէմ։ Այդ վիճակի սովորական յատուկ զօրութենէն եւ ազդեցութենէն այլ շատ տկարացած էր նա, անոր համար՝ որ յայտնի էր ազգին իւր

պարսկամէտ ոգին։ Մեր ըսածներն հաստատելու համար՝ Թողլով զԵղիշէ, որուն արդէն սեպհական է այս հայեացքը, մէջ բերենք Ղազարայ վկայութիւնը։

Ըստ Փարպեցւոյն՝ (175–81) երբ Նախարարք եւ եպիսկոպոսք կը տեսնեն ապստամբութեան հարկը, կը ժողովին խորհել ի միասին այդ բանին վերայ։ Այս խորհրդոյն մէջ Վասակ մասն չունի բնաւ. Նա դեռ պարսից մարզպանը կը նկատուի, ուստի արեաց պետութեան հակառակ խորհուրդը գաղտնի կը պահեն իրմէ. մանաւանդ «զառաւել փառասէր աստուածատեաց խորհրդոց նորա ճանաչեալ զործճմունս», որոյ նշաններն արտաքին գործերով այլ պէտք է տուած լինէր կանխաւ. — որով կը ստուգուին Եղիշէի տեղեկութիւնքը (107-10) նորա նախկին ջանից վերայ՝ տարածելու ի հայս կրակապաշտութիւնը։ — Վերջապէս կը սահմանեն պարզել ապստամբութեան դրօշը։ Վասակայ համախոհներէն մին* չի հաւանիր նոցա եւ

* Ղազար այդ անձին Ջանդաղան անունը կու տայ. իսկ Տէրպօղոսեան կ'ուզէ զատել երկուքը, զանազան դէպքեր եւ անձինք համարել. (այսու ընդունած կը լինի եւ Եղիշէի պատմածը. եւ չենք հասկանար՝ թէ ինչո՞ւ ապա «կասկածաւոր» դիպաց մէջ կը խառնէ զայն)։ Որովհետեւ Եղիշէ կ'ըսէ իւր յիշածին համար՝ թէ «ոչ միաբանեաց ընդ նոսա ի մեծ վկայութիւնն, եւ անդէն առ ժամայն ի նոցունց ի տեղւոջն քարկոծեցաւ»։ Իսկ Ղազար ոչ թէ անմիաբանութիւնը կը դնէ քարկոծման

մեզ կը թուայ ցուցնել՝ թէ Եղիշէի առաջին եւ վերջին տեղեկութիւնքն իրերաց չեն հա-կասեր, եւ թէ հետեւաբար մարզպանի ձեր-բակալումն հնարաւոր է։

Վասակայ գործունէութեան վերայ մենք մեր քննադատէն բոլորովին տարբեր հայեացք ունինք։ Գիտենք՝ թէ մարզպանական իշխա-նութիւնը բարձր եւ զօրաւոր էր, ըստ որում մարզպանը կը ներկայացնէր զարքայից ար-քայն. եւ այդպիսի էր Վասակ ի սկզբան։ Բայց երբ հայք ապստամբելով ի պարսից՝ ե-ղան իբրեւ հասարակապետութիւն մի, բնա-կան հետեւանք էր՝ որ այնուհետեւ ի պար-սից կարգուած մարզպանին իշխանութիւնը եւ զօրութիւնն այլ ոչընչանար. եւ Վասակ՝ եթէ կ՚ուզէր եւ ինքն ուրանալ զինք կարգող տէրութիւնը, դառնայր իբրեւ գլուխ մի նոյն հասարակապետութեան՝ շնորհիւ իւր նախկին գերիշխանութեան, հայութեան եւ ազնուա-կանութեան, թէպէտ եւ դեռ մարզպան կո-չուէր լոկ անուամբ։ Ապա թէ կ՚ուզէր հա-ւատարիմ մնալ պարսից, հարկ էր՝ որ ելնէր փախչէր կամ զատուէր ապստամբաց միջէն, եւ գլուխն ազատէր։ Նա արտաքուստ առա-ջինն ընտրեց, եւ ի ծածուկ վերջինը. եւ այս պայմանի մէջ ստիպուած էր յամենայն դէպս հաւանել ընդհանուր նախարարաց ձայնին, եւ միայն գաղտնի գործել նոցա դէմ։ Այդ վիճակի սովորական յատուկ զօրութենէն եւ ազդեցութենէն այլ շատ տկարացած էր նա, անոր համար՝ որ յայտնի էր ազգին իւր

պարսկամէտ ոգին։ Մեր ըսածներն հաստատելու համար՝ Թողլով զԵղիշէ, որում արդէն սեպհական է այս հայեացքը, մէջ բերենք Ղազարայ վկայութիւնը։

Ըստ Փարպեցւոյն՝ (175–81) երբ Նախարարք եւ եպիսկոպոսք կը տեսնեն ապստամբութեան հարկը, կը ժողովին խորհել ի միասին այդ բանին վերայ։ Այս խորհրդոյն մէջ Վասակ մասն չունի բնաւ. նա դեռ պարսից մարզպանը կը նկատուի, ուստի արեաց պետութեան հակառակ խորհուրդը գաղտնի կը պահեն իւրմէ. մանաւանդ «զառաւել փառասէր աստուածատեաց խորհրդոց նորա ճանաչեալ զորոճմունս», որոյ նշաններն արտաքին գործերով այլ պէտք է տուած լինէր կանխաւ. — որով կը ստուգուին Եղիշէի տեղեկութիւնքը (107–10) նորա նախկին ջանից վերայ՝ տարածելու ի հայս կրակապաշտութիւնը։ — Վերջապէս կը սահմանեն պարզել ապստամբութեան դրօշը։ Վասակայ համախոհներէն մին * չի հաւանիր նոցա եւ

* Ղազար այդ անձին Ձանդաղան անունը կու տայ. իսկ Տէրպօղոսեան կ'ուզէ զատել երկուքը, զանազան դէպքեր եւ անձինք համարել. (այսու ընդունած կը լինի եւ Եղիշէի պատմածը. եւ չենք հասկանար՝ թէ ինչո՞ւ ապա «կասկածաւոր» դիպաց մէջ կը խառնէ զայն)։ Որովհետեւ Եղիշէ կ'ըսէ իւր յիշածին համար՝ թէ «ոչ միաբանեաց ընդ նոսա ի մեծ վկայութիւնն, եւ անդէն առ ժամայն ի նոցունց ի տեղւոջն քարկոծեցաւ»։ Իսկ Ղազար ոչ թէ անմիաբանութիւնը կը դնէ քարկոծման

մեզ կը մնայ ցուցնել՝ թէ Եղիշէի առաջին եւ վերջին տեղեկութիւնքն իրերաց չեն հակասեր, եւ թէ հետեւաբար մարզպանի ձերբակալումն հնարաւոր է։

Վասակայ գործունէութեան վերայ մենք մեր քննադատէն բոլորովին տարբեր հայեացք ունինք։ Գիտենք՝ թէ մարզպանական իշխանութիւնը բարձր եւ զօրաւոր էր, ըստ որում մարզպանը կը ներկայացնէր զարքային արքայն. եւ այդպիսի էր Վասակ ի սկզբան։ Բայց երբ հայք ապստամբելով ի պարսից՝ եղան իբրեւ հասարակապետութիւն մի, բնական հետեւանք էր՝ որ այնուհետեւ ի պարսից կարգուած մարզպանին իշխանութիւնը եւ զօրութիւնն այլ ոչընչանար. եւ Վասակ՝ եթէ կ'ուզէր եւ ինքն ուրանալ զինք կարգող տէրութիւնը, դառնայր իբրեւ գլուխ մի նոյն հասարակապետութեան՝ շնորհիւ իւր նախկին գերիշխանութեան, հայութեան եւ ազնուականութեան, թէպէտ եւ դեռ մարզպան կոչուէր լոկ անուամբ։ Ապա թէ կ'ուզէր հաւատարիմ մնալ պարսից, հարկ էր՝ որ ելնէր փախչէր կամ դատուէր ապստամբաց միջէն, եւ գլուխն ազատէր։ Նա արտաքուստ առաջինն ընտրեց, եւ ի ծածուկ վերջինը. եւ այս պայմանի մէջ ստիպուած էր յամենայն դէպս հաւանել ընդհանուր նախարարաց ձայնին, եւ միայն գաղտնի գործել նոցա դէմ։ Այդ վիճակի սովորական յատուկ զօրութենէն եւ ազդեցութենէն այլ շատ տկարացած էր նա, անոր համար՝ որ յայտնի էր ազգին իւր

պարսկամէտ ոգին։ Մեր ըսածներն հաստատելու համար՝ Թողլով զԵղիշէ, որում արդէն սեպհական է այս հայեացքը, մէջ բերենք Ղազարայ վկայութիւնը։

Ըստ Փարպեցւոյն՝ (175–81) երբ Նախարարք եւ եպիսկոպոսք կը տեսնեն ապստամբութեան հարկը, կը ժողովին խորհել ի միասին այդ բանին վերայ։ Այս խորհրդոյն մէջ Վասակ մասն չունի բնաւ. նա դեռ պարսից մարզպանը կը նկատուի, ուստի արեաց պետութեան հակառակ խորհուրդը գաղտնի կը պահեն իրմէ. մանաւանդ «զառաւել փառասէր ստուածատեաց խորհրդոց նորա ճանաչեալ զորոճմունս», որոյ նշաններն արտաքին գործերով այլ պէտք է տուած լինէր կանխաւ. — որով կը ստուգուին Եղիշէի տեղեկութիւնքը (107–10) նորա նախկին ջանից վերայ՝ տարածելու ի հայս կրակապաշտութիւնը։ — Վերջապէս կը սահմանեն պարզել ապստամբութեան դրօշը։ Վասակայ համախոհներէն մին* չի հաւանիր նոցա եւ

* Ղազար այդ անձին Զանդաղան անունը կու տայ. իսկ Տէրպօղոսեան կ'ուզէ զատել երկուքը, զանազան դէպքեր եւ անձինք համարել. (այսու ընդունած կը լինի եւ Եղիշէի պատմածը. եւ չենք հասկանար՝ թէ ինչո՞ւ ապա «կասկածաւոր» դիպաց մէջ կը խառնէ զայն)։ Որովհետեւ Եղիշէ կ'ըսէ իւր յիշածին համար՝ թէ «ոչ միաբանեաց ընդ նոսա ի մեծ վկայութիւնն, եւ անդէն առ ժամայն ի նոցունց ի տեղւոջն քարկոծեցաւ»։ Իսկ Ղազար ոչ թէ անմիաբանութիւնը կը դնէ քարկոծման

## Բ

Վասակայ ձերբակալութիւնը. — Դեսպանութիւն եւ թուղթ հայոց առ յոյնս. — Զուգակշիռ Վասակայ եւ Վարդանայ ուժոյ եւ գործունէութեան մէջ. — Վարդանայ ընդ Սեբուխտի ճակատամարտն, եւ սիւնեցւոյն գործերն յետ մեծ պատերազմին։

Եղիշէի եւ Ղազարայ պատմագրելու մէջ զգալի ղանազանութիւն կը գտնէ Տէրպօղոսեան Նա եւ «Վասակի եւ եպիսկոպոսների կուսակցութիւնների ոյժի եւ գործունէութեան նկատմամբ. եւ այդ տարբերութիւնից, կ'ըսէ, նորից երեւում է Եղիշէի պատմագրելու կուսակցական ոգին». որպէս թէ սա «աշխատել է Վասակի գործունէութիւնը ծածկել», որում օրինակ կու տայ՝ առաջին՝ Վասակայ ձերբակալութեան, եւ երկրորդ՝ առ Կայսր ուղարկուած դեսպանութեան խնդիրները։

Ա. Յարգելի քննադատը կը սկսի նկատել, թէ 450 թուին ապստամբութեան սկիզբն՝ ըստ Եղիշէի (113) ուխտապահները կը բռնեն զՎասակ իբր ուրացող. եւ գիջանելով նորա աղաչանաց եւ ցուցած զղջման, ազատ կ'արձակեն եւ կ'ընդունին իրենց մէջ։ Իսկ Ղազար չէ յիշած թէ նա ձերբակալուեցաւ. այլ «ընդ հակառակն՝ ապստամբութեան

գործի մէջ նա Վասակին՝ իբրեւ մարզպանի՝ իւր տեղն է տալիս», պատմելով՝ (177–81) թէ Նախարարք եւ եկեղեցականք կ'ելնեն կը յայտնեն անոր՝ իբրեւ մեծի՝ իրենց ապստամբելու խորհուրդը, երդումն կը դնեն եւ կը կնքեն զայն նախ նորա եւ ապա այլոց մատանեօք։ Այսպէս՝ ըստ Եղիշէի զուրկ էր Վասակ մարզպանական ուժէ եւ արդէն յայտնի պարսկամոլ, զոր եւ մոգաց հետ ձերբակալեցին. իսկ ըստ Ղազարայ՝ անհրաժեշտ էր նորա համաձայնութիւնը, եւ միայն զայն ստանալէն յետոյ ձեռնարկեցին ապստամբութեան։

Մինչդեռ գործոյն սկիզբն այսպէս իրերաց կը հակառակին երկու պատմագիրք, Վասակայ դատապարտութեան արձանագրութեան մէջ Եղիշէ (234) կու գայ կը միաբանի Փարպեցւոյն հետ, ընդդէմ իւր նախորդ նկարագրին պատմելով, թէ ուխտապահից մէջ բերած փաստերով իմացուեցաւ՝ որ մարզպանը խառն էր մոգաց ի Զարեհաւան կոտորածին, Հայաստանի բերդերը պարսից ձեռնէն հանելու եւ այլ անցից մէջ. ցոյց տալով միանգամայն նորա կնքով վաւերացուած զանազան թղթերը նոյն առթիւք։ Այսու Եղիշէ կը հակաէ ինքն իրեն. եւ որովհետեւ իւր վերջին պատմածին կը վկայէ եւ Ղազար, «ուստի ճշմարտութիւնից հեռացած չենք լինել, եթէ ընդունինք Վասակի ձերբակալութիւնը իրականութիւնից զուրկ՝ ստեղծուած մի ֆակտ»։

Այսպէս կը վերջացնէ Տէրպօղոսեան։ Իսկ

Բ

*Վասակայ ձերբակալութիւնը. — Դեսպանութիւն եւ թուղթ հայոց առ յոյնս. — Զուգակշիռ Վասակայ եւ Վարդանայ ուժոյ եւ գործունէութեան մէջ. — Վարդանայ ընդ Սեբուխտի ճակատամարտն, եւ սիւնեցւոյն գործերն յետ մեծ պատերազմին։*

Եղիշէի եւ Ղազարայ պատմագրելու մէջ զգալի զանազանութիւն կը գտնէ Տէրպօղոսեան նա եւ «Վասակի եւ եպիսկոպոսների կուսակցութիւնների ոյժի եւ գործունէութեան նկատմամբ. եւ այդ տարբերութիւնից, կ'ըսէ, նորից երեւում է Եղիշէի պատմագրելու կուսակցական ոգին». որպէս թէ սա «աշխատել է Վասակի գործունէութիւնը ծածկել», որում օրինակ կու տայ՝ առաջին՝ Վասակայ ձերբակալութեան, եւ երկրորդ՝ առ կայսր ուղարկուած դեսպանութեան խնդիրները։

Ա. Յարգելի քննադատը կը սկսի նկատել, թէ 450 թուին ապստամբութեան սըկիզբն՝ ըստ Եղիշէի (113) ուխտապահները կը բռնեն զՎասակ իբր ուրացող. եւ գիջանելով նորա աղաչանաց եւ ցուցած զղջման, ազատ կ'արձակեն եւ կ'ընդունին իրենց մէջ։ Իսկ Ղազար չէ յիշած թէ նա ձերբակալուեցաւ. այլ «ընդ հակառակն՝ ապստամբութեան

գործի մէջ նա Վասակին՝ իբրեւ մարզպանի՝ իւր տեղն է տալիս», պատմելով՝ (177–81) թէ Նախարարք եւ եկեղեցականք կ'ելնեն կը յայտնեն անոր՝ իբրեւ մեծի՝ իրենց ապստամբելու խորհուրդը, երդումն կը դնեն եւ կը կնքեն զայն նախ նորա եւ ապա այլոց մատանեօք։ Այսպէս՝ ըստ Եղիշէի զուրկ էր Վասակ մարզպանական ուժէ եւ արդէն յայտնի պարսկամոլ, զոր եւ մոգաց հետ ձերբակալեցին. իսկ ըստ Ղազարայ՝ անհրաժեշտ էր նորա համաձայնութիւնը, եւ միայն զայն ստանալէն յետոյ ձեռնարկեցին ապստամբութեան։

Մինչդեռ գործոյն սկիզբն այսպէս իրերաց կը հակառակին երկու պատմագիրք, Վասակայ դատապարտութեան արձանագրութեան մէջ Եղիշէ (234) կու գայ կը միաբանի Փարպեցւոյն հետ, ընդդէմ իւր նախորդ նկարագրին պատմելով, թէ ուխտապահից մէջ բերած փաստերով իմացուեցաւ՝ որ մարզպանը խառն էր մոգաց ի Զարեհաւան կոտորածին, Հայաստանի բերդերը պարսից ձեռնէն հանելու եւ այլ անցից մէջ. ցոյց տալով միանգամայն նորա կնքով վաւերացուած զանազան թղթերը նոյն առթիւք։ Այսու Եղիշէ կը հակասէ ինքն իրեն. եւ որովհետեւ իւր վերջին պատմածին կը վկայէ եւ Ղազար, «ուստի ճշմարտութիւնից հեռացած չենք լինել, եթէ ընդունինք Վասակի ձերբակալութիւնը իրականութիւնից զուրկ՝ ստեղծուած մի փակա»։

Այսպէս կը վերջացնէ Տէրպօղոսեան։ Իսկ

մեզ կը մնայ ցուցնել՝ թէ Եղիշէի առաջին եւ վերջին տեղեկութիւնքն իրերաց չեն հակասեր, եւ թէ հետեւաբար մարզպանի ձերբակալումն հնարաւոր է։

Վասակայ գործունէութեան վերայ մենք մեր քննադատէն բոլորովին տարբեր հայեացք ունինք։ Գիտենք՝ թէ մարզպանական իշխանութիւնը բարձր եւ զօրաւոր էր, ըստ որում մարզպանը կը ներկայացնէր զարքայից արքայն. եւ այդպիսի էր Վասակ ի սկզբան։ Բայց երբ հայք ապստամբելով ի պարսից՝ եղան իբրեւ հասարակապետութիւն մի, բնական հետեւանք էր՝ որ այնուհետեւ ի պարսից կարգուած մարզպանին իշխանութիւնը եւ զօրութիւնն այլ ոչընչանար. եւ Վասակ՝ եթէ կ՚ուզէր եւ ինքն ուրանալ զինք կարգող տէրութիւնը, դառնայր իբրեւ գլուխ մի նոյն հասարակապետութեան՝ շնորհիւ իւր նախկին գերիշխանութեան, հայութեան եւ ազնուականութեան, թէպէտ եւ դեռ մարզպան կոչուէր լոկ անուամբ։ Ապա թէ կ՚ուզէր հաւատարիմ մնալ պարսից, հարկ էր՝ որ ելնէր փախչէր կամ զատուէր ապստամբաց միջէն, եւ գլուխն ազատէր։ Նա արտաքուստ առաջինն ընտրեց, եւ ի ծածուկ վերջինը. եւ այս պայմանի մէջ ստիպուած էր յամենայն դէպս հաւանել ընդհանուր նախարարաց ձայնին, եւ միայն գաղտնի գործել նոցա դէմ։ Այդ վիճակի սովորական յատուկ զօրութենէն եւ ազդեցութենէն այլ շատ տկարացած էր նա, անոր համար՝ որ յայտնի էր ազգին իւր

պարսկամէտ ոգին։ Մեր ըսածներն հաստատելու համար՝ Թողլով զԵղիշէ, որում արդէն սեպհական է այս հայեացքը, մէջ բերենք Ղազարայ վկայութիւնը։

Ըստ Փարպեցւոյն՝ (175–81) երբ Նախարարք եւ եպիսկոպոսք կը տեսնեն ապստամբութեան հարկը, կը ժողովին խորհել ի միասին այդ բանին վերայ։ Այս խորհրդոյն մէջ Վասակ մասն չունի բնաւ. Նա դեռ պարսից մարզպանը կը նկատուի, ուստի արեաց պետութեան հակառակ խորհուրդը գաղտնի կը պահեն իրմէ. մանաւանդ «զառաւել փառասէր աստուածատեաց խորհրդոց նորա ճանաչեալ գործմունս», որոյ նշաններն արտաքին գործերով այլ պէտք է տուած լինէր կանխաւ. — որով կը ստուգուին Եղիշէի տեղեկութիւնքը (107-10) Նորա նախկին ջանից վերայ՝ տարածելու ի հայս կրակապաշտութիւնը։ — Վերջապէս կը սահմանեն պարզել ապստամբութեան դրօշը։ Վասակայ համախոհներէն մին* չի հաւանիր նոցա եւ

* Ղազար այդ անձին Ջանդաղան անունը կու տայ. իսկ Տէրպօղոսեան կ՚ուզէ զատել երկուքը, զանազան դէպքեր եւ անձինք համարել. (այսու ընդունած կը լինի եւ Եղիշէի պատմածը. եւ չենք հասկանար՝ թէ ինչո՞ւ ապա «կասկածաւոր» դիպաց մէջ կը խառնէ զայն)։ Որովհետեւ Եղիշէ կ՚ըսէ իւր յիշածին համար՝ թէ «ոչ միաբանեաց ընդ նոսա ի մեծ վկայութիւնն, եւ անդէն առ ժամայն ի նոցունց ի տեղւոջն քարկոծեցաւ»։ Իսկ Ղազար ոչ թէ անմիաբանութիւնը կը դնէ քարկոծման

կ'ուզէ երթալ պատմել անոր. զոր քարկոծմամբ կը սպաննեն՝ աներկիւղ ի մարզպանէն։ Ապա միաբան դիմեցին առ Վասակ, եւ համարձակ իշխանաբար «մտին Թափ» նորա բնակարանը, ներկայացուցին իրենց որոշումը, եւ իրեն իմացնելով՝ թէ այնուհետեւ փոխանակ պարսից՝ պարտաւոր է լսել ազգի ձայնին, ստիպեցին որ ստորագրէ իրենց վճռոյն։ Փորձեց նա ընդդիմութիւն ցոյց տալ, բայց

պատճառ. այլ ուխտապահից խորհուրդը մատնելը. «Երթեալ վաղվաղակի, կ'ըսէ, պատմէր նմանեւոյն իւրում Վասակայ։ Որոյ բանից իրազգած եղեալ քուրմն աւագ նախարարքն հայոց, կալեալ գնա ի գեօղն որ կոչի Արծակ, տարեալ կապեցին ի միւսում եւս ի գեօղ յանուանեալ Բերդկունս... զոր եւ ոչ յետ բազում աւուրց... քարկոծեալ սատակեցին». ուրեմն սորա սպանութեան տեղը եւ ժամանակն այլ տարբեր են։

Սակայն մենք բոլորովին աւելորդ կը համարինք Տէրպօղոսեանի բաժանումը։ Նախ՝ որ Փարպեցին կը յիշէ զՋանդաղան հոն՝ ուր Եղիշէ կը յիշէ գիւղն. այն է՝ անմիջապէս յետ խորհրդոյն ապստամբութեան։ Երկրորդ՝ որ երկոցուն քով այլ մահուան եղանակը մի է. այլ եւ այդպիսի քարկոծման չարաչար մահը նախարարաց բարկութեան յուզման վայրկեանին միայն կրնար պատահել, եւ ոչ թէ «յետ ոչ բազում աւուրց» եւ բանտարգելութեան։ Երրորդ, մարզպանը նախարարաց բերանէն ապստամբութեան լուրն առնլու ժամանակ բոլորովին անպատրաստ կը գտնուէր անոր. որ եթէ Ջանդաղանէն յառաջագոյն իմացած լինէր, տարբեր կերպով կը վարուէր եւ բանադատուելու հարկի մէջ չէր

*նոքա «ոչ ինչ այնուհետեւ թոյլ տային սայթաքել խորհրդոց նորա այսր անդր», եւ «թէպէտ եւ ոչ կամաւ, սակայն ի հարկէ յանձն առեալ միաբանէր ընդ նոսա»։ Եւ թեւաթափ սուսերն դրաւ իւր կնիքն, ոչ եւս առանձին՝ իբրեւ ինքնիշխան մարզպան պարսից, այլ միւս նախարարաց հետ. բայց նախ քան զայլս՝ իւր ստուերացած ատիճանին համար։*

*Ասոնք Փարպեցւոյն խօսքերն են. եւ Տէրպօղոսեան իւր հաւատարիմ խոստովանած պատմչին համեմատ իսկ ստիպուած է ընդունել՝ թէ «Վասակ զուրկ էր մարզպանական*

---

*զանուեր։ Զորրորդ, եթէ Ջանդաղան գաղտնի խորհուրդն արդէն մատնած էր, աւելորդ եւ անօգուտ էր այնուհետեւ զնա սպաննել. այլ հարկաւոր էր մատնելէն յառաջ։ Նա եւ դեռ «ոչ բազում աւուրք» չանցած՝ Վասակ եւ հետեւաբար իւր կուսակիցք այլ ուխտապահից հետ միացան արտաքուստ, որոց հետ եւ Ջանդաղան պէտք էր միացած լինել եւ թողութեան արժանանալ մարզպանին հետ. եւ նոցա չներելու ժամանակ՝ ատորմէ գէթ խօսքով պաշտպանութիւն գտնել, որ չի յիշուիր։ — Այս բոլորը նկատելով, կը ստիպուինք հետեւեցնել՝ թէ Ջանդաղանի ապստամբութեան խորհուրդը Վասակայ ականջը հասցունելը, ձերբակալութիւնն յԱրծակ, բանտարգելութիւնն ի Բերդկունս, եւ «յետ ոչ բազում աւուրց» սպանութիւնը՝ Ղազարայ կողմանէ ականջալուր եւ անստոյգ տեղեկութիւնք են. եւ սպանուածը միայն մի մարդ էր, եւ պատճառն էր անմիաբանութիւնն ուխտապահից հետ։*

ոյժից, եւ արդէն յայտնի պարսկամոլ էր» ապստամբութեան սկիզբէն։ Եւ հայք պարսից լուծը թօթափելու համար՝ ոչ թէ կարօտ էին նորա համաձայնութեան եւ զայն «անհրաժեշտ» կը համարէին, այլ որովհետեւ մինչ այն ժամանակ նա էր ծանուցուած սահմանակից ազգաց առջեւ հայ ազգին քաղաքական գլուխ՝ իբրեւ մարզպան, ուստի եւ այնուհետեւ նոցա հետ կատարելի յարնչութեանց մէջ հարկաւոր էր՝ որ նորա ստորագրութիւնն այլ գտնուէր իրենց հետ, որպէս զի ամբողջ ազգի գործ համարուէր ապստամբութիւնը, եւ ոչ թէ անհանդարտութիւն նախարարաց ոմանց՝ որ յաճախ կը պատահէր, ինչպէս կը տեսնենք պատմութեան մէջ։

Քննադատը եթէ տակաւին չի ուզեր ընդունել՝ թէ Վասակ ապստամբութեան սկիզբէն պարսկամոլ էր, կը հարցնենք իրեն իւր իսկ խօսքով՝ թէ ինչո՞ւ նորա համաձայնութիւնը «նախարարներն ստիպելով ստացան»։ Եթէ նա ինքնայօժար կամօք «ապստամբութեան գործի մէջ պարսից դէմ պաշտպան է հանդիսացել՝ իբրեւ մարզպան՝ ուխտապահների համար, որոնք մոգերին կոտորել են», որով եւ ինքն ուխտապահ մ'էր, ի՞նչպէս կրնար փոքր ինչ յետոյ սկսել նոցա եւ ազգին դէմ դաւադրութիւններ, զոր եւ ինք քննադատը կ'ընդունի, ինչպէս պիտի տեսնենք իրենց տեղւոյն մէջ։ Վասակայ վերայ այդ յանկարծական փոփոխութիւնը եւ հակասական գործերը եթէ չուզենք դիւահարու-

*թեամբ մեկնել, հարկ է խոստովանել՝ թէ ակիզբէն պարսկամոլ էր Նա*, եւ ինչ որ կը գործէր պարսից դէմ, ակամայ կը գործէր՝ ուխտապահից երկիւղէն։ Այս է ճշմարտութիւնը, հաստատուած երկու պատմչաց համաձայն վկայութեանց եւ տրամաբանութեան վերայ։*

*Նախարարաց սիւնեցին ստիպմամբ ստորագրութիւն առնլու դէպքը չունի Եղիշէ. եւ*

* Արդէն ի բնէ բարի պտուղ մի չէր Վասակ։ «Ոչ ըստ կարգի ունէր նա զտէրութիւնն սիւնեաց աշխարհին, այլ նենգութեամբ եւ քսութեամբ եւ սպանանել զհօրեղբայր իւր զՎաղինակ, եւ յինքն տարաւ զտէրութիւնն իբրեւ երգէճոր յարքունիս» (Եղ. 242։ — Այդ նոտրագիր բառն ի Բզմ. ԾԳ ուղղուելով պահղաւ. երգէճոր, որ է երգէ եւ ճոր, կը մեկնուի «բարի գործք եւ պատշաճք». եւս եւ ած. «որ առնէ գործս արդիւնականս». զոր Եղիշէի ներկայ իմաստին մէջ ըստ մեզ հարկ կը թուի հասկանալ երկրորդ իմաստիւ՝ երգէճո–որ յարքունիս)։ Այս դէպքն հանդիպեցաւ ս. Մեսրոպայ ի սիւնիս քարոզելու ժամանակ. եւ սիւնեցին յայնժամ դեռ առոյգ երիտասարդ մ՚ էր, ինչպէս կ՚իմացնէ Խորենացին՝ կոչելով «մանուկն Վասակ սիւնեաց տէր» (Գ, ԾԴ)։ Կորիւն կամ անտեղեակ նորա յիշեալ անիրաւութեան, եւ կամ ի շնորհս նորա նպաստից առ ս. Մաշթոց, կը գրէ՝ թէ «պարգեւեալ յԱստուծոյ, հասանէր ի գլուխ իշխանութեանն սիւնեաց քաջն սեպականն Վասակ, այր խորհրդական եւ հանճարեղ եւ յառաջիմաց, շնորհատուր իմաստութեամբն Աստուծոյ» (տպ. Վենտ. 1833, յէջ 15)։ Ուր ընդ հակառակն՝ առ

ոչ Վասակայ ձերբակալութիւնը Ղազար, ինչպէս ըսինք։ Արդ՝ ըստ մեզ կարելի է այդ երկու դիպուածներն այնպիսի տեղեր զետեղել, որ աւելորդ կամ անտեղի չլինին, դասաւորելով Զարեհաւանի հակասական կարծուած դիպուածին և այլ հանգամանաց հետ՝ որ կան երկու պատմչաց քով։ Տեսնենք նախ այդ հանգամանքները։

Հայոց ապստամբութեան խորհուրդ կազմելը եւ անմիաբան խորհրդակցի մի քարկոծումն՝ ինչպէս տեսանք՝ ունին երկուքն ալ, (Եղ. 110–2. եւ Ղզ. 175–6), զանազանութեամբ երկրորդական հանգամանաց ինչ։ Այնուհետեւ կը սկսին մասամբ անհամաձայն ընթանալ միմեանց ըստ բովանդակութեան, առաջինը պատմելով՝ թէ գիշեր ժամանակ ուխտապահք պատրաստեցան ի կռիւ մոգաց դէմ (112). հետեւեալ օրն յարձակեցան կոտորեցին զանոնք, նշանաւորներէն զոմանս բանտեցին իրենց բերդից մէջ, եւ նոցա հետ

պարսս ի սկզբանէ մատուցած ջերմ եւ խորամանկ ծառայութեանն իբրեւ վարձ ընդունեցաւ ոչ միայն այդ իշխանութիւնը, այլ եւ նախ քան զայն՝ վրաց կուսակալութիւնը, եւ ի վերջոյ՝ հայոց մարզպանութիւնը (Եղ. 238–9)։

Կորեան տուած գովեստը նորա անուան հետ կը պակասին իւր համառօտ պատմութեան մէջ (Սոփերք, ԺԱ). եւ փաստ մ'է եւ այդ՝ որ ընդարձակը գրուած լինի սիւնեցւոյն ազգին դէմ չարագործութիւններէն յառաջ, բուն Կորեան ձեռօք, եւ համառօտն՝ յետոյ ուրիշէն։

զՎաղակ այլ ձերբակալելով ներբեցին (112-3). ապա սկսան պարսից ի հայս ունեցած բեր֊դերը գրաւել (116-9), մինչեւ հասաւ յա֊ղուանից պարսից գալստեան լուրը (119-20)։ Իսկ Փարպեցին կ՚ըսէ՝ թէ յետ խորհրդոյն եւ սպանութեան մատնչին՝ գնացին առին բռնութեամբ Վասակայ ստորագրութիւնը. յետոյ յարձակեցան Մոգաց վերայ, եւ անոց֊մէ ձերբակալուածները «պահել առ օրն հրա֊մայեցին զգուշութեամբ», եւ միւս օրը կո֊տորեցին Զարեհաւանի մէջ (182). ապա «դա֊դարեցին անդէն զաւուրս տօթոյն» (182), մինչեւ հասաւ լուրն յաղուանից (183)։ Հոս կու գան կը միաբանին դարձեալ։

Արդ, մենք պատմչացդ երկու հաւասար ծայրից մէջ դրուած անհաւասար տեղեկու֊թիւնքն՝ իբրեւ մին միւսին լրացուցիչ՝ կը շարենք այս կարգաւ։ Ցետ խորհրդոյն եւ առ ժամայն քարկոծման Զանդաղանայ, նա֊խարարք կ՚երթան կ՚առնուն Վասակայ ստո֊րագրութիւնը։ Նա ուզելով հաւատարիմ մնալ պարսից, յետ իւր ակամայ համաձայ֊նութեան կ՚անցնի Մոգաց կողմն, եւ նոցա հետ կը սկսի դիմադրել ուխտապահից։ Իւր մարտակիցները կը ջարդուին, եւ Մոգերէն գլխաւորներն եւ ինք կը ձերբակալուին։ Կը զղջայ՝ կը միաբանի մարզպանը կեղծեօք, եւ կեանքը կը շնորհուի։ Իսկ Մոգերը բանտար֊կուելով, միւս օրը կը կոտորուին ի Զարե֊հաւան։ Այնուհետեւ փոխանակ ջերմին հա֊մար «դադարելու» ըստ Ղազարայ, որոյ

բնաւ ժամանակը չէր այն ճգնաժամուն՝ երբ մանաւանդ գործը նոր կը սկսէր, զբաղեցան զօրացնել զիրենք գրաւմամբ բերդից՝ ըստ Եղիշէի։ Այս հասաւ աղուանից գոյժը։

Այս ձայնակցութեամբ անցից, Եղիշէի այն խօսքը՝ թէ Վասակ «խառն էր եւ ի մահ մոգուցն ի Զարեհաւանի, եւ զբազում բերդս՝ զոր հանին ի պարսկաց, յայտ առնէին զնորա թուղթսն եւ զհրամանսն» (234), հակասութենէ բոլորովին հեռի կը մնայ։ Վասն զի մարզպանն յետ իւր ձերբակալութեան անգամ մի ինք զինք նախարարաց հետ միաբան ցուցնելէ վերջ, ստիպուած էր մասնակցիլ նոցա թէ միւս օրը կատարուած մոգաց կոտորածին եւ թէ բերդից գրաւման մէջ՝ գործով եւ թղթովք, զոր իմաստուն խորհրդով կը պահանջէին իւրմէ նախարարք, պատասխանատուութիւնը նորա վերայ եւս ծանրացնելու համար։ Հետեւաբար այդպիսի մասնակցութիւն մի բնաւ չէ կարող ժխտել նորա ձերբակալութիւնը։ Այս է բուն «փակտը»։

Բ. Եղիշէ ըստ Տէրպօղոսեանի «իբրեւ սուբյեկտիվ պատմիչ», իւր կուսակցութեան մեծ տեղ տալու համար՝ հակասութիւններ է ստեղծեր նա եւ առ փոքրն Թէոդոս կայսր յուղարկուած դեսպանութեան խնդրոյն մէջ։ Նա կը պատմէ՝ (122) թէ կայսերէն օգնութիւն խնդրելու համար եպիսկոպոսք եւ նախարարք միաբանած՝ նամակ մի կը գրեն՝ որ կը սկսի, «Յովսէփ եպիսկոպոս՝ բազում ե-

պիսկոպոսակցօք իմովք, եւ ամենայն զօրք հայոց, Վասակ մարզպան» եւ այլն։ Աստի յայտնի կը լինի, կ'ըսէ Տէրպօղոսեան, որ Վասակ չէր գործի գլուխը. այլ այդ դերը եպիսկոպոսներին է պատկանում. իսկ «գրեցին, առաքեցին» բառերն ընդհանրութեան սեպհականութիւն են դարձնում թէ դրած նամակը եւ թէ ուղարկուած դեսպանութեան ձեռնարկութիւնը։ Բայց ըստ Ղազարայ (184), կ'ըսէ, ինքն իսկ Վասակ էր՝ որ նամակներ գրեց «առ կայսր եւ ամենայն աւագանի դրան յունաց» եւ այլն. «եւ զայս ամենայն թըղթեան կնքէր նախ ինքն իշխանն սիւնեաց եւ ապա ամենայն տանուտեարքն հայոց, եւ... յուղարկէին առ կայսր» եւ այլն։ — Երկու պատմչաց այս «հակասութիւնը» քննադատն ի նպաստ Փարպեցւոյն կը մեկնէ, հաստատուելով դարձեալ Վասակայ դատապարտութեան արձանագրութեան վերայ առ Եղիշէի, յորում Ատոմ գնունի՝ նորա յիշատակած դեսպանը՝ «մատուցեալ յանդիմանէր զնա (զՎասակ) առաջի մեծի ատենին, հրովարտակաւն իսկ՝ զոր տուեալ էր նորա իւրով մատանեաւ» (235)։

Այս խնդրոյս մէջ կը բովանդակուին հետեւեալ հարցերը։ Դեսպանութիւնը լոկ մարզպանի՞ն թէ հանուրց ձեռնարկութիւն էր. — Առ յոյնս քանի՞ թղթեր էին եւ ո՞յք. — Ո՞յք էին գրողք եւ ստորագրողք. — Եղիշէի աւանդած պատճէնը եւ Ատոմայ ակնարկածը չէ՞ կարելի եւ զանազան թղթեր համարել. — Ո՞վ կամ ո՞յք էին դեսպանք։

Գալով առաջին հարցման, Ղազար կը խօսեցնէ զՎարդան ընդ Վասակայ՝ այսպէս. «Որպէս ածաք (յօգնակի) զմտաւ, պարտ է մեզ նախ՝ զորս առաքեմքն առ կայսր՝ արձակել» (185)։ Եւ ինչպէս կ՚ըսէ Եղիշէ՝ թէ «առաքեցին», նոյնպէս եւ Ղազար՝ «կազմէին» եւ «յուղարկէին»։ Արդ յայտնի է՝ թէ Փարպեցւոյ այս խօսքերն այլ դեսպանութեան խորհուրդը մտածելն եւ զդեսպանն յղելն «ընդհանրութեան սեպհականութիւն են դարձնում». եւ չգիտենք՝ թէ ինչո՞ւ այդ կէտը մէջ կը բերուի իբրեւ մին «տարբեր կերպով պատմուածներէն» երկու պատմչացքով՝ Եղիշէի կողմնասիրութեան պատճառաւ, եւ յետոյ անոր հակառակ կ՚ըսուի՝ թէ «բոլոր նախարարներն ուղարկեցին» դեսպանը։

Գանք նամակաց հարցման։ Եղիշէ թէպէտ դեսպանութիւնը պատմելու ժամանակ մի թուղթ կը յիշէ հայոց կողմանէ առ Թէոդոս, բայց դատաստանի արձանագրութեան մէջ կը յաւելու՝ թէ կար «եւ թուղթ մի առ մեծ սպարապետն Անտիոքոս» * (234) ան-

* Այս ինքն առ Անատող, «որ էր սպարապետ արեւելից» (13), եւ կը կոչուէր նա եւ «սպարապետ Անտիոքայ» (Փրպ. 217) նոյն քաղաքին վերակացու լինելուն համար։ Եղիշէի Անտիոքոս ձեւը գրչագրաց փոփոխութիւն է սկզբնական Անտիոքու ձեւին, ինչպէս ունի մեր մի հին ճառընտիրը՝ գրուած յամին 1224. կամ Անտիոքայ՝ ըստ անձեւացեաց օրինակին։ — Անատող եւ զայլ անուանս ուղղագրած ենք ըստ հին գրչագրաց։

պատճէն. որով յայտնի կ՚երեւի՝ թէ չէ ջանացած ուղարկուած թղթոց թիւն որոշակի դնել յառաջագոյն, բաց ի կայսերականէն։ Ղազար նոյնպէս երկու թուղթ կը դնէ. մին «առ կայսրն եւ առ ամենայն աւագանի դրանն յունաց», եւ միւսն «առ մեծ սպարապետն Անտիոքայ» (184). բայց երկուքն այլ անպատճէնք։ Առաջին թղթոյն պատճենի մէջ՝ զոր կ՚աւանդէ Եղիշէ, կը կարդանք՝ թէ «առ մեծանունդ Թէոդոս կայսր, բազմասցի ողջոյն մեր առ քեզ եւ ամենայն զօրաց քոց»։ Զօրք բառիւ կը հասկանայ աւագանին, ինչպէս այդ խօսքէն անմիջապէս յառաջ՝ «ամենայն եպիսկոպոսակցօք իմովք եւ ամենայն զօրք հայոց, (որ են) Վասակ մարզպան եւ Ներշապուհ ըմբոսեան՝ հանդերձ սպարապետաւս եւ ամենայն մեծամեծ նախարարօքս»։ Ուրեմն Փարպեցին իւր ըսած «առ կայսրն եւ առ ամենայն աւագանին» նամակը ցոյց կու տայ մեզ Եղիշէի պատճենին մէջ. Եղիշէի, որ տեսանք՝ թէ որպիսի հաւատարմութեամբ ներկայացոյց մեզ Խորհրդածութեանցս առաջին մասին մէջ քննուած թղթոց վաւերական օրինակները։

Սակայն այդ թուղթը գրողն եւ ստորագրող լոկ Վասակ չէ. այլ ինչպէս տեսանք՝ կը նշանակուին հոն կաթողիկոսը, եպիսկոպոսք, ապա մարզպանն եւ այլ նախարարք։ Եթէ եւ Ղազարայ հարցնենք, նոյն խնդրոց մէջ ոչ մի թղթոյ գրութիւնը սոսկ սիւնեցւոյն չի տար նա. այլ ըսելով անօրէն կերպիւ՝

«Նամականի արարեալ», ուր գործողը կ'իմացուի նա եւ բազմութիւնը, եւ յաւելլով թէ «զայս ամենայն թղթեան կնքէր նախ իշխանն սիւնեաց Վասակ իւրով մատանեաւ, եւ ապա ամենայն տանուտեարքն Հայոց» (184), ինչպէս կնքելը, նոյնպէս եւ զայն բոլորը գրելն՝ իբրեւ անհրաժեշտ հետեւանք կնքելոյն՝ յայտնապէս ընդհանրութեան սեպհականութիւն է դարձնում Եղիշէի պէս՝ թէ «գրեցին». այսու ջրելով Տէրպօղոսեանի ինքնահնար կարծիքը՝ թէ «Վասակ նամակներ գրեց», իբր միայնակ՝ առանց միւս նախարարաց մասնակցութեան։

Առ կայսր գրուած նամակն Հասարակաց ընծայելը՝ դատաստանի արձանագրութեան տողին — որ է «հրովարտակաւն իսկ՝ զոր տուեալ էր նորա իւրով մատանեաւ» — հակառակ չէր գտնէր մեր քննադատը, եթէ այդ արձանագրութիւնն ամբողջ կարդար եւ ոչ մի տողը. եւ կը տեսնէր՝ թէ «ցուցանէին զըթուղթսն (բոլոր նամակաց համար է խօսքը), զոր տուեալ էր Վասակայ եւ ամենեցուն որ ընդ նմա էին, զի միաբանք լիցեն ընդ նմա յուխտ ապստամբութեանն. թուղթ մի ի վըրաց աշխարհէն... եւ հրովարտակ մի առ թագաւորն յունաց» եւ այլն (234). ապա վերջինս այլ «տուեալ էր ամենեցուն»։ Եւ թէ «սոյնպէս խառն էր նա (մարզպանը) եւ ի մահ մոգուցն». սոյնպէս, այս ինքն՝ ինչպէս խառն էր այլոց հետ նամակագրութեանց մէջ։ Ուրեմն համաձայն իւր նախկին «գրեցին» բացատրութեան եւ Ղազարայ։

Այս այսպէս լինելէ յետոյ՝ դատաստանի արձանագրութեան յիշեալ եզականաձեւ տողի հրովարտակը պէտք չէ հասկանալ մարզպանին սեպհականութիւն, այլ թէ ինքն այլ ստորագրած էր անոր այլոց հետ։ Այդ բացատրութիւնն այդ մտօք՝ յատուկ է Եղիշէի. ինչպէս նոյն տեղւոյն մէջ փոքր մի յառաջ ընդհանուր թղթոց համար, «զոր տուեալ էր Վասակայ եւ ամենեցուն որ ընդ նմա էին», կ՚ըսէ նոյնպէս եզակի ձեւով. «Եւ ի բոլորեսին յայտոսիկ թուղթսն վաւերականն մատանի Վասակայ եղեալ էր» (234), իմանալով նորա մատանին այլոց հետ խառն։ Եւ կայսեր թղթոյն (ինչպէս եւ այլոց) պատասխանատու կը համարուէր նա, ըստ որում իբր մարզպան եւ հաւատարիմ առ պարս՝ ինչպէս ցոյց կու տար, պարտաւոր էր խափանել զայն, եւ ոչ թէ մասնակցիլ ստորագրութեամբ. — պարսից փոյթ չէր՝ թէ առ երկուղի մասնակցեր է կեղծաւորութեամբ։ — Թղթոյն այս պայմանի մէջ մնաւ անտեղի չէ՝ որ կաթողիկոսն եւ եպիսկոպոսք այլ իրենց տեղն ունենային անոր մէջ, եւ ըստ պատշաճի յառաջ յիշուած լինէին քան զնախարարս։ Եւ զայս թէպէտ յայտնապէս չյիշէ Փարպեցին, բայց Եղիշէի թուղթն ընդունելով՝ ինչպէս տեսանք, լռելեայն ընդունած կը լինի եւ այս հանգամանքը։

Եղիշէ այդ թուղթը «հրովարտակ» կը կոչէ. Տէրպօղոսեան զայս իրեն փաստ առնըլով, «յայտնի է, կ՚ըսէ, որ հրովարտակ

էին կոչուում ոչ թէ եկեղեցականների թըղթերը, այլ քաղաքական պետերի գրութիւնները». ուրեմն առաջինք մասն չունէին այդ հրովարտակի մէջ։ Բայց թող որ եկեղեցականաց թղթերն այլ երբեմն հրովարտակ կը կոչուէին*, սակայն այս տեղ նոքա ոչ թէ առանձին կրօնական նամակ կը գրեն, այլ քաղաքական իշխանութեան հետ մի մարմին կազմած, կայսերէն քաղաքական օգնութիւն խնդրելուն կը մասնակցին. ուստի եւ հրովարտակ կը գրեն։ Եթէ հարկ լինէր թղթոյդ ուրիշ անուն տալ, անշուշտ Եղիշէն մեր քննադատէն յառաջ կը մտածէր եւ կու տար, գէթ իւր կարծեցեալ կեղծիքը կատարեալ ընելու եւ չմատնուելու համար։

Գալով չորրորդ հարցման, կրնայ լինել՝ որ Ատոմայ մէջ բերածն ի դատաստանին՝ առ Անատող գրուածը լինի, — զի առ Թէոդոս գրուածը լինելն յայտնի չէ, — որուն մասնակցած չլինին եպիսկոպոսք, այլ միայն մարզպանն եւ այլ նախարարք. — զասոնք միշտ ստիպուած ենք մասնակից ընդունել ըստ երկուց պատմչաց միանգամայն. — յայնժամ Վասակ իբր առաջին ստորագրիչ, աւելի իրաւամբ կրնար ըսել Եղիշէն՝ «զոր (հրովարտակը) տուեալ էր նորա»։

* «Եւ գրեալ առաքելոցն եւ երիցանցն... նորին իրի հրովարտակս» (Կիւրղի Կոչ. ընծ. Դ)։ — «Զթուղթ հրովարտակի քո ընկալայ ես», կը գրէ ս. Յակ. մծբ. առ Գր. լուս. (Զգօն, Ա)։

Վերջին հարց՝ թէ ո՞վ դեսպան գնաց*։ Եղիշէ զԱտոմ գնունի իշխանը կը դնէ (121), ինչպէս ըսինք, եւ ուրիշ մարդ չի յիշեր. նոյն անձն է՝ որ Վասակայ դատաստանի մէջ իբրեւ մին ի դատախազից՝ կը յիշէ իւր դեսպանութիւնը (235)։ Իսկ Ղազար՝ ամատունի Վահան իշխանը, Մամիկոնեան Հմայեակ եւ արծրունի Մերհուժան սեպուհները կը դնէ (184, 249)։ Տէրպօղոսեան իրաւունք կու տայ Ղազարայ, հաստատուելով նոյն ինքն Եղիշէի այն հակառակ խօսքին վերայ թէ «իբրեւ յանդիման եղեն մեծի Թագաւորին, եւ ընթերցան զգիր պաղատանաց հայոց աշխարհին» (124). ուրեմն մէկից աւելի էին։ Իսկ մենք Եղիշէի վերջին խօսքը բնաւ հակառակ չենք գտներ Նախնարար մի միայն դեսպանի յիշատակութեան հետ. նա կը յիշէ զԱտոմ իբրեւ «զմի ոմն ի մեծ Նախարարացն» (121) եւ գլխաւոր դեսպան, եւ այդու չի մերժեր՝ թէ նորա հետ չլինէին ուրիշ հետեւորդներ այլ, զորս հարկ չէ համարած յիշել մի առ մի. ինչպէս երբ տեղ մի կ՚ըսէ Վասակայ համար՝ թէ «դարանամուտ լինէր յամուրս իւրոյ աշխարհին... (իբրեւ թէ) անցանէ ի վերայ գնդին պարսից» (127) եւ այլն, չի նշանակեր թէ միայնակ կը գործէր, այլ իւր կուսակից նախարարաց եւ զօրաց

* Այս խնդիրը, զոր Տէրպօղոսեան անցեալ տարւոյ յօդուածին մէջ քննեց (Հանդ. ամս. թիւ 4), մենք կը զետեղենք հոս իւր տեղւոյն մէջ ըստ մի տեսակէտին։

հետ։ Այդ ոճը շատ բնական է ընդհանուր մարդկային լեզուի համար. ուստի եւ պարզ է՝ թէ ինչո՛ւ չէ յիշած գլխաւոր նախարարին հետ Հմայեակ եւ Մերհուժան սեպուհները։ Բայց անհասկանալի է այն՝ թէ ինչո՛ւ Ղազար, որ բոլոր գնացողներն այլ կ'ուզէ յիշել, լռած է զԱտոմ. եւ փոխանակ զսա դընելու գլխաւոր դեսպան, զՎահան կը դնէ։ Ոչ Եղիշէ եւ ոչ Փարպեցին շահ չունէին մին կամ միւսը դնելու մէջ. ուստի այդ զանազանութիւնը պէտք է երկու պատմչաց միոյն անգիտութեան ընծայել. անգիտութիւն՝ որ կրնայ ծագած լինել միայն ի սխալ լրոյ. եւ այդ սխալի մէջ կրնայ բռնուած լինել ականջալուր պատմիչն եւ ոչ թէ ականատեսը։ Այս անհամաձայնութիւնը չէր լինէր, եթէ Ղազար իւր լռածը Եղիշէի պատմածէն տարբեր լինելուն համար չգերադասէր եւ չառնոյր։

Այդպիսի աղբեր մի հետեւելուն արդիւնք է եւ այն խառնակութիւնը, զոր ունի Փարպեցին դեսպանաց դարձի տեղեկութեանց մէջ։ Այսպէս ըստ իրեն՝ «տանուտեարքն հայոց եւ նախարարք*, որք երթեալն էին յաշ-

* Նախարարական տանց մէջ Նախարար, Նահապետ, Իշխան, Տէր կամ Տանուտէր կը կոչուէր տոհմին գլխաւորը, որ էր մի հոգի, ըստ բարձի իւր ազնուականութեան առնլով նա եւ Աւագ կամ Կրտսեր մակդիրը. իսկ տոհմին միացեալ այր անդամք կը կոչուէին Սեպուհք։ Արդ, Փարպեցին յառաջ դեսպան դնէ մի տանուտէր կամ նախարար, որ էր Վահան, եւ երկու սեպուհք.

խարհն յունաց,... ոչ ժամանեցին ի գործ ժամու պատերազմին». եւ «յապաղեալ զը- րոյց պատասխանոյ այսպէս, հասեալ գործ պատերազմին հայոց եւ պարսից կատարէր» (218). եւ յետոյ դարձան իրենք: Իսկ ըստ Եղիշեայ՝ հայք պատերազմէն յառաջ իմացան դեսպանութեան անյաջող ելքը (125). եւ արդէն թէ Ատոմ եւ թէ Վահան Աւարայրի պատերազմին մէջ էին (173). — Ղազար ոչ մի նախարարի անուն չի տար յԱւարայրի, բաց ի քանի մի գնդապետաց եւ յանկելոց: — Խնդիրը զուր տեղ կը կնճռէ կը դժուարացնէ Փարպեցին. ի՞նչպէս կարելի էր՝ որ այնպիսի նեղ ժամանակի մէջ «վաղվաղակի արարեալ նամականեաւ» (Ղզ. 184) եւ «ձեպով առա- քեալ» (Եղ. 121) դեսպաններն ուշանային աւելի քան տարի մի* եւ անպատասխանի թողուին կրակի մէջ ընկած ազգը. կամ Ե- ղիշէն ի՞նչպէս տեսաւ Արտազու մէջ իւր եւ Ղազարայ դեսպանները: Ղազար գէթ ըսէր՝ թէ Վահան յետ դարձաւ եւ այլք մնացին,

իսկ հոս «տանուտեարք ի— (ոչ թէ կամ) նախարարք». ինչպէս եւ դատաստանի մէջ Արշաւրին խօսել կու տայ, «զՎահան ամատունի եւ զայլս ի նախարարացն յերկրա- տանջէր զնոսա ի հոռոմս արձակեաց» (249): Երկուքն այլ իւր նախորդ ըսածին հակառակ, չափազանց եւ վեր ի վերոյ բացատրութիւններ են:

* Դեսպանք գնացին նախ քան զմահ Թէոդոսի՝ որ պատահեցաւ ի 450, յուլիս. եւ դարձան ըստ Ղզ. յետ պատերազմին՝ որ եղաւ ի 451, յունիս:

փոխանակ յունաց պատասխանը եւ հետեւաբար բոլոր պատգամաւորներն յապաղեալ գըտնելու. հանգամանք մի, որ իւր գլխաւոր դիտաւորին անձին վերայ մեր ունեցած կասկածը բոլորովին կը հաստատէ։

Գ. Համեմատենք այժմ Վասակայ եւ Վարդանայ ոյժը եւ գործունէութիւնն իրարու հետ։

Տէրպօղոսեան Եղիշէի քով կը տեսնէ տեղիք, յորս պատմիչը կը բարձրացնէ զՎարդանը՝ «Հայաստանի յենման կէտը Նորա ձեռին» դնելով, եւ դարձեալ տեղիք՝ յորս սպարապետը կը գերազանցէ քան զՎասակ. Եղիշէ «կարիք զգացած դէպքում ամենայն սառնասրտութեամբ զրկում է Նրանից (ուժից) Նորա իսկական տիրոջը եւ պարգեւում է ուրիշին»։ Քննադատը Նորա այս անարդար վարմուն չի հաւանիր բնաւ. եւ սրտնեղութեան չեչտով մի կը հարցնէ. «Ինչո՞վ բացատրել այսպիսի պարզ հակասութիւնը»։

Մենք ընդ հակառակն՝ իւր բոլոր տագնապն աւելորդ կը գտնենք, եւ զայն «սառնասիրտ» դատողութեան պակասութեան եւ քիչ մ'այլ խառնաշփոթ համոզմանց կ'ընծայենք։ Ըստ մեզ՝ իւր կողմանէ Եղիշէէ ի ցոյց բերուած տեղեկութեանց մէջ ոչ մի «հակասութիւն» չկայ. բայց միայն մի բան պակաս է քննադատին կողմէն, որ եթէ լինէր՝ կ'ազատէր Նա իւր շփոթութենէն. այս ինքն՝ կարեւոր էր Վասակայ գործունէութիւնը բաժանել յարտաքինն եւ ի ներքինն, եւ այնպէս համեմատել Վարդանայ հետ։ Ահա թէ մենք այս

բաժանմամբ ինչպէս կը լուծենք կարծեցեալ անտեղութիւնը։

Վասակ՝ դրացի ազգաց առջեւ իբրեւ ծանուցուած մարզպան եւ Հայ ազգի քաղաքական գլուխ, անտարակոյս ունէր այնպիսի ազդեցութիւն մի, յորմէ զուրկ էր Վարդան իբր սպարապետ. եւ այն ամէն յաջողութիւնքը զոր ունեցաւ նա, այդ ազդեցութեան շնորհիւ էին. ուստի եւ միայն արտաքնոց հետ կատարուած անցից մէջ։ Այսպէս՝ վրաց, աղուանից, աղձնեաց, լփնաց, ճղբաց եւ այլ լեռնականաց եւ դաշտականաց աշխարհները կըրցաւ յետ կացնել հայոց օգնելէն, եւ յունաց բաժնի հայերը եւ յունաց տէրութիւնն իսկ «ուծացոյց» հայերէն։ Եւ այն ինչպէս։ Ոչ թէ մեր քննադատին մեծամեծ բացատրութեանց համեմատ՝ մարզպանական այնպիսի իշխանութեամբ մի, որպէս թէ առաջինքն «իւր հրամանի տակ էին», կամ «մինչեւ անգամ կայսրը հաւանեցնելու ոյժ ունէր», ուստի կատարեց զայդ հրամանաւ եւ ուժով, այլ ընդ հակառակն՝ ըստ նոյն Եղիշէի՝ «խաբէութեամբ» եւ «այլ ընդ այլոյ» կամ «սատանայական ստութեամբ», «իբր թէ ամենայն հայք զկնի իւր միաբանեցին». «դնէր զինքն յաստուածպաշտութեան կարգի եւ զամենայն կողմ ուրացելոցն... երդնոյր եւ հաստատէր, եւ զամենայն հրամանս թողութեան յարքունուստ ցուցանէր։ Այն էին եւ կամք յունաց աշխարհին՝ լսել զայն ախորժութեամբ։ ...Սոյնպէս առնէր եւ ընդ ամենայն կողմանս

ամրականաց աշխարհին, ի Տմորիսն եւ ի կորդիսն, յԱրցախ եւ յաղուանս, ի վերա եւ յաշխարհն խաղտեաց» (161–4)։ Այսպիսի խարդախ եւ վատ հնարներով կրցաւ գործել զայդ, եւ ոչ թէ երաշեալ «հրամանաւ եւ ուժով» իւր։ Եւ որովհետեւ օտարք իրաւունք ունէին մարզպանի ձայնին միայն լսել ըստ օրինի, եւ այնպիսի կեղծուպատիր ձայնի՝ որ «այն էին եւ կամք նոցա՝ լսել զայն ախորժութեամբ», ուստի եւ յաջողեցաւ նա իւր ձեռնարկութեանց մէջ. եւ զորս չկրցաւ խաբել, պարսից գնդերով կտրեց նոցա հաղորդակցութիւնը հայոց հետ (164)։ Հաւատալու ժամանակ Եղիշէի ըսածին՝ թէ Վասակ այդ ամէնը կրցաւ գործել, պէտք է հաւատալ նա եւ այն հնարից՝ որովք գործեց. եւ ոչ թէ նորա խօսից մի մասն առնուլ եւ նորա դէմ դարձնել, ինչպէս ակամայ ստիպուած ենք տեսնել քննադատին քով։

Սակայն մարզպանին ներքին ազդեցութիւնը բոլորովին այլակերպ էր. այս տեղ ապստամբութեան ժամանակ սպարապետն այն էր ազգին առջեւ, ինչ որ միւսն օտարաց։ Վասակ թէպէտ ըստ բարձի եւ ըստ իշխանութեան ի բնէ բարձր էր քան զՎարդան, բայց իւր առ ազգն անհաւատարմութիւնն ստորնացոյց զնա, եւ միւսին եռանդուն ինքնանուիրութիւնը բազմապատկեց նորա ոյժը տոհմային զօրութեան վերայ։ Անգամ մի տեսնենք նախ այդ տոհմայինը։

Կարդալով մեր հին մատենագրերը, կը

տեսնենք՝ որ Մամիկոնեան սպարապետ մի իւր ջերմ ազգասիրութեամբ եւ անխախտ հաւատարմութեամբն առ հայրենիս՝ ամենէն աւելի զօրաւորն էր Նախարարաց մէջ. եւ ուզած ժամանակ ոչ միայն ազգադաւ եւ բոլորին աւելի եղած սիւնեցի մարզպան մի հարուածելու, այլ եւ Հայաստանի Թագաւորին կամքն արհամարհելու եւ մինչեւ իսկ զնա նուաճելու եւ նորա տեղ նստելու ոյժ ունէր: Օրինակ մեզ, երբ Բատ սահառունին Վարազդատ Թագաւորի առջեւ քսութիւն կ՚ընէր Մուշեղայ վերայ, կ՚ըսէր՝ թէ կ՚ուզէ «սպանանել» զարքայն «եւ ինքն թագաւորել». եւ թէ «ի նախնեացն հետէ զձեր արշակունեաց՝ տոհմին մամիկոնէից է կորուսեալ, ... եւ համակ զերկիրս հայոց դոցա է կերեալ, մանաւանդ Մուշեղի» (Բուզ. Ե, ԼԵ): Այդ խօսքը թէպէտ զրպարտութիւն, բայց կը ցուցնէ մամիկոնեանց զօրութեան վերայ եղած մեծ համարումն. եւ այդ համարմամբ էր՝ որ Վարազդատ կարաց հաւատալ Բատայ, եւ երկիւղէն սպաննել տուաւ զՄուշեղ կոչնոց մէջ եւ ոչ համարձակ. «Քանզի մեծապէս երկնչէին ի նմանէն. թէ զգայ, ասեն, մեծ պատերազմ առնէ, եւ ոչ ոք կարէ զդէմ քաջութեան նորա ունել» (անդ):

Սորա եղբայրը Մանուէղ երբ դարձաւ ի պարսից եւ տեսաւ՝ որ Վարազդատ սպարապետութեան իշխանութիւնն յետ իւր եղբօր՝ Բատայ էր տուեր, «Նախ առանց հրամանի Թագաւորին Վարազդատայ յինքն յափշը-

տակեաց զզօրաժարութեանն զսպարապետութիւնն» (Բուզ. Ե, Լէ). գործ մի, որ լոկ իւր կամօք չէր լինէր, այլ բոլոր զինուորութեան ինքնայօժար իւր կողմն անցնելով, որ յայտնի փաստ է Մամիկոնեան տոհմի աճագին ազդեցութեան։ Յետոյ պատերազմի ելաւ Թագաւորին դէմ, բռնեց զնա, Նիզակաւն լաւ ծեծ մի տուաւ նորա գլխոյն, եւ «տիրասպանու» չլինելու համար՝ դուրս նետեց Հայաստանէն *։ Ապա «զամենայն մեծամեծս եւ զնախարարսն հայոց առ ինքն ժողովէր. եւ էր նա առաջնորդ եւ գլուխ նոցա,... եւ տայր հրաման աշխարհի՝ փոխանակ թագաւորի» (անդ)։ Մամիկոնեանց այս անգուգական զօրութիւնը եւ գործունէութիւնը միշտ փայլած է նա եւ քաջին Վասակայ, միւս Մուշեղեանց, Վահանեանց եւ այլոց օրով, ինչպէս կը տեսնենք ի Փաւստոս, Փարպեցի, Յով. Մամիկոնեան, Սեբէոս եւ յայլս։ Միանգամայն բնական էր այս, քանի որ աշխարհին զինուորութեան ղեակը միշտ նոցա ձեռին էր, և իրենց կեանքն անդադար պատերազմաց մէջ անցունելով՝ փորձ եւ կորովի կը վարժէին քան զայլ նախարարս։

* Եւ պէտք չէ մոռանալ՝ որ նորա թագաւորելու ժամանակ «ժողովեցան առ նա ամենայն ազգք հայոց՝ մեծամեծք նախարարք, եւ կամեցեալ խնդացին զթագաւորելն նորա ի վերայ իւրեանց» (Բուզ. Ե, ԼԻ)։ Ուրեմն Մանուէլի դէմ անոք չէր նա, այլ մանաւանդ շատ զօրաւոր, եւ հանդերձ այնու պարտեցաւ, զի իւր ախոյեանը մանկութենէն էր։

Վարդան եւս՝ իբրեւ համարիւն չաղկապ մի իւր քաջ նախորդաց եւ յաջորդաց մէջ, հարկ էր նախ՝ որ ունենար նոցա չափ զօրութիւն եւ ազդեցութիւն, եւ երկրորդ՝ որ իւր գործունէութիւնը սովորականէն շատ աւելի լինէր հայրենեաց այն ծանր վտանգի ժամանակ։ Զայս ցուցնելու համար, եթէ Եղիշէի քով «չափազանցրած գործերով ներկայացուած» է նա եւ յանիրաւի գերազանցուած քան զՎասակ, մենք պիտի դիմենք Փարպեցւոյն չափաւոր նկարագրին, հետեւելով պատմութեան ընթացից։

Երբ նախարարք Յազկերտէն կոչուելով ի պարսս, կ՚առաջարկուի իրենց ուրանալ քրիստոնէութիւնը, «Լռեցին, կ՚ըսէ Ղազար, առ վայր մի այլքն». լռեց եւ Վասակ. «Բայց յառաջ կացեալ աներկիւղ եւ քաջասիրտ մտօք Վարդանայ Մամիկոնէից տեառն եւ Հայոց սպարապետի», ամենուն կողմանէ կը մերժէ եղած առաջարկը (138)։ Յետոյ երբ նոքա իրենց մէջ գաղտ ի սպարապետէն կը խորհին ուրացութիւն կեղծել, այդ խորհուրդը գործադրել կարենալու համար կը ստիպուին յայտնել անոր. «Քանզի գիտէին, եթէ առանց նորա ամենայն խորհեալքն ի նոցանէ եւ պատճառադրութիւնք եւ արարուածք թերիք են եւ անկատարք» (143), թէպէտ մարզպանն իրենց հետ էր. եւ կը գործադրեն՝ մեծ դժուարութեամբ նորա հաւանութիւնն առնլէն յետոյ միայն։ Երբ դառնալով ի պարսից, Վարդան կը սկսի երթալ

տակեաց զզօրաւորութեանն զապարապետութիւնն» (Բուզ. Ե, Լէ). գործ մի, որ լոկ իւր կամօք չէր լինէր, այլ բոլոր զինուորութեան ինքնայօժար իւր կողմն անցնելով, որ յայտնի փաստ է մամիկոնեան տոհմի ահագին ազդեցութեան։ Յետոյ պատերազմի ելաւ թագաւորին դէմ, բռնեց զնա, Նիգական լաւ ծեծ մի տուաւ նորա գլխոյն, եւ «տիրասպանու» չլինելու համար՝ դուրս նետեց Հայաստանէն*։ Ապա «զամենայն մեծամեծս եւ զնախարարսն հայոց առ ինքն ժողովէր. եւ էր նա առաջնորդ եւ գլուխ նոցա,... եւ տայր հրաման աշխարհի՝ փոխանակ թագաւորի» (անդ)։ Մամիկոնեանց այս անգուգական զօրութիւնը եւ գործունէութիւնը միշտ փայլած է նա եւ քաջին Վասակայ, միւս Մուշեղեանց, Վահանեանց եւ այլոց օրով, ինչպէս կը տեսնենք ի Փաւստոս, Փարպեցի, Յով. Մամիկոնեան, Սեբէոս եւ յայլս։ Միանգամայն բնական էր այս, քանի որ աշխարհին զինուորութեան ղեակը միշտ նոցա ձեռին էր, և իրենց կեանքն անդադար պատերազմաց մէջ անցունելով՝ փորձ եւ կորովի կը վարժէին քան զայլ նախարարս։

* Եւ պէտք չէ մոռանալ՝ որ նորա թագաւորելու ժամանակ «ժողովեցան առ նա ամենայն ազգք հայոց՝ մեծամեծք նախարարք, եւ կամեցեալ խնդացին զթագաւորելն նորա ի վերայ իւրեանց» (Բուզ. Ե, ԼԻ)։ Ուրեմն Մանուէղի դէմ անոք չէր նա, այլ մանաւանդ շատ զօրաւոր, եւ հանդերձ այնու պարտեցաւ, զի իւր ախոյեանը մամիկոնեան էր։

Վարդան եւս՝ իբրեւ համարիւն չաղկապ մի իւր քաջ նախորդաց եւ յաջորդաց մէջ, հարկ էր նախ՝ որ ունենար նոցա չափ զօրութիւն եւ ազդեցութիւն, եւ երկրորդ՝ որ իւր գործունէութիւնը սովորականէն շատ աւելի լինէր հայրենեաց այն ծանր վտանգի ժամանակ։ Զայս ցուցնելու համար, եթէ Եղիշէի քով «չափազանցրած գործերով ներկայացուած» է նա եւ յանիրաւի գերազանցուած քան զՎասակ, մենք պիտի դիմենք Փարպեցւոյն չափաւոր նկարագրին, հետեւելով պատմութեան ընթացից։

Երբ նախարարք Յազկերտէն կոչուելով ի պարսս, կ՚առաջարկուի իրենց ուրանալ քրիստոնէութիւնը, «Լռեցին, կ՚ըսէ Ղազար, առ վայր մի այլքն». լռեց եւ Վասակ. «Բայց յառաջ կացեալ աներկիւղ եւ քաջասիրտ մտօք Վարդանայ մամիկոնէից տեառն եւ հայոց սպարապետի», ամենուն կողմանէ կը մերժէ եղած առաջարկը (138)։ Յետոյ երբ նոքա իրենց մէջ գաղտ ի սպարապետէն կը խորհին ուրացութիւն կեղծել, այդ խորհուրդը գործադրել կարենալու համար կը ստիպուին յայտնել անոր. «Քանզի գիտէին, եթէ առանց նորա ամենայն խորհեալքն ի նոցանէ եւ պատճառագրութիւնք եւ արարուածք թերիք են եւ անկատարք» (143), թէպէտ մարզպանն իրենց հետ էր. եւ կը գործադրեն՝ մեծ դժուարութեամբ նորա հաւանութիւնն առնլէն յետոյ միայն։ Երբ դառնալով ի պարսից, Վարդան կը սկսի երթալ

յունաց իշխանութեան կողմերը, «Ցան-
կարծակի իրազգած եղեալ... Վասակայ՝ որ
եւ մարզպան էր Հայոց ի ժամանակին, եւ
ամենայն տանուտերանցն Հայոց եւ սեպ-
հացն, խորտակեալ սրտիւ զարհուրեցան. զմը-
տաւ ածեալ ամենեցուն,... թէ արդ գի-
տեմք զի կորեաք իսպառ:... Քանզի տեղե-
կացեալ ճանաչէին ամենեքեան՝ թէ առանց
առաջնորդութեան ազգին այնորիկ (մամիկո-
նեանց) եւ ոչ մի ինչ իրք եւ գործք աշխար-
հիս Հայոց երթեալ էին ի գլուխ» (166)։
Վասակ կը խորհրդակցի Նախարարաց հետ՝
դեսպան եւ նամակ ուղարկել սպարապետին
ետեւ, եւ «աղաչանօք դարձուցանել զնա
այսրէն. Զի առանց նորա, կ'ըսէ ինքն իսկ
մարզպանը, մեր այս ամենայն կամք եւ խոր-
հուրդք եւ ոչ մի ինչ վճարին»* (167)։

Այս եւ այլ այսպիսի վկայութիւնք Եղի-
շէի չեն, այլ Ղազարայ, «պրագմատիկա-
կան ուղղութեան» հետեւող պատմչին, որ
բոլոր Հայրենեաց եւ նոյն իսկ Վասակայ
փրկութիւնը եւ Հասարակաց խորհրդոյն կա-

* Յայտնի է՝ թէ Վարդանայ հեռանալը նպաստաւոր էր սիւնեցւոյն. բայց ազգին՝ որ կ'ուզէր նորա դարձը՝ կամակից երեւելու եւ իսկոյն չզայրացնելու համար իւր դէմ՝ մինչ դեռ անպատրաստ էր, հարկադրուած էր միւս Նախարարաց հետ միաբանիլ եւ յետ դարձնել զնա: — Այս դէպքն ստոյգ թէ անստոյգ, սակայն այդ ոգին ցոյց տուած է Փարպեցին՝ սպարապետի դարձին համար մարզպանին ցուցած հոգածութեան մէջ։

տարուամն Մամիկոնեան սպարապետին վերայ կը հաստատէ։ Տէրպօղոսեան, որ ցարդ. երկու պատմչաց խօսքերը միմեանց հետ համեմատելով կը յառաջանար, այսուհետեւ կը կարդայ զԵղիշէ միայն, եւ կը չափէ զնա իւր երեւակայութեան մէջ չինած Ղազարայ հետ, ըսելով՝ թէ վերջինս «մեծամեծ եւ զօրաւոր առաւելութիւններ չէ շռայլում Վարդանի»։ Մենք կը տեսնենք, որ սորա ըսածներն՝ եթէ չափաւոր եւ եթէ չափազանց՝ միշտ աւելի շռայլ են քան զԵղիշէին *։ — Ցառաջ տանինք Փարպեցւոյն ընթերցումն։

Ներկայ գլխոյս առաջին խնդրոյն մէջ տեսանք հայոց ապստամբութեան խորհուրդը։ Հոն, կ'ըսէ Ղազար, Վարդան էր՝ որ միւս նախարարաց գլուխ կանգնած, մարզպանէն թոլորովին անկախ՝ կը կազմէր զայն, կորովի ձայնիւն գոչելով. «Մինչեւ ցե՞րբ հանդուրժեմք թագուցանել զճշմարտութիւնն... յայտնի լուսով գնասցուք իբրեւ ի տուընջեան» եւ այլն (176)։ Եւ նոցա հետ ելնելով Վասակայ առջեւ, կը ստիպեն հետեւել իրենց.

* Փարպեցին է՝ որ ամէն անգամ Վարդանայ անունը տալու համար՝ ընդհանրապէս երկու եւ երբեմն մի տող կը նուիրէ նորա պատուոյն. «Սրբոյ (կամ մեծի կամ երանելի) առն Վարդանայ՝ տեառն Մամիկոնէից եւ հայոց սպարապետի» (156. 8, 62, 5, 9 եւ այլն). ուր Եղիշէ բաւական կը համարի ըսել լոկ «սպարապետն» կամ «Վարդան», կամ թէ շատ՝ քաջ կամ մեծ մակդիր մ'այլ աւելի, եւ այն՝ քիչ անգամ։

հոս է՝ որ կը նշաւակէր պատմիչը մարզպանին տկարութիւնն ուխտապահից զօրութեան առջեւ, որ ի հարկէ առաւելապէս կը կենդրոնանար նոցա գլխաւորին մէջ։

Յիրաւի կը կարդանք նոյն պատմչին քով՝ թէ Վասակ ապստամբութեան սկիզբն ինք զինքն ազգին կուսակից ցոյց տալով, «ստիպեր զերանելի սպարապետն» (183) օգնութեան գնալ աղուանից։ Սակայն ստիպել մի, որ եթէ իշխանական լինէր, պիտի չկարենար հպատակը «պահանջել» (Տէրպօղ. բառիւ) եւ ըսել՝ թէ «պարտ է մեզ նախ զօրս առաքեմքն առ կայսր՝ արձակել. եւ ապա զոր ինչ հրամայեսցես ինձ՝ առնեմ անխափան» (183–4)։ Հրաման եւ պահանջ իրերաց հետ չեն յարմարիր. մանաւանդ այնպիսի պահանջ մի, որ բոլորովին հակառակ էր մարզպանի նպատակաց, — որոյ համար իսկ յետոյ գաղտնապէս փութաց խափանել դեսպանութեան արդէն անյաջող արդիւնքը. — եւ սակայն նախ կը կատարուի այն, որով կ'իմացուի՝ թէ Վասակ չկարաց դիմադրել, եւ յետոյ կը մեկնի Վարդան։ Նոյն տեղը Ղազար նա եւ հետեւեալ բարձրագոյն դիրքը կու տայ սպարապետին. «Առեալ ընդ իւր ի տանուտերացն հայոց» (185) զանոնք՝ զորս ինք կ'ախորժէր. եւ նոքա «ինքնայօժար փութով» կը հետեւին իրեն. իսկ մարզպանը՝ միայն «կազմեալս առաքէր ընդ նմա» (186)։ Եթէ Վարդան եւ այլք հպատակ լինէին Վասակայ այնպէս՝ ինչպէս մեր քննա-

դատը կը կարծէ, ոչ սպարապետը կրնար ինքն ընտրել իր մարտակիցները, եւ ոչ սոքա իրենց ազատ կամօք հետեւել անոր. այլ մարզպանը պիտի ընտրէր եւ յղէր։ Նա եւ չէր կարելի՝ որ փոքր մի յառաջ Վարդանէն եւ Նախարարներէն ստիպուողն (յապստամբութիւն) այժմ ինքն ստիպէր զանոնք։ Արդ, Ղազարայ խօսքերը կամ հակասական են, — ուստի եւ ստիպելը կամ հրամայելն անճիշդ, — եւ կամ այդ բառերը պէտք է հասկանալ փոքրացնել յորդորմամբ։ Այս իմաստիւ կը համաձայնի Եղիշէի հետ՝ թէ Նախարարք միաձայնութեամբ զօրքը «բաժանէին», զՆերշապուհ «գումարէին» սահմանապահ, երկրորդ գունդը «տային» Վարդանայ, երրորդը «տային» Վասակայ՝ զՀայաստան պահելու. եւ սա ըստ իր աստիճանին կը յորդորէր սպարապետը՝ գնալ փութով յօգնութիւն վտանգեալ աղուանից։ — Ցիրաւի՝ Եղիշէի քով այլ կը տեսնենք Վասակայ առ Սեբուխտ Նամակին մէջ հետեւեալ բառերը. «քակեցի, բաժանեցի, հեռացուցի, ցանեցի ցրուեցի, զգունդն երրորդ (կարդա երկրորդ) արարի ընդ Վարդանայ յաղուանս» (128). իբր թէ ամէն ինչ ինք կը գործէ. բայց հասկանալի՛ է՝ որ իր մարզպանութեան սովորական ոյժը եւ արդիւնք կ'ուզէ դեռ ցոյց տալ պարսից՝ ըստ իր «այլ ընդ այլոյ ստութեան»։ Մի՛ գուցէ եւ Փարպեցին սիւնեցւոյն այդ խօսքերէն խաբուած՝ հանած լինի «ստիպել» եւ «հրամայել» բառերը։

Մինչեւ Վարդանայ հեռանալը կը ծածկէր Վասակ իւր նենգութիւնը· այժմ եկեր հասեր էր ժամանակն՝ որ բանայ իւր դիմակը· ասոր համար իսկ կը շտապեցնէր զսպարապետը, եւ ոչ թէ աղուանից փրկութեան փութով։ Եւ երբ կը մեկնի նա, այն ժամանակ կը համարձակի ձեռնարկել իւր դաւաճանութեանց։ Տէրպօղոսեան «կասկածաւոր» կը գտնէ Եղիշէի քով «Վասակի հակաքրիստոնէական գործերը այն ժամանակ, երբ Վարդան աղուանքում էր»։ Իւր պարտքն է Եղիշէի ամէն ըսածին վերայ տարակուսել, իսկ մերն՝ իւր անտեղի կասկածները ցրուել՝ համեմատութեամբ ընդ Ղազարայ։ Արդարեւ տեղ մի, ուր երկու պատմիչք բոլորովին համաձայն երթան, այս կէտն է։ Մենք ցոյց կու տանք միայն նոցա էջերը, թողլով ընթերցողաց կարդալ զանոնք· ինչպէս, յետ մեկնելու սպարապետին՝ ծածուկ գրելը Վասակայ առ Սեբուխտ եւ խրախուսելն զնա Վարդանայ դէմ (Եղ· 128· եւ Ղզ· 187–8)· յետ յաղթութեան սպարապետին՝ զուժկան հասնելն Հայաստանէն՝ թէ մարզպանն առ ոտն կոխեց իւր երդումն, պարսից հետ միացաւ, հայոց բերդերը գրաւեց, նոցա ընտանիքը ցրուեց եւ բանտեց (Եղ· 135,6· եւ Ղզ· 194,5)։ Ահա ասոնք են նորա հակաքրիստոնէական ճշմարիտ գործերը, վկայուած նա եւ ի Փարպեցւոյն։ Զասոնք, ինչպէս ըսինք, իսկոյն Վարդանայ հեռանալէն վերջ կը գործէ նա· եւ ի ներկայութեան նորա չսկսելն յայ-

տնի փաստ մ՚է դարձեալ՝ թէ կը վախէր անորմէ, ուստի եւ տկար էր քան զնա։

Այդ դժնդակ գործերով սիւնեցին բոլորովին խզեց իւր ընդ ուխտապահից ունեցած կեղծ կապը։ Այդ օրէն երկու կուսակցութիւնքն յայտնապէս իրարմէ զատուեցան եւ իրարու դէմ դարձան, միոյն գլուխ կանգնելով Վասակ, եւ միւսոյն՝ Վարդան։ Այս երկու պարագլուխք իրերաց այնպէս յայտնի հակառակ գործիչներ եղան, որ սիւնեցին զհայս սպարապետէն զատելու համար՝ կը խրատէր եւ կ՚ըսէր․ «Ի բաց դարձայք ի խրատուէ եւ ի բանից Վարդանայ, եւ մի կորնչիք ընդ դմա» (Ղզ․ 198)։ Զայս կը հաստատեն Եղիշէի բոլոր պատմածներն այլ այդ ժամանակամիջոցին վերայ։

Սակայն նորա աւանդածները Վարդանայ յաղուանից դարձէն յետոյ՝ Տէրպօղոսեան իւր սովորական ոճով «ամբողջապէս կասկածելի» կը դատի, «Նախ՝ Եղիշէի հակասութիւններով, եւ երկրորդ՝ Ղազարի նրանց մասին լռութիւն պահպանելովը»․ ըստ իւրեն՝ «ոչ մոլեռանդ ամբոխը *, եւ ոչ անձնական թշնամիները չհամարձակուեցան բացարձակապէս Վասակի դէմ իրենց ոյժը ցոյց տալ, մինչեւ բոլորովին այլ դրդումից ** առաջացած 451 թուի ճակատամարտը»։

* Եթէ սիւնեցւոյն հետ արեւուն երկրպագէին, այն ժամանակ՝ կարծեմ՝ մոլեռանդ չէին լինէր։

** Ո՞րն է այդ «այլ դրդումը»․ ինչո՞ւ այդպիսի հետաքրքրիչ տեղեկութիւն մի կը ծածկուի մեզմէ…

Երա՜զ է, երա՜զ. Եղիշէի «հակասութիւններն» արդիւնք են՝ դեռ Վասակայ ազդեցութիւնը քննադատին յարտաքինն եւ ի ներքինն զատել չկարենալուն։ Իսկ Փարպեցւոյն լռութիւնը եթէ փաստ մ'է, ապա եւ բոլոր այն դիպուածներն՝ որ նորա քով կան եւ Եղիշէի քով կը պակասին, առ հասարակ սխալ պիտի համարինք, որ հակառակ է ողջմտութեան։ Թէ Ղազարայ լռութիւնն ո՛րչափ զօրութիւն ունի, պիտի տեսնենք գլխոյս չորրորդ խնդրոյն մէջ։ Իսկ քննադատին վերջին խօսքը համարելով հանդերձ՝ թէ ստոյգ է, Վասակ ի՜նչ խեղճ մարդ եղած պիտի լինի՝ որ իւր «իշխանութեան տակ» եղող երկչոտ թշնամեաց «չկարողացաւ յաղթել՝ (նոցա ձեռքով յառաջացած) ճակատամարտը հեռացընելու գործում», եւ այն՝ «Հայաստանի յենման կէտն իւր ձեռին» ունենալով։ Այս խօսքերը պարզապէս կատակերգական են։

Իսկ ի՛րն ուրիշ է բոլորովին. զոր իմանալու համար՝ բաւական է նկատել զՎարդան Աւարայրի դաշտին մէջ, Հայաստանի զօրութեան մեծ մասն ի ձեռին՝ կռուելով ոչ միայն Վասակայ եւ նորա կուսակցաց, այլ եւ նոցա մարտակից պարսից ահագին զօրութեան դէմ։ Այդ ոյժը Վարդան պատերազմի օրը չէր կարող ստանալ, այլ հարկ էր կանուխ պատրաստած լինել զայն եւ կանուխ կազմակերպած իւր կուսակցութիւնը Վասակայ դէմ։ Եթէ այդպէս չլինէր, եթէ ժամանակէ մ'ի վեր սպարապետը «մարզպանի

իշխանութեան սահմանից դուրս անկախ գործիչ» դարձած չլինէր՝ եւ քան զնա զօրաւոր գործիչ, սխնեցին ինչպէս կրնար թոյլ տալ՝ որ նա պատերազմ յարուցանէր իւր եւ պարսից դէմ։ Եթէ «ապստամբութեան գլուխը կանգնողներից մինը ինքը մարզպանն էր», ուրեմն իւր կուսակիցներն իւր դէմ պատերազմեցան, որ ծիծաղելի է։ — Խնդիրն աւելի եւս պարզելու համար՝ անգամ մի հաշուենք երկու պարագլխաց սեպհական ուժերը։

Համաձայն վկայութեամբ Եղիշէի (127) եւ Ղազարայ (195), Վասակ երբ Վարդանայ յաղուանս գտնուած ժամանակ ազգին դէմ դարձաւ, իւր հետ ունէր եօթն նախարար՝ իրենց զօրօք. «եւ զայլս բազում զօրս յարքունի տանէն էարկ յինքն, և զսեպուհս ոմանս յայլմէ տոհմէ», կ՚ըսէ Եղիշէ։ Սա այլուր (160) երկու նախարար եւս աւելի կը դնէ։ Այս է ահա Վասակեանց ճիշդ թիւն, որոյ յետոյ աճած լինելուն ոչ մի ակնարկութիւն չենք գտներ պատմչաց քով։

Իսկ Վարդանայ կողմն՝ Աւարայրի մէջ Եղիշէ քսան եւ մի նախարարաց անուն կու տայ, եւ կը յաւելու. «եւ քողեանքն եւ զօրքն ուխտաւորաց* եւ ամենայն գործակալքն

* Վարդան ուխտաւորաց զօրքը իւր ազդեցութեամբ բաժնեց նոյն տոհմի Արտակ իշխանէն, եւ վանեւունեաց զօրաց կէսը կամ «գունդն» իրենց Գիւտ իշխանէն, որք մարզպանին կողմն էին։ Իրեն ձգեց նոյն իսկ Վասակայ երկու եղբօրորդիքը Բաբգէն եւ Բակուր (Եղ. 166)։

Երա՛զ է, երա՛զ· Եղիշէի «հակասութիւններն» արդիւնք են՝ դեռ Վասակայ ազդեցութիւնը քննադատին յարտաքինն եւ ի ներքինն զատել չկարենալուն։ Իսկ Փարպեցւոյն լռութիւնը եթէ փաստ մ՚է, ապա եւ բոլոր այն դիպուածներն՝ որ նորա քով կան եւ Եղիշէի քով կը պակասին, առ հասարակ սխալ պիտի համարինք, որ հակառակ է ողջմտութեան։ Թէ Ղազարայ լռութիւնն ո՛րչափ զօրութիւն ունի, պիտի տեսնենք գլխոյս չորրորդ խնդրոյն մէջ։ Իսկ քննադատին վերջին խօսքը համարելով հանդերձ՝ թէ ստոյգ է, Վասակ ի՜նչ խեղճ մարդ եղած պիտի լինի՝ որ իւր «իշխանութեան տակ» եղող երկչոտ թշնամեաց «չկարողացաւ յաղթել՝ (նոցա ձեռքով յառաջացած) ճակատամարտը հեռացընելու գործում», եւ այն՝ «Հայաստանի յենման կէտն իւր ձեռին» ունենալով։ Այս խօսքերը պա՛րզապէս կատակերգական են։

Իսկ իրն ուրիշ է բոլորովին· զոր իմանալու համար՝ բաւական է նկատել զՎարդան Աւարայրի դաշտին մէջ, Հայաստանի զօրութեան մեծ մասն ի ձեռին՝ կռուելով ոչ միայն Վասակայ եւ նորա կուսակցաց, այլ եւ նոցա մարտակից պարսից ահագին զօրութեան դէմ։ Այդ ոյժը Վարդան պատերազմի օրը չէր կարող ստանալ, այլ հարկ էր կանուխ պատրաստած լինել զայն եւ կանուխ կազմակերպած իւր կուսակցութիւնը Վասակայ դէմ։ Եթէ այդպէս չլինէր, եթէ ժամանակէ մ՚ի վեր սպարապետը «մարզպանի

իշխանութեան սահմանից դուրս անկախ գործիչ» դարձած չլինէր՝ եւ քան զնա զօրաւոր գործիչ, սւնեցին ինչպէս կրնար թոյլ տալ՝ որ նա պատերազմ յարուցանէր իւր եւ պարսից դէմ։ Եթէ «ապստամբութեան գլուխը կանգնողներից մինը ինքը մարզպանն էր», ուրեմն իւր կուսակիցներն իւր դէմ պատերազմեցան, որ ծիծաղելի է։ — Խնդիրն աւելի եւս պարզելու համար՝ անգամ մի հաշուենք երկու պարագլխաց սեպհական ուժերը։

Համաձայն վկայութեամբ Եղիշէի (127) եւ Ղազարայ (195), Վասակ երբ Վարդանայ յաղուանս գտնուած ժամանակ ազգին դէմ դարձաւ, իւր հետ ունէր եօթն նախարար՝ իրենց զօրօք. «եւ զայլս բազում զօրս յարքունի տանէն էարկ յինքն, և զսեպուհս ոմանս յայլմէ տոհմէ», կ'ըսէ Եղիշէ։ Սա այլուր (160) երկու նախարար եւս աւելի կը դնէ։ Այս է ահա Վասակեանց ճիշդ թիւն, որոյ յետոյ աճած լինելուն ոչ մի ակնարկութիւն չենք գտներ պատմչաց քով։

Իսկ Վարդանայ կողմն՝ Աւարայրի մէջ Եղիշէ քսան եւ մի նախարարաց անուն կու տայ, եւ կը յաւելու. «եւ քողեանքն եւ զօրքն ռըշտունեաց * եւ ամենայն գործակալքն

* Վարդան ռըշտունեաց զօրքը իւր ազդեցութեամբ բաժնեց նոյն տոհմի Արտակ իշխանէն, եւ վանեւունեաց զօրաց կէսը կամ «գունդն» իրենց Գիւտ իշխանէն, որք մարզպանին կողմն էին։ Իրեն ձգեց նոյն իսկ Վասակայ երկու եղբօրորդիքը Բաբգէն եւ Բակուր (Եղ. 166)։

արքունի իւրաքանչիւր զօրաքն հանդերձ » (173-4). եւ գնդապետաց մէջ կը յաւելու Մոկաց եւ Վանանդայ իշխանները (204). իսկ ինն անկելոց մէջ՝ գնունին Վահան եւ սրուանձտեան եղբարքը (210): — Փարպեցին եւս կը յիշէ Աւարայրի անկեալներն ինն հոգի (313), նոյն գնդապետներն յանուանէ, եւ Միհրշապուհ մարդպետն եւ առաւելզեանց իշխանն աւելի (210). ուրիշ տեղ մ'այլ Յեացածներէն զոմանս, « եւ այլ տանուտեարք եւ սեպուհք, եւ բազումք ի զօրացն հայոց » (185), թողլով մեզ կարդալ զանունս յԵղիշէն:

Բայց սոքա միայն չէին Վարդանայ կուսակիցները. Նորա կողմն էին նա եւ այն քանի մի նախարարք եւ բազմաթիւ սեպուհք, որք յետոյ բանտուեցան ի Պարսկաստան՝ մեզ յառաջածանօթ միւս կուսակցաց հետ (Եղ. 342, եւ Ղզ. 221, 55-6). որ թէպէտ բոլորը չմտան ի պատերազմ, բայց ապստամբութեան ժամանակ գործակից էին սպարապետին, եւ ասոր համար իսկ բանտուեցան յետոյ: Ուրեմն Վարդանայ նիզակակցաց միագումար թիւն ըստ երկուց եւս պատմչաց իբր հինգ անգամ աւելի կը լինի քան զՎասակայն. եւ նոցա մէջ շատերը « մեծամեծ նախարարք » (Եղ. 211) կամ « աւագ նախարարք » (Փրպ. 211) էին՝ սկսեալ յարծրունեացն Ներշապհոյ. որոց ամենուն սիրտը եւ կամքն իւր ձեռաց մէջ ունէր մեծ սպարապետը:

Այս գումարին բնական հետեւանք մ'է Աւարայրի զօրաց 66,000 թիւը, զոր նոյն-

պէս անտեղի է « կասկածելի » կարծել, ըստ որում Ղազար զայն չէ յիշած։ Նա զայն չի յիշեր, բայց անոր տեղ ուրիշ թիւ մ'այլ չի դներ։ Մենք իւր լռութիւնն այսպէս կը մեկնենք. նա տեղեկանալով Եղիշէէն (211) հայոց կողմանէ անկելոց « հազար երեսուն եւ վեց » թուոյն, կ'աւանդէ զայն մտադրութեամբ (214). կ'աւանդէ նոյն աղբերէն նա եւ պարսից անկելոց « երեք հազար հինգ հարիւր քառասուն եւ չորս » թիւը *։ Արդ, եթէ հայ պատերազմողաց թիւն այլ Եղիշէի ըստածին հետ նոյն լինէր, պիտի նոյնպէս յիշէր եւ զայն. եւ եթէ տարբեր, աւելի սիրով պիտի յիշէր. եւ զի բնաւ չէ յիշած, ուրեմն կը հետեւի՝ թէ անուշադրութեամբ է լռեր անոր մասին։

Արդ, քանի որ Վարդան այդչափ զօրութիւն ունէր, չէր կարող մեծ պատերազմէն յառաջ լուռ եւ անշարժ մնալ, եւ չզարնուիլ չհալածել յայտնի դաւաճանը՝ մինչ դեռ պարսիկք անոր օգնութեան չէին հասած։ Եղիշէի պատմածներն ոչ միայն հաւանական, այլ եւ հարկաւոր են։ Հարկ է հաւատալ՝ թէ Վարդան իւր յաղթական դարձիւ յաղուանից՝ սարսափ ազդեց սիւնեցւոյն տկար կուսակցութեան վերայ, եւ ուրացողը չնչասպառ

* Ղազար կ'ըսէ դոցա համար՝ թէ « ստուգիւ համարեալ ղոփծեցին մեզ՝ տեղեկացեալք ի զօրագլխացն պարսից » (214). պատմողները շատ են եւ անորոշ. բայց անտարակոյս նոցա մին այլ Եղիշէն էր։

ապաւինեցաւ իւր աշխարհը, որոյ ետեւէն գնդեր արձակեց Վարդան, աւերեց նորա գաւառները, սովի բռնեց եւ ստիպեց շաղիղ ուտել, եւ չարաչար հարուածեց (137–8), մինչեւ հասաւ Միհրներսեհ (152)։ Հարկ է նոյնպէս հաւատալ՝ թէ «բռնացեալ ունէր զթագաւորանիստ տեղիսն» (138, 72). եւ մինչեւ մեծ պատերազմին օրը «դեռ եւս ինքն ունէր զամենայն աշխարհն» (173)։

Եղիշէի այն խօսքը՝ թէ Վասակ «շարժեաց եւ շփոթեաց զաշխարհն հայոց, մինչեւ զբազում եղբարս հարազատս քակեաց ի միմեանց, ոչ եթող միաբան զհայր եւ զորդի» (165), կ՚ակնարկէ այն հանգամանքը՝ որ մի եւ նոյն տան անդամներէն ոմանս խաբէութեամբ իւր կողմն յանկոյց եւ ոմանք Վարդանայ կողմն մնացին. ինչպէս՝ Գադիշոյ եւ Խորէն խորխոռունիք, Արշէն եւ Խոսրով գաբեղեանք, Վարազշապուհ եւ Արտակ պալունիք եւ այլն*. Նոյնը գործեց անշուշտ եւ ռամկին մէջ։ Բայց այս կը ցուցնէ՝ թէ ինչպէս կազմեց իւր կուսակցութիւնը, եւ ոչ բնաւ թէ իւրն աւելի զօրաւոր էր քան զսպարա-

* Սոցա համար է՝ որ կ՚ըսէ Եղիշէ, թէ Վարդան «փոխանակ յետս կացելոցն՝ որ ելին զհետ իշխանին սիւնեաց, զեղբարս կամ զորդիս կամ զեղբարցն որդիս ի տեղի նոցա մատուցանէր, եւ զիւրաքանչիւր զօրս տան նոցա (զօրս ըստ օրինի պարտէին տալ թագաւորին կամ յայնժամ սպարապետին), զի դեռ եւս ինքն ունէր զամենայն աշխարհն» (173)։

պետին. եւ արդէն այդպիսի բռնագրօս կուսակցութիւն մի պէտք է տկար լինէր միշտ։

Վերջապէս՝ Վարդան թէպէտ ըստ Տէրպօղոսեանի «անհմուտ զօրավար» մ՚էր, բայց եւ այնպէս յաջողեցաւ իւր ազդեցութեամբ այդպիսի անհագին ոյժ մի ստանալ ընդդէմ մարզպանին. եւ Աւարայրի մէջ պարսից եւ սիւնեցւոյն միացեալ զօրութեանց դէմ ելնելով՝ ինչպէս ըսինք, կրցաւ՝ եթէ ոչ յաղթել, որ անկարելի էր Հայաստանի ոչ միայն փոքրիկ ի բնէ՝ այլ եւ պառակտեալ զօրութեամբ, բայց գէթ աւելի քան եռապատիկ կորստեան մի եւ ծանր վնասուց հարուածը տալ թշնամեաց, եւ ժառանգել չքնաղ պսակը բարոյական յաղթանակի, որով սանձահարեց յանդուգն ձգտումներր պարսից եւ նոցա սիւնեցի արբանեկին, «որ կամէրն թագաւոր լինել մեզաք հայոց աշխարհին» (Եղ. 247, 157. Ղզ. 227)։

Մենք հոս կը յիշատակենք միայն նոյն ինքն դարձեալ Փարպեցւոյ խօսքերը, թէ երբ Յազկերտ լսեց մամիկոնեան դիւցազին մահը, «յահաւոր սուգ ընկղմեալ խռովէր՝ յիշելով գքաջութիւն առնն. եւ զկաւութիւնն՝ զոր արարեալ էր ընդ թշնամիս բազում անգամ ի վերայ աշխարհին արեաց՝ եցոյց» (215, 33). եւ դատաստանի մէջ Վասակայ երեսին կ՚աղաղակէր՝ թէ դու եղար պատճառ մահուան նորա, «զոր եւ կայսր եւ կամ հոնաց արքայ բռնութեամբ յինէն հանել կամէին, ամենայն արեաց ուժովս կռուէի եւ չտայի հանգչել, մինչեւ այարէն յիս հանէի» (252)։

Եւ այդ բոլորը « անհմուտ » եւ հետեւաբար տկար զօրավարի մի համար։ Մեր միտքը չի հասներ այս խոր քննադատութեան։

Այժմ կնքենք մեր տեսութիւնքը։ Տէրպօղոսեան զԵղիշէ կողմնասէր գտաւ՝ Վարդանայ յաջողութիւններ ընծայելուն համար. եւ հակառակն՝ Վասակայ եւս ընծայելուն համար. իսկ այդ թերութիւններէն ազատ պիտի լինէր, եթէ ամենայն յաջողութիւն եւ զօրութիւն միայն Վասակայ տար. այս ինքն՝ եթէ ծայրագոյն կողմնասէր լինէր։ Ընդ հակառակն՝ մենք եւ առ հասարակ լրջամիտ քննադատութիւնն Եղիշէի այդ վարման մէջ կը տեսնենք ճշմարիտ անկեղծութիւն մի՝ երկու կողմանց առաւելութիւնքը եւս անպատրուակ իւր ընթերցողաց առջեւ դնելու, որով բոլորովին հաւատալի կը լինի հասարակաց մտաց։

Դ. Ի լրումն առաջիկայ խնդրոց քննութեան՝ ակնարկ մի պարզենք մեր քննադատին ծանօթութեան մի մէջ կատարած հարեւանցի դիտողութեանց վերայ։

Նա կը վկայէ՝ թէ Եղիշէի մէջ կան ուրիշ « բազմաթիւ կասկածաւոր տեղեկութիւններ, որոնք սուբյեկտիվ պատմագրողի միտումից են առաջացել ». եւ թողլով զանոնք որ ընթերցողք գտնեն՝ համեմատելով ընդ Ղազարայ, ինք ցոյց կու տայ միայն այս երկուքը. առաջին՝ « Վարդանի եւ Սեբուխտի ճակատամարտը Կուրի ափին », եւ երկրորդ՝ « Վասակի գործունէութիւնը 451 թուից յետոյ »։

Գալով առաջնոյն, ընթերցողք կարող են՝ թողլով քանի մի անկարեւոր հանգամանքները, տեսնել երկու պատմչաց քով զուգընթացութիւն գլխաւոր ամբողջութեան մէջ։ Զոր օրինակ, հայոց սակաւութիւնը եւ պարսից բազմութիւնը (Եղ. 129. – Ղզ. 189). ճակատամարտին տեղը եւ պարսից պատրաստութիւնը (Ե. 129. – Ղ. 188,90). յարձակումն, թշնամեաց խորտակումն, դիմաքսեան Մուշի մահն ի պարսից, եւ լփնաց Վուրկան յԱրշաւրէ (Ե. 131. – Ղ. 190, 1, 2). թշնամեաց շատից գետամոյն լինելը (Ե. 132. – Ղ. 192). անտի Վարդանանց դիմելը հոնաց պահակին վերայ, կոտորելը պարսիկ զօրքը, պահակը Վահան աղուանի յանձնելը (Ե. 133,4. – Ղ. 193), եւ հոնաց հետ դաշն դնելը (Ե. 134. – Ղ. 194)։ Ասոնք են կռուոյն էական մասունքն՝ անթերիք երկու պատմչաց քով։

Փարպեցին յետ այս անցից չունի աղուանից մէջ Վարդանանց յարձակումն պարսիկ բերդից վերայ եւ այրելը, տեղւոյն մօգաց կոտորածը, Կապկոհի լերանց մէջ ապաստանած աղուան նախարարաց դարձն եւ գործակցութիւնը հայոց հետ (Եղ. 132–3), որք բնական հետեւանքներ են յաղթութեան, ուստի եւ հաւատալիք։ Ինչպէս եւ Եղիշէ չունի այն տեղեկութիւնքը, թէ ի նոյն մարտին Արշաւիր տղմի մէջ խրելով, ձիէն կ'իջնէ եւ հետիոտս կը սպաննէ զՎուրկն, մի մոյկը տղմին մէջ կը թողու, եւ ձին եւ զէնքերը

քարշելով հանելով ի ցամաք, «անվեհեր քաջաբար նման Թռչնոյ յերիվարն հեծանէր». եւ յետոյ Կուր գետէն փախչող Թշնամեաց ետեւ նետեր ձգելով, Նաւավարքը եւ զայլս չարաչար կը խոցէ, «որոց ընդ տապալել վիրաւորացն՝ կործանէին նաւքն», Նաւավարք եւ զօրապետք (Ղզ. 191–3)։ Դիպուածք՝ գեղեցիկ իրենց մէջ, այլ ինչպէս լսինք յառաջ՝ վիպականք քան պատմականք։

Գանք երկրորդ խնդրոյն։ Մինչ դեռ Փարպեցին յետ Աւարայրի պատերազմին իսկոյն կը պատմէ Ատրորմզդի մարզպան նստելը եւ Մուշկանայ դարձն ի Պարսկաստան (214,5)., Եղիշէ ընդ մէջ այդ երկու կէտից դեռ ուրիշ գործեր կը պատմէ Վասակայ համար։ Այսպէս, Նորա յետ պատերազմին գործադրած խարեբայ հնարից վերայ համառօտ տեղեկութիւն մի տալով ի վերջ վեցերորդ յեղանակին, եօթներորդի սկիզբն մանրամասնութեանց կ'իջնէ եւ կ'ըսէ, թէ Մուշկան Նորա խորհրդով եւ գործակցութեամբ կ'երթայ կը պաշարէ ամրոց մի, ուր ապաստանած էին Հայոց գունդ մի, կաթողիկոսն եւ քահանայք, եւ պաշարուածներուն սուտ երդումն կու տան՝ որ իջնեն (215). քաջն Բակ եօթն հարիւր հոգւով դուրս կ'ելնէ գիշերով եւ կը փախչի (216). Մնացեալները սովի պատճառաւ կ'իջնեն եւ կը գլխատուին (216). կ'իջնեն եւ ս. Յովսէփ, Ղեւոնդ եւ այլ քահանայք եւ կը կալանաւորուին, իսկ ոմանք կ'արձակուին (217). այլուր եւս կը

յիշեցնէ Արշենի (222), Սամուէղի եւ Աբրահամու «ըմբռնեալն ի կապանս յուրացեալն Վասակայ» (229)։

Ղազար այս բոլորին վրայ լռութեամբ կ'անցնի հոն՝ ուր պէտք էր յիշել. սակայն ուրիշ տեղեր համառօտ ակնարկութեամբ փոքր ի շատէ կ'ամբողջացնէ զանոնք։ Այսպէս՝ Վարդանանց նահատակաց մէջ հաշուելով այնպիսիններ՝ «զորս յամրոցացն իջուցեալ սպանին սրով» (214). եւ թէ «իշխանն սիւնեաց Վասակ» նախ քան զինք կ'ուղարկէ ի Պարսկաստան «ի սուրբ քահանայից հայոց՝ զորս կալեալ էր նախագոյն (ինքն Վասակ) եւ եդեալ ի տեղիս տեղիս յամուրս բերդից սիւնեաց. զսուրբ երէցն Յովսէփ, որ զկաթողիկոսութեան ունէր պատիւ ի ժամուն, եւ զտէր Ղեւոնդ, եւ զքահանայսն Արածայ զտէր Սամուէլ եւ զտէր Աբրահամ» (222)։ Արդ թող տեսնէ մեր քննադատը՝ թէ որչափ կը խաբուի, երբ Ղազարայ լռութիւնը փաստ կ'առնու Եղիշէի դէմ. եւ թէ ինչպէս Վասակ իւր հակաքրիստոնէական եւ ազգադաւ գործերը շարունակեց եւ յետ պատերազմին, արհամարհելով հազարաւոր անմեղաց արտասուքը (Եղ. 222)։

Այդ դառն գործերը շատ բնական կը գտնենք, երբ կը նկատենք նորա մեծագոյն չարիքը՝ պատերազմը դեռ յառաջ վարելու հայոց եւ մամիկոնեան Հմայեկայ դէմ՝ Խաղտեաց լերանց վրայ եւ Տայոց մէջ (Ե. 222,4. Ղ. 216,9), «այրընտիր բազմութեամբ ի

պարսից եւ ի սիւնեաց» (Ղ. 216), Ատրորմըզդայ * հետ՝ որ յայնժամ դեռ միայն «գործակից էր զօրավարին» Մուշկանայ (Եղ. 227). մինչեւ սա մարզպան կարգուելով փոխանակ Վասակայ, խաղաղութիւն ըրաւ, եւ այնպէս եկան ժողովեցան նախարարքն եւ սիւնեցւոյն հետ ի դուռն գնացին դատաստանի։

Հոս անգամ մ'այլ կը տարաձայնին երկու պատմիչք. Փարպեցին այդ յետ պատերազմի կռիւներէն յառաջ արդէն մարզպան կը դնէ զԱտրորմիզդ, եւ զՄուշկան դարձած ի պարս (215–6)։ Իսկ ըստ Եղիշեայ՝ Ատրոր-

* Ո՞ր ազգէ էր դա։ — Եղիշէ այսպէս կը գրէ. «Յայնժամ զմի ոմն յաւագ նախարարացն, Ատրորմիզդ անուն, որոյ իշխանութիւնն իսկ խառն էր ընդ հայոց աշխարհին» եւ այլն (227)։ Վերջին բացատրութիւնը կը ցուցնէ՝ թէ նա օտար ոմն էր, այս ինքն պարսիկ։ Նոյնը կը յայտնէ եւ անունը, սեպհական տոհմին անյիշատակութիւնը. եւ այն հանգամանքն, որ ի դատ կոչեց զՍահակ եպս. եւ զՄուշէ՝ մի մի ատրուշան քանդելուն համար (228–9), զոր միայն կրակապաշտ մի կրնար յանցանք համարել։ Իսկ Ղազար կը գրէ. Յազկերտ «զԱտրորմիզդ ոմն անուն՝ յաշխարհէն հայոց՝ (ուրեմն ազգաւ հայ) մարզպան հրամայեր թողուլ» (215)։ Այդ վրիպակը պտուղ է Եղիշէի «յաւագ նախարարացն» բացատրութեան սխալ հասկացողութեան, այս ինքն՝ փոխանակ պարսից՝ հայոց նախարարներն իմանալուն։ Ա՛յլ է, եթէ գրչագրաց «յաշխարհէն հայոց՝» բնագրին մէջ եղած լինի «յաշխարհէն հայոց». յայնժամ այլ եւս հայ չենք իմանար զԱտրորմիզդ։

միզդ իւր մարզպանութենէն վերջ այլ եւս չկռուեցաւ. «Եմուտ յաշխարհն Հայոց սիրով խաղաղութեամբ» (228-33). եւ Միհրներսեհն այլ «զաշխարհն հրամայէր սիրով նուաճել» (230)։ Ղազար եւս մէջ կը բերէ այդ խօսքերը, թէ Յազկերտ զնա մարզպան կարգելու ժամանակ յանձնեց՝ «զմարդիկն Հայոց չընդոստուցանել, այլ սիրով նուաճել» (215). եւ նա իւր իշխանութեան առաջին օրէն «բազում թուղթս խաղաղութեան առնէր ի տեղիս տեղիս Հայոց աշխարհին՝ թէ եկայք շինեցարուք» եւ այլն (216)։ Որքան հակառակն է այնուհետեւ կռուելն. այլ ըստ Եղիշէի հարկ է ընդունել, թէ նա յիշեալ կռիւները կատարեց՝ մինչ Նիւսաղաւուրտ չէր ելած Հայաստանէն, (ելքը տես յԵղ. 226), եւ ինք դեռ մարզպան չէր։

Եղիշէ կ'ըսէ դարձեալ ի Պորսկաստան գնացող նախարարաց համար՝ թէ «կամօք չոգան» (241,33), իսկ Ղազար՝ թէ Ատրորմիզդ «նենգով նուաճեալ զմարդիկն՝ կալաւ զամենեսեան եւ տայր խաղացուցանել ի դուռըն արքայ» (221)։ Սակայն դժուար է՝ որ երեսուն եւ ութ իշխանք եւ սեպուհք այդպէս միամտութեամբ ի միասին ծուղակի մէջ բռնուած լինին, եւ մին միւսոյն խաբուելէն խրատուելով թակարդէն զգուշացած չլինին. եւ կամ «սիրով խաղաղութեամբ» եկած մարզպանը դեռ «նենգ» գործածած լինի. եւ ստիպուած ենք Եղիշէին իրաւունք տալ։

պարսից եւ ի սիւնեաց» (Ղ. 216), Ատրորմըզդայ* հետ՝ որ յայնժամ դեռ միայն «գործակից էր զօրավարին» Մուշկանայ (Եղ. 227)․ մինչեւ սա մարզպան կարգուելով փոխանակ Վասակայ, խաղաղութիւն ըրաւ, եւ այնպէս եկան ժողովեցան նախարարք եւ սիւնեցւոյն հետ ի դուռն գնացին դատաստանի։

Հոս անգամ մ'այլ կը տարաձայնին երկու պատմիչք․ Փարպեցին այդ յետ պատերազմի կռիւներէն յառաջ արդէն մարզպան կը դնէ զԱտրորմիզդ, եւ զՄուշկան դարձած ի պարսըս (215–6)։ Իսկ ըստ Եղիշեայ՝ Ատրոր-

* Ո՞ր ազգէ էր դա։ — Եղիշէ այսպէս կը գրէ․ «Յայնժամ զմի ոմն յաւագ նախարարացն, Ատրորմիզդ անուն, որոյ իշխանութիւնն իսկ խառն էր ընդ հայոց աշխարհին» եւ այլն (227)։ Վերջին բացատրութիւնը կը ցուցնէ՝ թէ նա օտար ոմն էր, այս ինքն պարսիկ։ Նոյնը կը յայտնէ եւ անունը, սեպհական տոհմին անյիշատակութիւնը․ եւ այն հանգամանքն, որ ի դատ կոչեց զՎահան եպս․ եւ զՄուշէ՝ մի մի ատրուշան քանդելուն համար (228–9), զոր միայն կրակապաշտ մի կրնար յանցանք համարել։ Իսկ Ղազար կը գրէ․ Յազկերտ «զԱտրորմիզդ ոմն անուն՝ յաշխարհէն հայոց՝ (ուրեմն ազգաւ հայ) մարզպան հրամայէր թողուլ» (215)։ Այդ վրիպակը պտուղ է Եղիշէի «յաւագ նախարարացն» բացատրութեան սխալ հասկացողութեան, այս ինքն՝ փոխանակ պարսից՝ հայոց նախարարներն իմանալուն։ Այլ է, եթէ գրչագրաց «յաշխարհէն հայոց՝» բնագրին մէջ եղած լինի «յաշխարհին հայոց»․ յայնժամ այլ եւս հայ չենք իմանար զԱտրորմիզդ։

միզդ իւր մարզպանութենէն վերջ այլ եւս չկռուեցաւ. «Եմուտ յաշխարհն Հայոց սիրով խաղաղութեամբ» (228-33). եւ Միհրներսեհն այլ «զաշխարհն հրամայէր սիրով նուաճել» (230): Ղազար եւս մէջ կը բերէ այդ խօսքերը, թէ Յազկերտ զնա մարզպան կարգելու ժամանակ յանձնեց՝ «զմարդիկն Հայոց չընդոստուցանել, այլ սիրով նուաճել» (215). եւ նա իւր իշխանութեան առաջին օրէն «բազում թուղթս խաղաղութեան առնէր ի տեղիս տեղիս Հայոց աշխարհին՝ թէ եկայք շինեցարուք» եւ այլն (216): Ուրեմն հակառակ է այնուհետեւ կռուելն. այլ ըստ Եղիշէի հարկ է ընդունել, թէ նա յիշեալ կռիւները կատարեց՝ մինչ Նիւսաղաւուրտ չէր ելած Հայաստանէն, (ելքը տես յԵղ. 226), եւ ինք դեռ մարզպան չէր:

Եղիշէ կ՚ըսէ դարձեալ ի Պարսկաստան գնացող նախարարաց համար՝ թէ «կամօք չոգան» (241,33), իսկ Ղազար՝ թէ Ատրորմիզդ «նենգով նուաճեալ զմարդիկն՝ կալաւ զամենեսեան եւ տայր խաղացուցանել ի դուռըն արեաց» (221): Սակայն դժուար է՝ որ երեսուն եւ ութ իշխանք եւ սեպուհք այդպէս միամտութեամբ ի միասին ծուղակի մէջ բռնուած լինին, եւ մին միւսոյն խաբուելէն խրատուելով թակարդէն զգուշացած չլինին. եւ կամ «սիրով խաղաղութեամբ» եկած մարզպանը դեռ «նենգ» գործած լինի. եւ ստիպուած ենք Եղիշէին իրաւունք տալ:

կրօնական ոգին երկու պատմչաց քով. — Եպիսկոպոսք ապստամբութեան շարժիչք չէին. — Վասակ դարձեալ նոյն խնդրոյ մէջ. — Վարդան վերստին նոյն խնդրոյն մէջ. — Եկեղեցականաց ազդեցութիւնն սպա- րապետին վրայ։

Մոռացուած նախարար ըսածներուն, օդոյ վերայ շինուածներ, դատողութեան շփոթութիւն, զարմանալի նորութիւններ. ահա ինչ որ կը տեսնենք Տէրպօղոսեանի յօդուածոց երրորդ մասին մէջ։

Այն Փարպեցին, որ նախորդ մասանց մէջ եւ դեռ ներկայիս վերջն անգամ կը համարուի՝ թէ «հոգացել է՝ բերել պատկառելով ստուգագրութիւն անպարսաւ յականջս իմաստասէր լսողաց», եւ «զբնաւն ողջախոհ զգուշութեամբ բերել ի յայտնութիւն» (17), հոս յանկարծ նոյն «Ղազար եւս միակողմանի կուսակցական պատմիչ է» դարձեր. ըստ որում իբրեւ «եկեղեցական անձն՝» հակառակ է Վասակայ, եւ չէ զգուշացեր «թափելու իւր սրտի մաղձը քրիստոնէութեան հալածիչների գլխին»։

Քննադատին այլ նորութիւնները տեսնելէ յառաջ՝ մերձենանք նախ խնդրոյ մի զոր կը յուզէ նա։

Ա. Փարպեցւոյն մէջ նա կը գտնէ «Թե֊րութիւն» մի, որ սովորական է, կ՚ըսէ, մեր պատմչաց. այն է՝ «պատմողական ոճին կրօ֊նական ոգի ներշնչել, սրբագործուած ձեւ ու կաղապար տալ՝» սրտաբուղխ աղօթիւք, ս. գրոց յարմար օրինակներով, վկայութեամբք եւ այլն։ Այդ Թերութեամբ վարակուած կը տեսնէ եւ զԵղիշէ. սա հոս եւս զերծ չէ իւր անողոք քննադատին անվերջ դժգոհութենէն. եւ հարկադրուեր է յիշեալ Թերութեան մէջ անգամ յետին տեղի բռնել քան զՂազար. ահա թէ ինչպէս։

Փարպեցին այս «առաւելութիւնն» ունի եղեր, որ ս. գրոց օրինակաց եւ աղօթից հետ չի հիւսեր պատմական իրողութեան նը֊կարագիրը, այլ զատ կը պահէ. այնպէս՝ որ զանոնք դուրս թողլով, կը մնայ զուտ պատ֊մութիւնը շարայար։ Իսկ Եղիշէի մէջ, կ՚ը֊սէ, անկարելի է այդ բաժանումն ընել՝ ա֊ռանց խանգարելու պատմութեան կապը։ Այս զանազանութիւնը «դիտող աչքի համար նը֊կատելի է», սովորական աչքն անկարող է տեսնել։

Դիցուք՝ թէ այդ այդպէս է։ Սակայն մենք գիտէինք, թէ այն հանգամանքն՝ որ չէ կա֊րելի գրուածէ մի պակասեցնել խօսք կամ տող մի՝ առանց խանգարելու զայն, գեղեցիկ եւ հազուագիւտ ձիրք մ՚է. եւ Եղիշէ՝ որ ճոխացած է այնու, մեզ ծանօթ գրական աշ֊խարհի մէջ այդ մասամբ գովելի եւ արժա֊նաւոր մատենագիր համարելի է։ Նոյն յառ֊

կութենէն, կ՚ըսէ, զուրկ է Ղազար։ Արդեօք ինչո՞ւ զուրկ է. չենք կարծեր՝ որ խորհած լինի նա, թէ օր մի պիտի գայ քննադատ մի, որ իւր չպատմական կտորները զատէ (ծանօթութեան մի մէջ) պատմականներէն, եւ նորա դիւրութեան համար որիշ որիշ զետեղած լինի զանոնք։ Նա եւ չէ կարելի հաստատել, որ զայնս աւելորդ համարելով՝ այնպէս գործած լինի. եթէ անկարեւոր համարէր, բնաւ չէր դնէր պատմութեան մէջ։ Ուրեմն կը մնայ հետեւեցնել՝ թէ չէ կրցած գրուածին մասունքը սերտիւ զօդել միմեանց հետ. ուստի չունէր Եղիշէի ճարտարութիւնը։ Բայց այն՝ որ ըստ մեզ կատարելութիւն է, քննադատին համար թերութիւն է, և թերութիւնը՝ կատարելութիւն. ի՞նչ կրնանք ըսել տեսութեանց այս տարբերութեան համար։ Այս՝ ի պատասխանի նորա երկու պատմչաց մէջ տեսած յիշեալ զանազանութեան, որ ըստ մեզ ինքնահնար եւ բռնազբօս գիւտ մ՚է։

Իսկական զանազանութիւնը՝ զոր նա չէ տեսած, կամ ուղղագոյն եւս՝ հակառակն է տեսեր, չպատմական մասանց քանակութեան մէջ է, որք շատ աւելի բազմախուռն եւ երկարաձիգ են Ղազարայ ոճոյն մէջ՝ քան Եղիշէի. զայս մի ակնարկով կարելի է նկատել։ Փարպեցին երբեմն մինչև անգամ ս. գրոց վկայութեանց այլ և այլ թարգմանութեանց մէջ ունեցած տարբերութիւնքն այլ կը յիշէ. զոր օրինակ, Վարազվաղանայ յար-

մարեցնելով սաղմոսին մի խօսքը՝ կըսէ․ «Ըստ գրեցելումն ի վեշտասաներորդումն սաղմոսին, Յագեցան կերակրօք՝ ասէ, որ միւս եւս թարգմանիչ՝ խողեննեաւ ասէ, եւ թողին զըմնացուածս տղայոց իւրեանց» (115)․ գոգցես թէ պատմութիւնը ս․ գրոց մեկնութիւն լինէր։ Ընդ հակառակն՝ Եղիշէ քիչ անգամ ունի պատմական իրողութենէ դուրս տողեր, բաց յութերորդ յեղանակէն, յորում կը խօսի քահանայից վերայ, եւ ամենայն իրաւամբ նոցա բերանը կը դնէ մերթ ժամերգութեանց մասունքը եւ մերթ այլ հոգեւոր խօսքեր։

Բ․ Շատ աւելի հետաքրքրիչ են Տէրպօղոսեանի հետեւեալ կտորներն, որոց մէջ կը համառօտէ Նախաբար յարուցած խնդիրներն՝ ապստամբութեան գործոյն մէջ եպիսկոպոսաց, մարզպանին եւ սպարապետին բռնած ընթացից, և եկեղեցականաց Վարդանայ վերայ ունեցած ազդեցութեան մասին, ըստ այլ եւ այլ տեսութեանց երկու պատմչաց։

Խօսելով եպիսկոպոսաց նկատմամբ, Եղիշէի «կուսակցական մոլեռանդութեան» կ'ընծայէ նորա տուած այն տեղեկութիւնը՝ թէ «450 թուի ապստամբութիւնը եպխսկոպոսների պահանջով եղաւ» (110–1), փոխանակ Վարդանայ նախաձեռնութեան տալու։ Եւ ահա յետ քանի մի տողից ինքնին կը հաստատէ՝ թէ «ապստամբել ոչ միայն կղերն էր պահանջում, ամբոխին ոտի կանգնեցնելով,...», թէ «կղերը նախարարներին հետ

տուած՝ մտան» ստիպեցին զՎասակ յապստամբութիւն, եւ այլն: Եւ այն եկեղեցականք, որ յառաջ «միայն հրաման կատարողներ» էին Նախարարաց, հոս մարզպանն անգամ «ակամայից համաձայնեցրին» իրենց կամաց: Զարմանալի դատաստան:

Լսենք իւր խօսից չարունակութիւնը. «Ապստամբութեան խորհուրդը, կ'ըսէ, շատ վաղ էր ծագել կղերի մտքում. Նախարարաց դեռ Ապար աշխարհ գնալու ժամանակ՝ * հեռացողները աչքի առաջ ունէին դիմադրել արքային, ուստի մնացողներին պատուիրում էին չակնկալել կեանքի, այլ վճարման վախճանի» (Եղ. 19): — Գնացողք եւ դիմադրել ուզողքը Նախարարքն են, եւ ի՞նչպէս ապստամբութեան խորհուրդը «կղերի մտքում» ծագած կը լինի: Այդ խորհրդոյն ժամանակին եւ հեղինակաց նկատմամբ մեր տեսութիւնն ուրիշ է: Արդարեւ ոչ կղերն եւ ոչ Նախարարք այդպիսի դիտաւորութիւն չունէին 441ին. այդ բանը Եղիշէի խօսից սխալ հասկացողութեան արդիւնք է: Պատմիչը կ'ըսէ. «Հրաման տուեալ աշխարհի՝ ոչ իբրեւ յակնկալութիւն կենաց, այլ իբրեւ ի վճարումն վախճանի»: Հոս, ինչպէս եւ ա՛յլ շատ տեղ, հայ լեզուի մէջ «հրաման տալ՝» կը նշանակէ կտակ ընել **. եւ իմաստն այս է. իւ-

* Այդ երթն էր 441ին, «Ի չորրորդ ամի տէրութեանն» Յազկերտի (յ18 էջ գրոցս):

** Աքիտոփէլ «հրաման ետ տան իւրում, եւ խեղդ

րաքանչիւրն իւր աշխարհին (գաւառին) կը-տակ ըրաւ, ոչ թէ ապրելու յուսով, այլ իբ-րեւ թէ կենաց վերջը հասած էին ։ Նոքա կ'երթան՝ հաւատոց համար նահատակուելու պատրաստութեամբ, եւ Տէրպօղոսեան կը կարծէ՝ թէ եկեղեցականաց թելադրութեամբ «արքային դիմադրելու» կ'երթան, և Մնա-ցողաց այլ նոյնը կը պատուիրեն ։

Դարձեալ՝ Արտաշատու ժողովոյն մէջ (յա-մին 449) յետ գրելու առ պարսս, «անսուտ երդմամբ եդին վկայութիւն՝ կենօք եւ մահու ի նմին կալ հաստատուն» (Եղ. 68), զոր կը մեկնէ՝ «կեանքով եւ մահով դիմադրեն արքային», այս ինքն ապստամբել. եւ նա-խարարք գնացին ի Տիզբոն՝ «ի ձեռն Յով-սեփու եպիսկոպոսի նովին ուխտիւ հաստա-տեալ» (71)։ — Այս մեկնութիւնս այլ հեռի չէ նախորդէն։ Ի՞նչ բանի վերայ երդուան նոքա «կալ հաստատուն». ի՛նչ է «ի նը-մին»։ Տող մի վեր կ'ըսէ՝ «ի սմին մեծի հաւանութեան», որ էր նկատմամբ նամակին վերջին տողից. «Կամօք մեռցուք վասն սի-րոյ նորա (Քրիստոսի),... անլուծութեամբ (կացցուք) ընդ Աստուծոյ, որում չիք հնար քակտել եւ ի բաց ելանել» (67–8). միով բանիւ՝ հաստատուն կալ հաւատոց վերայ, եւ այն՝ «կենօք եւ մահու», այս ինքն՝ թէ եւ

արկ եւ մեռաւ» (Բ Թագ. ԺԷ, 23)։ — «Հրաման տուր վասն տան քում, զի մեռանիս դու» (Դ Թագ. Ի, 1. Ես ԼԸ, 1. Ա Մակ. Թ, 55)։

այդ բանի համար հարկ լինի կեալ կամ մեռնել։ Արդ՝ չգիտենք, թէ հաւատոց վերայ վկայօրէն մեռնելու ուխտն ինչ կապ ունի ապստամբութեան հետ։ Եթէ Նախարարք եկեղեցականաց դրդմամբ ապստամբել երդուան, ինչո՞ւ ապա ելան գնացին առ Յազկերտ, ուր գիտէին թէ կամ մահ կայ իրենց կամ ուրացութիւն։ Ապա յայտ է՝ թէ «զանձինս ի մահ մատնեցին» (71), եւ ոչ այլ ինչ։ Նոյնը կը հաստատէ եւ Ղազար, ըսելով՝ թէ խըլըրտման կասկած անգամ չէին ուզեր տալ. «Խորհէին՝ չերթալն որպէս ապստամբութիւն կարծեցուցանել» (132)։ Ուստի և հոս եպիսկոպոսաց զնախարարս ի նոյն գրգռելը զուտ երեւակայական է։

Ապստամբութեան խորհուրդը Նախարարքն յղացան ի Տիզբոն. Վարդան իւր ճառի մէջ կ'ըսէր, թէ կեղծ ուրացութեամբ ուզեցինք ազատել մեր սիրելիքը Պարսկաստանէն, «զի նոքօք հանդերձ մարտ եդեալ կռուեսցուք ընդ անօրէն իշխանին վասն հայրենի աստուածատուր օրինացն» (Եղ. 177)։ Թէպէտ Փարպեցին զայդ իբրեւ բացարձակ որոշումն չի դներ. այլ ի Տիզբոն խօսել տալով իշխանաց սպարապետին հետ, թէ «ամենայն աստացելոց ի քէն լուիցուք եւ արասցուք,... հեղլով զարիւն մեր ի վերայ ամենայն աշխարհին փրըկութեան», կը յաւելու եւս՝ որ «եթէ դիպեսցի մեզ թողուլ զաշխարհ... եւ փախչել յօտարութիւն, ընտրեսցուք» (151, 142)։ Եւ յետ դարձին ի հայրենիս՝ Վարդանայ

դիմել կու տայ յօտարութիւն։ — Այսպէս թէ այնպէս, եպիսկոպոսք ի սկզբան ոչ իրենք ունեցած են ապստամբութեան կամք եւ ոչ այլոց ներշնչած, այլ նախարարք խորհեցան։ Այժմ տեսնենք՝ թէ ինչպէս սկսաւ այն։

449 տարւոյ ձմեռն էր*. Նախարարաց հետ

* Ահա Վրդնց. պատերազմի ժամանակագրութիւնն։

Յազկերտ քրիստոնէից դէմ խիստ բռնութիւնը սկսաւ «յերկոտասան ամի թագաւորութեանն» (Եղ. 51), որ է 449, կամ 448ի Բ կիսուն, (զի տարին ըստ հայ. աւգ. 11էն կը սկսէր)։ Նախարարք գնացին եւ ներկայացան Յազկերտի «ի մեծի շաբաթու զատկին» (Եղ. 72), որ է 26 մարտի նոյն 449ին. — հետեւաբար պարսից նամակի գալն եւ Արտաշատու ժողովը քան զայդ յառաջ պատահեցան. — եւ դարձան իշխանքն «յամսեանն չորրորդի» (Եղ. 98), այն է տրէ (որ կը սկսի ի նոյ. 9)։ Անցաւ «ձմերոցի» ժամանակն (Եղ. 107), եկաւ 450ի գարունը՝ «մինչեւ յաւուրս տօթոյն մօտելոյ» (Ղզ. 174), որ է իբր մայիս. յորում կատարեցին ապստամբութեան խորհուրդը, ձերբակալեցին զՎասակ, եւ սկսան գրաւել ամրոցները։ Առ յոյնս դեսպան յղեցին ամարան սկիզբը, զի դեռ նոր հասած՝ մեռաւ Թէոդոս ի յունիսի 16։ Անցան «աւուրք տօթոյ» (Ղզ. 174, 82), աշնան սկիզբը գնացին յաղուանս, եւ Վասակ սկսաւ իւր դաւը։ Երբ դարձան Վարդանանք, «ժամանակ ձմերայնւոյ հասեալ էր» (Եղ. 138, Ղզ. 197). ի նմին ժամանակի յարձակեցան սիւնեաց գաւառն՝ ուր ապաստանած էր ուրացողն։ Եկաւ «քաղոց» ամիսն (որ կը սկսի ի դեկտ. 9) եւ ապա «տօն յայտնութեան Քրիստոսի» (Եղ. 139), ուրեմն 451 թուա-

եկող մոզաց խուժանն իրենց առաջին փորձոյ * ժամանակ՝ Հայ ժողովրդեան անակնունելի ընդդիմութենէն խրատուած՝ սանձեր էին իրենց յանդգնութիւնը (Եղ․ 98, 100), մինչեւ Վասակ «հրոս հանեալ ի սիւնեաց աշխարհէն, զիւր գունդն ստուարացոյց ի թիկունս օգնականութեան մոզաց եւ մոգպետին» (Եղ․ 107)։ Այն ամսոց մէջ, յորում այդ պատրաստութիւնը կը լինէր, քրիստոնէութեան դէմ յայտնի ձեռնձգութիւնք չը֊

կանը ։ Նոյն տարւոյ գարնան եկաւ մօտեցաւ Միհրներսեհ, եւ երկու կողմանէ պատերազմի պատրաստութիւնք եղան ։ Կատարուեցաւ «տօն մեծ զատկին» (Ղզ․ 199), յ8 ապրիլի․ եւ ապա տեղի ունեցաւ Աւարայրի ճակատամարտն, երբ դեռ «գարնանային էր ժամանակն» (Եղ․ 209)․ այն է՝ հոգեգալստեան նախընթաց օրը (Ղզ․ 203, 4, 10) ի մայիսի 26, եւ ոչ եօթներորդ օրը տօնին՝ ի յունիսի 2, զի տօնն յառաջ մի օր էր (Բացատր․ չրկնց․ 369), եւ Փրպ․ «յուրբաթու պենտեկոստէին» (պատերազմի նախորդ օրը) պէտք է յառաջընթաց ուրբաթն իմանալ ։

* Մոզաց ի հայս գալու ժամանակ պատուէր տուեցաւ իրենց՝ որ սկսեալ «վեցերորդ ամսէն՝» որ է արաց (ի յունր․ 8) «մինչեւ ի գլուխ տարւոյ՝» որ է նաւասարդ (յաւգ․ 11), պիտի սկսէին մուծանել ի հայս մոգական ծիսերը չափով մի․ — թէպէտ նոքա կանխեցին, հանելով «յամսեանն չորրորդի» եւ սկսելով գործը «յետ աւուրց քսան եւ հնգից»․ — «եւ զայլն ամենայն առ յապա պատրաստեսցեն» «մինչեւ ի նաւասարդէ նաւասարդ» (Եղ․ 86–8, 98)։

լինելով, ուխտապահք կը սպասէին՝ թէ գործերն ուր պիտի յանգին։ Վերջապէս եկաւ գարունը. մարզպանը զօրացած, ցրուեց մոգերը իւր կուսակից նախարարաց տները եւ ժողովրդեան մէջ, ուր սկսան գործադրել իրենց պաշտամունքը։ Եկեղեցական դասն երբ տեսան այդ բանը, բնականապէս չէին կըրնար հանդուրժել. ուստի դիմեցին սպարապետին բնակարանը, եւ պահանջեցին՝ որ խափանեն անօրէնութիւնը։ Այդ չարեաց զօրականքն այլ չհամբերեցին. բայց որովհետեւ չէր կարելի արգելուլ զայն առանց զայրացնելու զՅազկերտ, եւ ոչ առանց բռնութեան սանձահարել մոգաց թիկունքը զՎասակ, ուստի մի և նոյն ժամանակ սահմանեցին ի զէն դիմել, այն է ապստամբել (Եղ. 110–1), որում պատրաստ էին ի Տիզբոնէ։ Այսպէս ահա ապստամբութիւնն ոչ թէ եպիսկոպոսաց «սեւեռեալ ցանկութիւնն» եւ «ջանքն», այլ հարկն ստիպեց. եւ ի սպառ անարդար են քննադատին նոցա վերայ բարդածները։

Գ. Խորհրդածութեանցս նախորդ գլխոյն մէջ տեսանք մարզպանին բռնած դիրքն ապստամբութեան ժամանակ՝ թէ ըստ Տէրպօղոսեանի եւ թէ ըստ մեր տեսութեան. այժմ տեսնենք՝ թէ ինչ նոր տեղեկութիւններ կու տայ նա նորա մասին։

Այն Վասակն, որոյ համար ըսաւ յառաջ՝ թէ «ապստամբութեան գործի մէջ պարսից դէմ պաշտպան է հանդիսացել իբրև մարզպան՝ ուխտապահների համար, որոնք մոգե-

րին կոտորել են » 450ի գարնան, եւ ինքն իսկ մասնակցեր է մօգաց այդ կոտորածին, յունաց օգնութիւնն է հայցեր, զՎարդան յաղուանս պարսից դէմ է յղեր, եւ այլն, հոս ընդ հակառակն՝ « 450 թուերին անօգուտ եւ վնաս էր համարում պարսիկներին ապստամբութեամբ պատասխանել », եւ « մասնակցութիւն ցոյց չտուեց գործին »։ Այդ խօսքերն արդէն կ՚եղծանեն զիրեար, եւ մեզ աշխատութիւն չեն թողուր։ Իսկ իրն, որ է՝ սիւնեցւոյն մինչեւ 450ի աշնան սկիզբն առժամանակեայ բռնադատեալ գործակցութիւնն ապստամբութեան մէջ՝ զոր ցոյց տուինք յառաջ, միշտ հաստատուն կը մնայ։

Դարձեալ՝ այն Վասակն, որոյ դէմ յառաջ նորա « թշնամիներն՝ » այն է ուխտապահք՝ « իրենց ոյժը ցոյց տուին... (գէթ) 451 թուի ճակատամարտում », հոս ընդ հակառակն՝ « 451 թուի ճակատամարտին նա ոչ միայն չմասնակցեց, այլ եւ... ճակատամարտի նախընթաց գիշերը* իւր կուսակից քահանաների ձեռքով պատգամ ուղարկեց ուխտապահների մօտ նոյն խորհրդով, թէպէտ վերջիններս անուշադիր թողին »։ Եթէ պատերազմին « չմասնակցեց՝ » կը հասկանայ հայոց հետ, — թէ եւ այդ իմաստիւ այդպիսի բացատրութիւն չի լինիր, — խօսք չունինք. իսկ եթէ կ՚իմանայ՝ եւ ոչ պարսից հետ ընդդէմ

* Եղիշէի (188) « զբազում աւուրս » խօսքը նախընթաց գիշերը հասկցած կը թուի։

հայոց, հարկ է մեզ կարծել՝ թէ պատմչաց ըսածներն, «ուրացեալն Վասակ, որ զանձն իւր ի մէջ գազանացն թագուցեալ ապրեցուցանէր» (Եղ. 212), եւ «ղակիչ գնդին սիւնի զօրուն» ի բանակին պարսից (Ղզ. 211), եւ «զայնչափ լաւ արանց զծախս ի գնդէն պարսից եւ սպանեաց» (Ղզ. 220), քննադատն համարած է յիշելոց ուրուականները։

Դ. Բայց շատ աւելի նորօրինակ են Վարդանայ համար ըսածները, եւ անհամեմատ այն լոյսը՝ զոր կը սփռէ նորա պատմութեան վերայ՝ իբրեւ թէ համաձայնութեամբ Ղազարայ։ «Տասնեւութ ամսուայ ընթացքում, կ՚ըսէ, այս ինքն՝ Նախարարների Տիզբոնից դառնալուց յետոյ մինչեւ 451 թուի գարունը*, Վարդան ոչ միայն չի աշխատել ապստամբելու դիտումով, այլ եւ խափանել է ապստամբութիւնը»․ յայսմ մասին մարզպանին հետ մեծ «համերաշխութիւն» ունեցեր է։ Այնպէս կը կարծուի՝ թէ ուրեմն նա զէթ «451 թուի գարունը» համաձայնեցաւ ապստամբութեան։ Անշուշտ, եւ ըստ քննադատին՝ եպիսկոպոսաց եւ մարզպանին թըշնամեաց ստիպմամբ․ սակայն այնպիսի ձեռնպահութեամբ ի գործոյն, որ նորա (ինչպէս եւ Վասակայ) «համաձայնութիւնը գաղտնիք մնաց կառավարութեան աչքում մինչեւ 453

* Որ է՝ 449ի դեկտեմբերէն մինչեւ 451ի մայիսի վերջը, պատերազմի օրը։

թիւր» ։ Ուրեմն Վարդան 450ին Կուրի մօտ ոչ թէ պատերազմի, այլ բարեկամական տեսութեան մի գնաց Սեբուխտի. եւ Աւարայրի մէջ չմտաւ, կամ թէ մտաւ՝ բայց պարսիկք չտեսան բնաւ Հայոց բանակին հրամանատարը, եւ չիմացան՝ թէ Հայոց սպարապետին հետ կը կռուէին, թէ Վարդանն էր՝ յորմէ բիւրաւոր մահեր ընդունելէ յետոյ մահացուցին վերջապէս. եւ այսպէս «գաղտնիք» մնաց նորա մասնակցութիւնը։

Մենք յառաջ արդէն տեսանք նորա մեծ գործունէութիւնն ապստամբութեան մէջ՝ համաձայն վկայութեամբ պատմչաց. եւ որպէս զի ոչ մի կասկած չմնայ, փորձենք ցոյց տալ քննադատին նոր դիտողութեանց հիմնազուրկ վիճակը։

Նորա գլխաւոր չփոթիչն եղեր է Ղազարայ մի տեղին (172–4)։ Նախարարաց ի Տիզբոնէ դարձին՝ վրաց Աշուշա բդեշխն եւ մարզպանին որդիքը Բաբիկ եւ Ամիրներսեհ հոն պատանդ մնացին. Վարդան խորհելով՝ որ իրենց խլրտմամբ կրնայ նոցա վնաս հասնել, զգոյշ կը մնար. եւ թէպէտ ամատունեաց Վահան իշխանն՝ որ ի վաղուց ոխերիմ թշնամի էր սիւնեցւոյն*, կը յորդորէր զը-

* Այդ թշնամութիւնն ըստ քննադատին անտի կը ծագէր, որ Վահան զրկուած էր իւր հազարապետութենէն՝ սիւնեցւոյն մարզպանութեան ժամանակ։ — Ամատունին «հազարապետ հայոց մեծաց» կը կոչուի Կորեանէն (27) եւ ի Խոր. (Գ, ԿԷ) ս. Մաշթոցի մա-

պարապետն յապստամբութիւն, որպէս զի Վասակ կամ չմիաբանելով ուխտապահից հետ՝ անոցմէ սպանուի, կամ միաբանելով որդիքն սպանուին ի պարսից, սակայն Վարդան «ոչ ի բանս ինչ որում հայէր»: Քննադատն աստի կը հետեւեցնէ՝ թէ «այսպէս բռնի կերպով սանձահարեց եսամոլներին»․ ուստի եւ խաղաղութեան կողմն էր:

Այդպէս արագ մեկնել անցնել նորա կամքն և ընթացք․ հանդարտ գնանք: Այն հանգամանքն, որ նա պատանդից խնայելոյն համար չէր ուզեր ապստամբել, ցոյց կու տայ՝ թէ պիտի ապստամբէր եթէ նոքա չլինէին: Նոյն Ղազարն է՝ որ այդ դէպքը պատմելու ժամանակ կը յաւելու եւս՝ թէ «եւ ի նահատակութիւնն ցանկացեալ ընթանայր» (174):

Ծանր հարկը կը բռնադատէր զՎարդան՝ մինչեւ անգամ իւր հաւատքը գաղտնի պաշտել ի սկզբան: Զի նախարարքն Յազկերտի եւ իրենց հետ եկող մոգաց առջեւ նոցա կրօնքն ընդունած ձեւանալով, եթէ յետ դարձին իս-

հուան ժամանակ, որ եղաւ «յառաջնումն ամի երկրորդ Յազկերտի„ (Կոր․ 29), որ է 438: Եղիշէն այլ կը յիշէ մի «հազարապետ աշխարհին», զոր Դենշապուհ սուտ ամբաստանութեամբ զրկեց պաշտօնէն, երբ այցելու եկաւ ի հայս (448ին), եւ «փոխանակ նորա դրօ-օէկ ած յաշխարհն» (39)․ սուրենն միւսն հայ էր, եւ նոյն ինքն Վահան: Բայց նորա պաշտօնընկերութեան մէջ սիւնեցւոյն մասնակցութիւնն անյայտ է, եւ նոցա թշնամութիւնն այնու չի մեկնուիր:

կոյն հրապարակաւ յայտնէին իրենց քրիստոնէութիւնը, արքային կամաց դիմադրած, ապստամբած պիտի համարուէին։ Եւ որովհետեւ պատանդից վտանգն զՎարդան կը ստիպէր յապաղել իրենց դիտաւորութեան գործադրութիւնը, նա եկեղեցական պաշտամունքն իւր տան մէջ կատարել կու տար. եւ թէպէտ « միաբանութեամբ ամենայն հայովք երթալ յեկեղեցի ցանկայր, ... եւ նեղէր չերթալով, այլ եւ կամաւ արգելեալ առ վայր մի՝ համբերէր իրացն » (Ղզ. 171-2). կը համբերէր « առ վայր մի », եւ ոչ թէ բնաւ չապստամբելու կամօք եւ դիտմամբ։

Միանգամայն այն ժամանակամիջոցի մէջ՝ յորում « համբերէր » նա, զսպուած կը մընային մոգերն ըստ Եղիշէի, ինչպէս ըսինք յառաջ։ Տէրպօղոսեան մեծապէս կը սխալի կարծելով՝ իբրեւ ըստ Փարպեցւոյն՝ թէ նոքա յայնժամ « անարգում էին ս. եկեղեցին, ... եւ Վարդան այդպիսի վիճակը, դրութիւնը տանում էր. Համբերէր իրացն »։ Ղազար մոգաց գործերը նորա « համբերելէն » երեք էջ յետոյ կը պատմէ. եւ ի՞նչպէս կարելի է « համբերելը » նոցա արբապղծութեանց ընծայել, մինչդեռ ուղղակի կը նայի իւր նախորդ իմաստին՝ թէ « նեղէր չերթալով յեկեղեցի »։ Նորա խնայելն իսկ մարզպանին որդւոց՝ նշան է, թէ Վասակ դեռ հրապարակաւ եւ ուժով պաշտպան չէր հանդիսացած մոգաց, որով եւ նոքա կը զգուշանային դպչել կրօնից։ Բայց երբ այս եղաւ գարնան,

եւ եկեղեցականք դիմեցին սպարապետին, այլ եւս հաստատ նորա համբերութիւնը, եւ հոն էր որ աղաղակեց. «Մինչեւ ցե՞րբ հանդուրժեմք թագուցանել զճշմարտութիւնն» (Պզ. 176)։ Քննադատը ոչ միայն զայս չի տեսներ, այլ որ զարմանալին է, Եղիշէի խօսքերով եւս կ'ուզէ ասոր հակառակն հաստատել, իբր թէ եպիսկոպոսներէն «իրեն ուղղուած հարցից խուսափեց» Վարդան։ Կ'երեւի թէ նա Եղիշէի նորագիւտ օրինակ մի ունի. վասն զի մեր օրինակները տարբեր կը պատմեն. Անոնք կ'ըսեն՝ թէ սպարապետն եւ իւրքն երբ լսեցին նոցա բերած լուրը, «ամենեքեան ի նախանձ բարկութեան բրդեցան», առին աւետարանի եւ եպիսկոպոսաց օրհնութիւնը, «ընթացան վաղվաղակի ի զէնս իւրեանց, ... եւ ընդ ծագել արեգական զզօրսն յերիս մասունս բաժանեալ՝ ի բանակն (մարզպանին) արկանէին», եւ այլն (111–2). միով բանիւ՝ ի նմին ժամանակի ապստամբութեան դրօշը պարզեցին առաջնորդութեամբ Վարդանայ։

Տէրպօղոսեանի գրիչն աննկարագրելի շփոթութեան մէջ կը գտնուի ժամանակաց ընկատմամբ։ Կ'ընդունի նա հայոց ապստամբութիւն մի, բայց չգիտէ թէ երբ դնէ։ Նախորդ գլխոյն մէջ «450 թուի ամառն» էր. հոս եւս տեղ մի կը յիշէ «450 թուի ապստամբութիւնը». իսկ այլուր (սոյն գլխոյս մէջ) կ'ըսէ, թէ Վարդան «խաղաղութեամբ անցրեց 450 թիւը, որի վերջին ա-

միսներում նկատ Ծաղկոտն գաւառի լեռնոտ մասերը՝ իբրեւ ամարանոց». Նորա համբերատար «դրութիւնը տեւեց 450 թուի աշնան, ձմրան եւ գարնան (451ի) ընթացքում». եւ վերջապէս՝ Տիզբոնէ դարձէն մինչեւ 451ի պատերազմը «տասնեւութ ամսուայ ընթացքում» Վարդան «խափանել է ապըստամբութիւնը». ուրեմն խլրտման առաջին ցոյցը Տաւարշանի մէջ տեղի ունեցաւ: Իւր զգացմանց հետ կը փոփոխին թուականք ամէն էջի մէջ. մինչեւ անգամ չի խորհիր՝ թէ տարւոյն «վերջին ամիսներում» ոչ թէ «յամարանոց», այլ ի ձմերոց կ'երթան մարդիկ: Արդարեւ Ղազար եւս կը գրէ՝ թէ «ի տեղիս հովոց գային» ի Ծաղկոտն. բայց այտի կը հետեւի, եւ ինքն իսկ կ'իմացնէ՝ թէ «աւուրք տօթոյ» էին (174), ուրեմն տարւոյն մէջ եւ ոչ վերջին ամիսներում: Փարպեցին յետ այս տեղեկութեան՝ կը պատմէ մոգաց ընթացքը, հայոց ապստամբութիւնը, մոգաց կոտորածը, եւ կը յաւելու՝ թէ Վարդանանք «դադարեցին անդէն զաւուրս տօթոյն» (182). այս նոյն է նախայիշեալ 450ի «տօթոյ աւուրց» հետ, — զի նոքա 451ի ջերմ օրերուն չհասան, նահատակուելով ի մայիսի 26. — ուրեմն ապստամբութիւնն այլ իւր հանգամանօք 450ի տօթոյ օրերէն յառաջ, այս ինքն գարնան պատահեցաւ, եւ Փարպեցին մոռանալով պատմել զայն նախ քան «ի տեղիս հովոց» երթալը, կը դառնայ յիշատակել, եւ դարձեալ

կը կրկնէ «զաւուրս տօթոյն», որպէս զի խլրտման քան զայնս յառաջ պատահելն իմացուի։

Տէրպօղոսեան նոյն Ղազարայ քով՝ Վարդանայ ապստամբութեան բազմաթիւ փաստերէն շատը կ՚անտեսէ, եւ տեսածները մերթ կ՚ընդունի, մերթ կը մերժէ եւ մերթ կը լռէ ըստ հաճոյս, ինչպէս ըրաւ եւ Վասակայ նկատմամբ։ Որպէս զի հաստատէ՝ թէ «սպարապետը մասնակցութիւն ցոյց չտուեց գործին», կը մոռանայ՝ թէ նա էր զմարզպանն ի նոյն ստիպողաց գլխաւորը. թէ նա էր՝ որ 450ի աշնան գնաց Կուրի մօտ՝ իր սուսերին բերանով անոյշ ապտակ մի տուաւ պարսից զօրավարին, եւ այլն։ Եւ զնա սինեցւոյն հետ «համերաշխ» ցուցնելու համար, կը մոռանայ նոյն դիպուածի մէջ ուրացողին գրելն առ Սեբուխտ եւ քաջալերելն զնա իւր «հարկաւոր գործչին» դէմ. եւ յետ նորա յաղթական դարձին՝ տեսնելով նորա անդադար զօրացնելը զապստամբութիւնը, գրելն առ հայս՝ թէ «ի բաց դառնայք ի խրատուէ եւ ի բանից Վարդանայ», եւ որ ի կարգին։ Ապստամբ մի քան զայս ի՞նչ կարող էր գործել. եւ Ղազար զայդ հաստատելու համար ի՞նչ աւելի բան կրնար ըսել։ Քննադատն ի սկզբան կ՚ըսէ՝ թէ նա զՎարդան կը ներկայացնէ «իւր ամբողջ գործունէութեամբ» հակառակ Եղիշէի. եւ յետոյ զայդ ցոյց տալու համար՝ յանուն նոյն պատմչին կը ջանայ հանդիսացնել զնա իւր ամբողջ անգործ-

ծուռնկռութեամբ. եւ այս է եղեր «պատմական իրողութիւնների բնակա՞ն հիւսուածքը» ։ Անբնականն արդեօք ի՞նչպէս պիտի լինէր ։

Ե. Քննադատն Եղիշէի մէջ կը գտնէ ուրիշ պարսաւելի կէտ մի. այն է, եպիսկոպոսները դրուատելու միտմամբ՝ ամէն բանի մէջ նոցա հպատակ ցոյց կու տայ զՎարդան. նա «մի միայն տէր էր մի սրտի, որի կառավարիչը կղերն էր». մինչ Փարպեցին ազատ եւ անկախ գործունէութեան մէջ կը հանդիսացնէ զնա ։ Եղիշէի այդ թերութեան իբրեւ փաստ, «450 թուի ապստամբութիւնը՝ եպիսկոպոսների պահանջով եղաւ», կ'ըսէ, եւ «աղուանից օգնութեան գնալը՝ եպիսկոպոսները կորգադրեցին» ։

Պատմչին առաջին տեղեկութիւնն եթէ նորա կողմնասիրութեան արդիւնք է, ուրեմն սխալ է ։ Բայց ահա քննադատն յօդուածին երրորդ էջին վերայ կը հաստատէ նոյնը, թէ «սպարապետ եւ մարզպան կատարեցին եպիսկոպոսների եւ Վասակի թշնամիների պահանջը» ։ Մենք տեսանք ըստ պատմչաց՝ թէ հարկն ստիպեց ապստամբութիւնը. ուրեմն սխալ է կարծելը՝ թէ սպարապետն ըստ Եղիշէի եպիսկոպոսաց հպատակելու համար շարժեցաւ ի նոյն ։

Իսկ աղուանից խնդրոյն նկատմամբ Եղիշէն կը գրէ նախարարաց համար՝ թէ նախ «անձանց առաքինութեամբ, եւ (ապա) սուրբ վարդապետաց մխիթարութեամբ» ժողովեցան (126), զօրքը յերիս բաժանեցին, եւ

մի գունդը Վարդանայ տուին՝ որ Սեբուխտի դէմ երթայ. ուրեմն ամէն ինչ նախարարք կարգադրեցին. եւ չգիտենք, Եղիշէի ո՞ր անկեան մէջ գրուած է՝ թէ «եպիսկոպոսները կարգադրեցին»։ Հոս սոցա բոլոր գործածը «մխիթարել» կամ քաջալերելն է. եւ ի՞նչ անյարմարութիւն կայ այդպիսի մասնակցութեան մի մէջ՝ այն եկեղեցականաց, որք իրենք պատասխանեցին պարսից առ Հայս գրուած թղթոյն, որք ժողովրդեան առաջ անցած՝ հալածեցին մոգերը՝ երբ մեր աշխարհը կը մտնէին, որք հայոց բանակին հետ գնացին յԱւարայր՝ խրախուսելու զզօրականը, որոց մին պատերազմի դաշտին վերայ յատուկ ճառով մի յորդորեց զանոնք ի մահ, եւ որք՝ միով բանիւ՝ ամէն գլխաւոր գործոց մէջ նախարարաց մասնակից եւ երբեմն առաջնորդ գտուեցան։ Նոյն իսկ ըստ Ղազարայ՝ Ղեւոնդ եւ իւր պաշտօնակիցք չէի՞ն, որ գլուխ անցած երեք իշխանաց, գնացին դարձնել զՎարդան՝ մինչ կը փախչէր յօտարութիւն. որ եւ լսելով՝ թէ «սուրբ եւ երկնաւոր հրաւիրակի դաւետարանի» չեմ հակառակիր, դարձաւ յետս (165–71)։ Սոյն պատմիչս է՝ որ տեղ մի Նորա բերանը կը դնէ այս խօսքը. «Բանք սոցա (քահանայից) զամենայն առողջ խորհուրդս լսողացն ի յերկինս հայեցուցանէ» (208)։ Սորա եւ ոչ Եղիշէի քով պէտք է տեսնել ձկտումն՝ տալու մամիկոնեանին սիրտ մի, «որի կառավարիչը կղերն էր»։ Բայց եւ չափով մի ստոյգ է

այդ, ինչպէս յայտնի է յիշեալ օրինակներէն։

Տէրպօղոսեան ուզելով բաժնել սպարապետին գործունէութիւնը եկեղեցականաց ազդեցութենէն եւ ընծայել նորա «անձնական դիրքի եւ սպարապետական իրաւունքների», նորա պատուոյն այդ նախանձաւոր քննադատն յանկարծ կը շինէ զնա «Վասակի ձեռին հարկաւոր գործիչ» մի։ Դարձեալ կ՛ընդունի՝ թէ մարզպանն եւ եպիսկոպոսք միմեանց բոլորովին հակառակ ուղղութեան կը հետեւէին. եւ ի նմին ժամանակի կ՛ըսէ, թէ «ըստ Ղազարի՝ Վարդան արդարեւ լսել է եպիսկոպոսների խորհուրդներին, սակայն Վասակին եւս չի մերժել». թէ ինչպէս կըրնար նա միանգամայն հետեւել երկու հակառակ խորհրդոց, մենք զայդ չենք գիտեր. գաղտնիք է՝ ըսողին միայն ծանօթ։

Դարձեալ՝ քննադատը կը տեսնէ Եղիշէի մէջ, թէ Վարդան ունէր մի սիրտ, «որը ամբողջապէս բովանդակուած էր կրօնական եւ եկեղեցական զգացմունքներով. բաց ի այդ զգացմունքները՝ նա չէր դաւանում ոչ մի ուրիշ ծրագիր, ոչ մի քաղաքականութիւն»։ Այս տեղ երկու մասունք կան. «կրօնական զգացումներ» եւ «ուրիշ ծրագիր եւ քաղաքականութիւն»։ Թէ Վարդանայ սիրտը լի՞ էր առաջնովքն՝ եթէ ոչ, այդ մասին Տէրպօղոսեանի դատաստանին չենք կարօտիր։ Իսկ թէ բաց այտի ուրիշ ծրագիր չունէր, այդ կարծիքն այլ Ղազարայ քով կը գըտ-

նենք՝ էւ ոչ Եղիշէի. ըստ առաջնոյն՝ նա «չխորհէր զյաղթութեան ինչ անուն գտանել, այլ զհեղումն արեան անձին ի վերայ չինութեան ուխտի եկեղեցւոյ» (172). Նոյն իմաստը շատ անգամ ընդհանուր ուխտապահից համար եւս կը կրկնուի (197, 203). չյաղթել, այլ միայն մեռնել կրօնից համար, այս է Փարպեցւոյն սպարապետին ընծայած ծրագիրը։ Բայց եթէ այդ ուղիղ լինէր, Վարդան փոխանակ պատերազմելու՝ կ'երթա՛ր իւր սուրը թշնամւոյն ձեռքը կը յանձնէր եւ կը հասնէր իւր նպատակին։ Ապա ուրեմն ա՛յլ ծրագիր եւ ա՛յլ քաղաքականութիւն ունէր նա, զոր կը տեսնենք Եղիշէի քով. հոն կը խօսի նա իւր նիզակակցաց եւ կ՚ըսէ. «Եթէ տացէ տէր յաղթութիւն ի ձեռս մեր, սատակեսցուք զզօրութիւն նոցա (պարսից)... եւ եթէ հասեալ իցէ ժամանակ կենաց մերոց սուրբ մահուամբ պատերազմիս, ընկալցուք խնդութեամբ սրտիւ» (176). իւր միակ նպատակն էր յաղթել, եւ եթէ զայդ չեն սահմանած երկինք, մեռնել հաճութեամբ. այս է զօրավարի մի վայել քաղաքականութիւնը, զոր կը ներկայացնէ մեզ Եղիշէ։ Եւ զուր է քննադատին ըսածը՝ թէ «Վարդան յոյս եւ հաւատ չունէր պարսից յաղթելու». եւ ասատի գուշակել՝ թէ «ապստամբելու մէջ ոչ մի շահ եւ բարելաւութիւն իր ժողովրդի համար չէ տեսել՝ հակառակ եպիսկոպոսների սեւեռեալ ցանկութեան»։ Սպարապետին խօսքերը եւ գործը կը հաստատեն՝ թէ յի-

րաւի ունէր նա յաղթութեան ակնկալութիւն. (տես եւ յէջ 177–8, 81). եւ այդ յուսով ձեռնարկեց ապստամբութեան եւ պատերազմին՝ ի փրկութիւն եկեղեցւոյ եւ իւր ժողովրդեան։

---

Մեր ընդհանուր տեսութիւնն երկու պատմչաց վերայ՝ այս է։ Ինչպէս այլք եւս խորհրդածած են, Ղազարայ ոճն աւելի պատմական է քան Եղիշէին։ Առաջինն ուշադիր է մանրամասնութեանց, փոյթ տանելով նա եւ երկրորդական անձանց եւ տեղեաց յիշատակութեան, (գլխաւորապէս Վահանայ շրջանի վերայ գրելու ժամանակ), զորս երկրորդը զանց կ՚ընէ երբեմն, միտ դնելով պատմութեան ամբողջութեան. որով կիսկատար կը թողու իւր քանի մի կէտերը։ Սակայն Փարպեցին ունի եւ այս ակներեւ թերութիւնը՝ խօսակցութիւնքը եւ այլ անկարեւոր մասունքը չափազանց ճապաղելու, եւ նոյն խօսքերը շատ անգամ կրկնելու, որով շատ կէտերու մէջ ձանձրանալի կը դառնայ ընթերցողաց. իսկ Եղիշէի լեզուն այնպէս անփոփ, աշխոյժ եւ բազմակերպ է, որ վիպասէր մ՚իսկ կը կարդայ զայն մեծ ախորժանօք։

Ոճոյ այդ զանազանութիւնն արդիւնք է երկու պատմչաց արտաքին եւ անձնական հանգամանաց տարբերութեան։ Ղազար Վարդանանց պատերազմի ժամանակ դեռ տղայ լինելով՝ կ՚ուսանէր վրաց բդեշխի տան մէջ

(Թուղթ, 572), եւ յետոյ կը հեռանայ «ի հոռոմս» (570). որով գործածեր է լեզու մի՝ որ յատուկ է անժամանակակից պատմչաց։ Իսկ Եղիշէ ականատես հայրենեաց տխուր արկածից, բնականապէս չէր կրնար գրել առանց յուզուելու եւ յուզելու։ Դարձեալ, Ղազար ըստ իւր բնական ախորժակաց՝ ճարտասանական գոյն մի տուած է իւր պատմութեան, եւ Եղիշէ բանաստեղծական՝ ըստ իւր ախորժակաց. ճարտասանին յատուկ է՝ աննշան կէտերու վերայ եւս յապաղել. իսկ բանաստեղծին՝ թռչելով անցնել, աչերը սեւեռելով լոկ ամբողջութեան վերայ։

Բայց Եղիշէի քով դիտելու արժանի կէտ մ'է այս, որ նորա մտաց աչխոյժն այնպէս զսպուած է հոն՝ որ բնաւ թոյլ չի տար անոր զեղծանիլ եւ շեղիլ պատմական ստուգութենէ եւ չափաւորութենէ։ Իւր պատմութեան գերագոյն դիւցազն* անգամ իւր գերագոյն հանդիսի՝ աւարայրեան կրակոտ տեսարանի մէջ, որ ուրիշ բանաստեղծ գրիչներէ դուրս թռուցեր է Նորաճռաշներ, Աւարայրի պլպուլներ եւ այլն, այնչափ ագահութեամբ վարձատրուեր է յԵղիշէայ, որ բաւական համարուեր են երկու սեղմ տողեր՝ սոսկ յիշելու համար նորա ցրուելը պարսից աջ թեւը եւ կոտրելով տանել փղակուտին վերայ թափելը, ապա եւ մատեան գունդը պառակտել եւ խուճապեցնելը։

* Եղիշէի գրոց վերնագիրն է ըստ գրչ. եւ տպ. օրինակաց՝ «Վասն Վարդանայ եւ հայոց պատերազմին»։

րաւի ունէր նա յաղթութեան ակնկալութիւն. (տես եւ յէջ 177–8, 81). եւ այդ յուսով ձեռնարկեց ապստամբութեան եւ պատերազմին՝ ի փրկութիւն եկեղեցւոյ եւ իւր ժողովրդեան։

---

Մեր ընդհանուր տեսութիւնն երկու պատմչաց վերայ՝ այս է։ Ինչպէս այլք եւս խորհրդածած են, Ղազարայ ոճն աւելի պատմական է քան Եղիշէին։ Առաջինն ուշադիր է մանրամասնութեանց, փոյթ տանելով նա եւ երկրորդական անձանց եւ տեղեաց յիշատակութեան, (գլխաւորապէս Վահանայ շրջանի վերայ գրելու ժամանակ), զորս երկրորդը զանց կ՚ընէ երբեմն, միտ դնելով պատմութեան ամբողջութեան. որով կիսկատար կը թողու իւր քանի մի կտորը։ Սակայն փարպեցին ունի եւ այս ակներեւ թերութիւնը՝ խոստակցութիւնքը եւ այլ անկարեւոր միտքը չափազանց ճապաղելու, եւ նոյն խօսքերը շատ անգամ կրկնելու, որով շատ կտորու մէջ ձանձրանալի կը դառնայ ընթերցողաց. իսկ Եղիշէի լեզուն այնպէս անփոփ, աշխոյժ եւ բազմակերպ է, որ վիպասէր մ՚իսկ կը կարդայ զայն մեծ ախորժանօք։

Ուրոյ այդ զանազանութիւնն արդիւնք է երկու պատմչաց արտաքին եւ անձնական հանգամանաց տարբերութեան։ Ղազար Վարդանանց պատերազմի ժամանակ դեռ տղայ լինելով՝ կ՚ուսանէր վրաց րդեշխի տան մէջ

(Թուղթ, 572), եւ յետոյ կը հեռանայ «ի հոռոմս» (570)․ որով գործածեր է լեզու մի՝ որ յատուկ է անժամանակակից պատմչաց։ Իսկ Եղիշէ ականատես հայրենեաց տխուր արկածից, բնականապէս չէր կրնար գրել առանց յուզուելու եւ յուզելու ։ Դարձեալ, Ղազար ըստ իւր բնական ախորժակաց՝ ճարտասանական գոյն մի տուած է իւր պատմութեան, եւ Եղիշէ բանաստեղծական՝ ըստ իւր ախորժակաց․ ճարտասանին յատուկ է՝ աննշան կէտերու վերայ եւս յապաղել․ իսկ բանաստեղծին՝ թռչելով անցնել, աչերը սեւեռելով լոկ ամբողջութեան վերայ։

Բայց Եղիշէի քով դիտելու արժանի կէտ մ'է այս, որ Նորա մտաց աշխոյժն այնպէս զսպուած է հոն՝ որ բնաւ թոյլ չի տար անոր զեղծանիլ եւ շեղիլ պատմական ստուգութենէ եւ չափաւորութենէ ։ Իւր պատմութեան գերագոյն դիւցազն* անգամ իւր գերագոյն հանդիսի՝ աւարայրեան կրակոտ տեսարանի մէջ, որ ուրիշ բանաստեղծ գրիչներէ դուրս թռուցեր է Նորահրաշներ, Աւարայրի պլպուլներ եւ այլն, այնչափ ագահութեամբ վարձատրուեր է յԵղիշեայ, որ բաւական համարուեր են երկու սեղմ տողեր՝ սոսկ յիշելու համար Նորա ցրուելը պարսից աջ թեւը եւ կոտրելով տանել փղակուտին վերայ թափելը, ապա եւ մատեան դունդը պառակտել եւ խուճապեցնելը։

* Եղիշէի գրոց վերնագիրն է ըստ գրչ. եւ տպ. օրինակաց՝ «Վասն Վարդանայ եւ հայոց պատերազմին»։

րաւի ունէր նա յաղթութեան ակնկալութիւն. (տես եւ յէջ 177–8, 81). եւ այդ յուսով ձեռնարկեց ապստամբութեան եւ պատերազմին՝ ի փրկութիւն եկեղեցւոյ եւ իւր ժողովրդեան։

---

Մեր ընդհանուր տեսութիւնն երկու պատմըչաց վերայ՝ այս է։ Ինչպէս այլք եւս խորհըրդածած են, Ղազարայ ոճն աւելի պատմական է քան Եղիշէին։ Առաջինն ուշադիր է մանրամասնութեանց, փոյթ տանելով նա եւ երկրորդական անձանց եւ տեղեաց յիշատակութեան, (գլխաւորապէս Վահանայ շրջանի վերայ գրելու ժամանակ), զորս երկրորդը զանց կ'ընէ երբեմն, միտ դնելով պատմութեան ամբողջութեան. որով կիսկատար կը թողու իւր քանի մի կէտերը։ Սակայն Փարպեցին ունի եւ այս ակներեւ թերութիւնը՝ խոսակցութիւնքը եւ այլ անկարեւոր մասունքը չափազանց ճապաղելու, եւ նոյն խօսքերը շատ անգամ կրկնելու, որով շատ կէտերու մէջ ձանձրանալի կը դառնայ ընթերցողաց. իսկ Եղիշէի լեզուն այնպէս անփոփ, աշխոյժ եւ բազմակերպ է, որ վիպասէր մ'իսկ կը կարդայ զայն մեծ ախորժանօք։

Ոճոյ այդ զանազանութիւնն արդիւնք է երկու պատմչաց արտաքին եւ անձնական հանգամանաց տարբերութեան։ Ղազար Վարդանանց պատերազմի ժամանակ դեռ տղայ լինելով՝ կ'ուսանէր վրաց բդեշխի տան մէջ

(*Թուղթ*, 572), *եւ յետոյ կը հեռանայ «ի հոռոմս»* (570). *որով գործածեր է լեզու մի՝ որ յատուկ է անժամանակակից պատմչաց։ Իսկ Եղիշէ ականատես հայրենեաց տխուր արկածից, բնականապէս չէր կրնար գրել առանց յուզուելու եւ յուզելու։ Դարձեալ, Ղազար ըստ իւր բնական ախորժակաց՝ ճարտասանական գոյն մի տուած է իւր պատմութեան, եւ Եղիշէ բանաստեղծական՝ ըստ իւր ախորժակաց. ճարտասանին յատուկ է՝ աննշան կէտերու վերայ եւս յապաղել. իսկ բանաստեղծին՝ թռչելով անցնել, աչերը սեւեռելով լոկ ամբողջութեան վերայ։*

*Բայց Եղիշէի քով դիտելու արժանի կէտ մ'է այս, որ Նորա մտաց աչխոյժն այնպէս զսպուած է հոն՝ որ բնաւ թոյլ չի տար անոր զեղծանիլ եւ չեղիլ պատմական ստուգութենէ եւ չափաւորութենէ։ Իւր պատմութեան գերագոյն դիւցազն* անգամ իւր գերագոյն հանդիսի՝ աւարայրեան կրակոտ տեսարանի մէջ, որ ուրիշ բանաստեղծ գրիչներէ դուրս թռուցեր է* Նորահրաշներ, Աւարայրի պլպջուլներ *եւ այլն, այնչափ ագահութեամբ վարձատրուեր է յԵղիշեայ, որ բաւական համարուեր են երկու սեղմ տողեր՝ սոսկ յիշելու համար Նորա ցրուելը պարսից աջ թեւը եւ կոտրելով տանել փղակուտին վերայ թափելը, ապա եւ մատեան դունդը պառակտել եւ խուճապեցնելը։*

* Եղիշէի գրոց վերնագիրն է ըստ գրչ. եւ տպ. օրինակաց՝ «Վասն Վարդանայ եւ հայոց պատերազմին»։

Եւ նորա անմահ մահն այս ամփոփ չակերտից մէջ է փակուեր. «Իսկ կորովին Վարդան իւրովք քաջ նիզակակցօքն ոչ սակաւ նախճիրս ի տեղւոջն գործեաց, յորում տեղւոջ եւ ինքն իսկ արժանի եղեւ առնուլ զկատարեալ նահատակութեանն պսակ»։ Եղիշէ չէ խնայեր իւր խանդն այնպիսի կետերու մէջ, որք պատմութեան ստուգութեան չէին վնասեր*. եւ զգուշացեր է ճակատամարտին մէջ եւ այլ կարեւոր տեղեր, յորս կարող էր բազմաթիւ հաւանական հանգամանքներ մտածել եւ արձանագրել։ Եթէ չլինէին ուրիշ փաստեր, այս միայնակ բաւական էր ցոյց տալու նորա հաւատարմութիւնը, եւ գերադասելու իւր պատմածները քան Ղազարայ աւանդական տարաձայնութիւնքը։

Իսկ Տէրպօղոսեանի քննադատութեան վերայ՝ մեր ընդհանուր տեսութիւնն այս է։ Սկիզբէն մինչեւ վերջ իրեն առաջնորդ եղած է թթու հակակրութիւն մի «կղերի» եւ կրօնասիրաց դէմ։ Հինգերորդ դարն յեղաշրջող մեր հարքն իրեն համար մերթ ստրուկներ կը լինին նախարարաց կամաց, եւ մերթ հզօր խռովասէրք, եւ այդ ոգւով կը յորդորեն զազգը դիմադրելու Յազկերտի կամաց եւ հրամանաց, փոխանակ հնազանդութեան։ Վասակ՝ խոհական, բարի եւ հայրենասէր մարդ էր, եւ յանիրաւի կ՚ատէին զնա կղերականք։ Ղեւոնդեանք իբրեւ եկեղեցականք՝

* Տես յէջ 15, 73, 205, 9–20, 45–7, 354–61։

անարժան էին այնպիսի արիական մահու. ուստի եւ իրենց վկայաբանութիւնն «իբրեւ պատմական իրողութիւն կասկածելի է». անշուշտ մեռած են, բայց ուրիշ հանգամանօք: Եղիշէ որովհետեւ եկեղեցական է, որովհետեւ իւր դարու անցքերը քննադատին յօժարութեանց համեմատ չէ պատմած, ուստի ծայրայեղ «մոլեռանդ» է: Ղազար՝ որ իւր միակ «ստուգագիր» պատմիչն էր, նա եւս ի վերջոյ կը դառնայ «միակողմանի կուսակցական պատմիչ», զի «եկեղեցական անձն է եւ Վասակին չի համակրում». եւ կը դատապարտէ ղպարսս:

Այդ ոգին է՝ որ կ՚իշխէ Նորա այս տարբէ գրածին մէջ, կատարել տալով իրեն այնչափ անճիշդ դատաստաններ եւ ստեղծել այնչափ հակասութիւններ:



Եւ նորա անմահ մահն այս ամփոփ չակերտից մէջ է փակուեր. «Իսկ կորովին Վարդան բերովք քաջ նիզակակցօքն ոչ սակաւ նախճիրս ի տեղւոջն գործեաց, յորում տեղւոջ եւ ինքն իսկ արժանի եղեւ առնուլ զկատարեալ նահատակութեանն պսակ»: Եղիշէ չէ խնայեր իւր խանդն այնպիսի կէտերու մէջ, որք պատմութեան ստուգութեան չէին վնասեր*. եւ զգուշացեր է ճակատամարտին մէջ եւ այլ կարեւոր տեղեր, յորս կարող էր բազմաթիւ հաւանական հանգամանքներ մտածել եւ արձանագրել: Եթէ չլինէին ուրիշ փաստեր, այս միայնակ բաւական էր ցոյց տալու նորա հաւատարմութիւնը, եւ գերադասելու իւր պատմածները քան Ղազարայ աւանդական տարաձայնութիւնքը:

Իսկ Տէրպօղոսեանի քննադատութեան վերայ՝ մեր ընդհանուր տեսութիւնն այս է: Սկիզբէն մինչեւ վերջ իրեն առաջնորդ եղած է թթու հակակրութիւն մի «կղերի» եւ կրօնասիրաց դէմ: Հինգերորդ դարն յեղաշրջող մեր հարքն իրեն համար մերթ ստրուկներ կը լինին նախարարաց կամաց, եւ մերթ հզօր խռովասէրք, եւ այդ օգնով կը յորդորեն զազգը դիմադրելու Յազկերտի կամաց եւ հրամանաց, փոխանակ հնազանդութեան: Վասակ՝ խոհական, բարի եւ հայրենասէր մարդ էր, եւ յանիրաւի կ'ատէին զնա կղերականք: Ղեւոնդեանք իբրեւ եկեղեցականք՝

* Տես յէջ 15, 73, 205, 9–20, 45–7, 354–61:

անարժան էին այնպիսի արիական մահու․ ուստի եւ իրենց վկայաբանութիւնն «իբրեւ պատմական իրողութիւն կասկածելի է»․ անշուշտ մեռած են, բայց ուրիշ հանգամանօք։ Եղիշէ որովհետեւ եկեղեցական է, որովհետեւ իւր դարու անցքերը քննադատին յօժարութեանց համեմատ չէ պատմած, ուստի ծայրայեղ «մոլեռանդ» է։ Ղազար՝ որ իւր միակ «ստուգագիր» պատմիչն էր, նա եւս ի վերջոյ կը դառնայ «միակողմանի կուսակցական պատմիչ», զի «եկեղեցական անձն է եւ Վասակին չի համակրում», եւ կը դատապարտէ զպարսս։

Այդ ոգին է՝ որ կ՚իշխէ Նորա այս տարի գրածին մէջ, կատարել տալով իրեն այնչափ անճիշդ դատաստաններ եւ ստեղծել այնչափ հակասութիւններ։



## Դ

# ԵՂԻՇԷ ՈՒՆԷ՞Ր ՕՏԱՐ ԱՂԲԻՒՐ

*Եղիշէի եւ Ղազարայ Բ դրուագի նախարարական ցանկերն. — Ակնարկ մի եւս առ Թէոդոս դեսպանաց վերայ. — Եւ առ աղուանից օգնութեան վերայ. — Եղիշէի կարծեցեալ աղբերք. — Խուժիկ եւ իւր տուած տեղեկութիւնք:*

Մեր օրերը քննադատական ապարէզն ընտրողաց համար հետեւելի նորաձեւութեանց առաջինն է՝ նախ խլել առնուլ քննելի գործն այն անձին ձեռքէն, ում կ՚ընծայուէր, եւ ապա դատափետել զայն: Այդպէս ի հրապարակ եկաւ Տէրպօղոսեան ի սկզբան՝ «Եղիշէի պատմութեան աղբիւրն» անուն յօդուածովն *:

Նա գտեր էր «հիմքեր», որոց համեմատ «սխալ է՝ Եղիշէի Վարդանանց պատմութիւնը 451 թուի պատերազմին մասնակցող անձին, Եղիշէին վերագրելը: Նրա հեղի-

* Հանդէս ամս. 1895, թիւ 1, 2, 4:

նակը ուշ ժամանակի պատմիչ է, եւ իւր ձեռին ունեցել է գրաւոր աղբիւր, որից օգտուել է *»։ Իսկ ի մեզ այդ «հիմքերն» յառաջ բերած էին այս համոզումն, թէ ինքն Եղիշէն է իւր աղբիւր՝ գէթ այն մասանց մէջ՝ որոց վերայ խնդիր կը հանէր քննադատը։ Ադոնք էին, առաջին՝ Եղիշէի եւ Ղազարայ երկրորդ դրուագի նախարարական ցանկերը. երկրորդ՝ ի Բիւզանդիոն յղուած պատգամաւորութիւնը. եւ երրորդ՝ աղուանից ուղարկուած օգնութիւնը։

Թէ արդեօք յանուն Եղիշէի մեզ հասած գործն ամբողջովին նոյն պատմչին է, կամ օտարի մի ձեռքն այլ չկա՞յ անոր մէջ, մենք հոս նպատակ չունինք ոչ հաստատելու եւ ոչ ժխտելու բացէ ի բաց. այլ այս գլխոյս եւ յաջորդին մէջ պիտի ջանանք միայն ցոյց տալ, թէ երկրորդ կէտը հաւաստելու համար ցարդ կատարուած փորձերն անզօր են։

Ա. Տէրպօղոսեանի ընդհանուր տեսութիւնն առաջին խնդրոյն մէջ այս էր, թէ յիշեալ

* Նոյնը հաստատեց եւ Հանդէսի խմբագիրը ծանօթութեամբ մի, խոստանալով ուրիշ անգամ ապացուցանել զայն։ Բայց քննադատն իւր գիւտէն այս տարի ուծացած կը թուի, (այս պատճառաւ յետաձգեցինք մենք սոր պատասխանն, իբրեւ այլ եւս երկրորդական խնդիր քննադատին համար), թէ եւ չէ բոլորովին հրաժարած. Նոր քննադատութեան մէջ դեռ կը գրէ. «Եղիշէ, ով որ էլ լինի այդ անուան տակ ծածկուած». կամ «Եղիշէի պատմութեան հեղինակը»։

նախարարական ցանկերու մէջ կան չորս հանրականք, յորս երկու պատմիչքն այլ բարձական մի եւ նոյն կարգը կը պահեն։ Ասոցմէ զատ Եղիշէն ունի ուրիշ երկու սեպհական ցանկ եւս, եւ Ղազար ուրիշ երեք, որոց իւրաքանչիւր խմբի անհատք ոչ միայն իրարու մէջ չեն միաբանիր, այլ եւ չեն համաձայնիր հանրականաց հետ։ Աստի կը հետեւեցնէր՝ թէ այդ ցանկերը զանազան աղբիւրներէ հանուած են. իբր զի չէր կարող մի եւ նոյն պատմիչն այլ եւ այլ կարգեր յօրինել. ուստի եւ Եղիշէն այլ ուշ գրուած է՝ ինչպէս Փարպեցին։

Նորա այդ հետեւութիւնը շատ խախուտ է ըստ մեզ. եւ զայս հաստատելու համար հետեւինք ցանկերուն հետազօտութեանց, պահելով նոցա թուական դասաւորութիւնն ի քննադատէն *։

Չորս հանրականքն (թ. 1, 2, 3, 4) յիրաւի ընդհանրապէս մի եւ նոյն կարգը կը պահեն նախարարաց մէջ, — միայն երրորդն զՎարդան իբր սպարապետ՝ ամենէն յառաջ յիշելով, ինչպէս կը դիտէ եւ քննադատը։ — Իսկ երրորդն եւ չորրորդ կը տարաձայնին իրարու մէջ, մին զԳնունին յետոյ դասելով քան զԴիմաքսեան՝ եւ միւսն յառաջ, ըստ

* Թիւ 1, 2, 3, 4 տես յԵղ. 70, 127, 210, 342, եւ ի Ղզ. 134, 195, 213, 255։ — Թիւ 5, 6, 7 ի Ղզ. 125, 185, 221։ — Թիւ 8, 9 յԵղ. 173, 160։

երկու պատմչաց եւս*։ Մենք փոխանակ ըսելու՝ թէ «այս անհամաձայնութիւնը պէտք է պատահական համարել, ի նկատի ունենալով չորս ցուցակի համաձայնութիւնը միւս դէպքերում», հարկ կը համարինք՝ որ երրորդը դուրս հանուի միւս ձայնակիցներէն, — եւ ոչ չորրորդը, որովհետեւ սոր կարգը կը հաստատեն հինգերորդ ցանկն եւ ս. Սահակայ գահնամակը**. — խնդիրը մի կամ շատ կետով անմիաբանութեան վերայ չէ, այլ որ եւ է տարաձայնութեան. արդէն սեպհականաց ոմանց ի հանրականաց զարտուղութիւնն այլ այդչափ է։

Գալով Եղիշէի սեպհական ցանկերուն, մին (թիւ 8) համաձայն է հանրականաց առաջնոյն հետ (թ. 1), եւ կը զանազանի երկրոր-

* Պիտի ըսէինք՝ թէ չորրորդին մէջ Ատոմ գնունի իբրեւ Նախարար՝ — եւ արդէն գահով աւելի բարձր՝ — յառաջ է դրուած քան զԴիմաքսեանս, եւ երրորդին մէջ Վահան գնունի իբրեւ «Իշխան»՝ յետոյ քան զանոնք, եթէ սա հոս յետադաս լինէր նա եւ քան զԱրշէն ընծային, որ Նախարար էր եւ ունէր բաւական նշանաւոր դիրք (Եղ. 204), եւ Վահան իբրեւ սեպուհ՝ շատ վայր էր քան զնա. ապա յայտ է, թէ զինք նախադասելու ժամանակ՝ ոչ անձին, այլ տոհմին աստիճանն է նկատուած. այդպէս եւ ի թիւ 8 Վահեւունեաց «գնդին» է պատահած։

** Տես ի Տեղգր. Այրարատայ, յէջ 430. կամ ի Սոփ. Զ, 133։ Այդ գահնամակն հաստատուած է ի Վռամայ ձեռօք (Տեղ. Այր. 417, ծան.)։

դէն՝ (Թ. 2) իւր մէջ յետադասութեամբ Վահեւունեաց քան զՊալունի. երրորդէն՝ (Թ. 3) Քաջբերունեաց քան զԳնունի. չորրորդէն՝ (Թ. 4) Արշարունեաց (նոյն է՝ Կամսարականի) քան զԱմատունի, եւ Գնունեաց քան զԴիմաքսեան* եւ Անձաւացի: Իսկ միւս սեպհականն (Թ. 9), որ երկրորդ հանրականի հետ նոյն է ըստ անձանց, որ են կուսակիցք Վասակայ, մեծապէս կը տարբերի անորմէ ըստ կարգի. նոյնպէս եւ առաջին հանրականէն եւ նախորդ սեպհականէն (Թ. 8):

Գալով եւ փարպեցւոյն սեպհականաց, երեքն այլ անմիաբան են թէ այլոց հետ եւ

* Ութերորդ ցանկի մէջ կը յիշուին երեք դիմաքսեանք, Թաթուլ, Հմայեակ եւ Գազրիկ, առաջինն ուրիշ միջանկեալ տողերով բարձրացած զատուած յայլոց: Ղազար զՀմայեակ կը կոչէ «տէրն դիմաքսեանից» (126). Թերեւս այս խօսքէն՝ Տէրպօղոսեան զսա համարելով «նախարարութեան գլուխը», Թաթլոյ կարգը կը ջնջէ ցանկէն: Բայց կը սխալի նա. ս. Սահակայ գահնամակին մէջ կան դիմաքսեան երեք գահեր. աղոնք դեռ Վարդանանց ժամանակ այլ կային. եւ Թաթուլ եւ Հմայեակ՝ Թերեւս եւ Գազրիկ՝ զանազան տանց պետեր էին, առաջինն աւելի պատուաւոր, ըստ որում ցանկերու մէջ միշտ քան զՀմայեակ յառաջ է դասուած ի պատմչաց: Այդպէս ըստ գահնամակին բաժանուած էր եւ արծրունի տոհմ. որոյ համար երեք ցուցակաց մէջ եւս (Թ. 4, 7, 9) զատուած են աստիճանաւ Ներշապուհ եւ Ապրսամ արծրունիք, երկուքն այլ լինելով «իշխան» (Փրպ. 221-2):

թէ իրարու մէջ։ Այլոց հետ. զոր օրինակ, մին (թ. 5) հանրականաց առաջնէն կը խոտորի այսու, որ իւր մէջ Վահեւունին՝ Մոկացի, Ապահունի եւ Ամատունի տոհմերէ յառաջ է անցեր, եւ Անձեւացին՝ Ապահունի եւ Ամատունի տոհմերէ. կը խոտորի երկրորդէն, զի Վահեւունին կանխեր է քան զԱպահունին. երրորդէն, զի Գնունին կանխեր է քան զՊալունի եւ Դիմաքսեան. չորրորդէն, զի Անձեւացին յառաջ է չորս տոհմերէ։ Երկրորդ սեպհականը (թ. 6) կը զարտուղի երկրորդ հանրականէն՝ նախադասութեամբ Պալունւոյ քան զՎահեւունի։ Երրորդ սեպհականն (թ. 7) առաջին եւ չորրորդ հանրականներէն՝ Անձեւացւոյ քան զԱմատունի նախադասութեամբ։ — Սեպհականքն իրարու մէջ անմիաբանք. զոր օրինակ, երկրորդը (թ. 6) նախորդէն՝ (թ. 5) Վահեւունւոյ քան զԱրշարունի, Դիմաքսեան* եւ Պալունի յե-

* Հոս եւս՝ (թ. 6) ինչպէս ութերորդի մէջ՝ (տես ի նախորդ ծան.) կը յիշուին երկու դիմաքսեանքն՝ Թաթուլ եւ Հմայեակ, զորս իրարմէ կը զատէ Պալունին։ Տէրպօղոսեան նոյն սխալ համոզմամբ կը ջնջէ Թաթլոյ կարգը, որպէս զի Դիմաքսեանն յետ Պալունւոյ ընկնելով, ցանկն այդ կէտով համաձայնի նախորդ սեպհականին հետ (թ. 5)։ Եւ բոլորովին համաձայնելու համար՝ երկրորդէն (թ. 6) կը ջնջէ եւ զՎահեւունին՝ իբրեւ սխալմամբ յիշուած հոդ. բայց մենք այս պարզ անդամահատութեամբ գոհ չենք լինիր. այս մասին պիտի խօսինք յէջ 132–3։

*տագաստութեամբ. եւ երրորդն (Թ. 7) յառաջնոյն՝ (Թ. 5) Արշարունւոյ քան զԱնձեւացի կանխելովն։ Ղազարայ սեպհականքը կը հակառակին նա եւ Եղիշէի սեպհականաց։*

*Այս համեմատութենէն կը տեսնուի, թէ ղազարեանքն այնչափ կը տարաձայնին իրարու եւ հանրականաց մէջ (տես մանաւանդ Թ. 5), որչափ եղիշեանք։ Սակայն ղազարեանց ի հանրականաց ունեցած տարաձայնութիւնքն՝ ըստ Տէրպօղոսեանի «բացառիկ դէպքեր» են։ Նոյնպէս «բացառութիւն» կը կազմեն եղեր անոնց իրարու մէջ զանազանութիւնքն, եւ «անվրճելի» կերպիւ «միաձայն» են միմեանց. եւ ադոնց «փոխադարձ համաձայնութիւնը, կ՚ըսէ, մի զօրեղ հիմք պիտի ընդունուի (Փարպեցւոյն) ճշգրտապատում պատմագրութեան, որից՝ ինչպէս տեսանք՝ Եղիշէն հեռու է»։ Թէ ինչո՞ւ այդ խտրութիւնը կը դնէ երկու պատմչաց ցանկերու մէջ, պատճառն իւր կամքն է. այդպէս կ՚ախորժի, եւ այդպէս կը դատի։ Այժմ լսենք եւ իւր հետեւութիւնքը։*

*Առաջին, «չորս ընդհանուր ցանկը եւ յատկական ցանկերը տարբեր հեղինակների գործեր են», եւ Եղիշէի խմբագրիչն եւ Ղազար մի եւ նոյն գրաւոր աղբերէ առած են հանրականքը։ Երկրորդ, «Եղիշէի յատկական ցանկերի հեղինակը Ե դարի պատմութեան անտեղեակ անձն է եւ պատմական փաստերը յեղաշրջող պատմիչ», եւ Վարդանանց պատերազմէն ուշ, ըստ որում այդ*

ցանկերն ոչ հանրականաց հետ եւ ոչ իրարու մէջ ունին աւագութեան կարգի միօրինակութիւն։ Երրորդ, «Ղազարի յատկական ցանկերի հեղինակը համեմատաբար աւելի ծանօթ է Ե դարին», եւ պատերազմին աւելի մօտ, ըստ որում երեք ցանկն այլ համաձայն են եղեր միմեանց, եւ նոցա մին (Թ. 6) նա եւ հանրականաց հետ։

Այդ հետեւութիւնք խորհրդածել կու տան մեզ։ Հանրական եւ սեպհական ցանկերուն այլ եւ այլ (երեք) աղբիւրներ դնելու պատճառն է այդ երեք խմբից մէջ եղած տարաձայնութիւնն։ Ընդունելով զայդ առ վայր մի իբրեւ բաւական փաստ, հետեւաբար սեպհականաց իրարու մէջ տարաձայնութիւնն այլ հարկ է իբրեւ նշան համարել անոնց իւրաքանչիւրին եւս զանազան աղբիւրներէ հանուած լինելուն։ Այսու Եղիշէ եւ Ղազար երեք հանրականաց համար (Թ. 1, 2, 4) ունեցած պիտի լինին մի աղբիւր, աղբիւր մ'այլ միւս հանրականի համար (Թ. 3), առաջինն ուրիշ երկու աղբիւր եւս իւր սեպհականաց համար, եւ երկրորդն ուրիշ երկու կամ երեք՝ իւր սեպհականաց համար. եւ բոլորն ի միասին եօթն աղբիւր։ Քննադատին լոկ երեք աղբիւր դնելն հակառակ է իւր հիման։ Եւ որովհետեւ սեպհականաց աղբերքն ուշ ժամանակի են ըստ իւր երկրորդ եւ երրորդ հետեւութեանց, հարկ անհրաժեշտ է անոնց եւս ուրիշ աղբիւրներ դնել, — ապա թէ ոչ, անոնց հեղինակք առանց

տեղ մի կարդալու կամ լսելու ի՞նչպէս կըրնային իմանալ՝ թէ այս ինչ նախարարք այն ինչ գործի մէջ են գտուեր, եւ այլն, — մինչեւ հասնինք Վարդանանց պատերազմն. աղբերք, որոց ոչ լիճ եւ ոչ ծով կը բաւէ։

Մեր տեսութիւնն այդ ցանկերու մասին ուրիշ է։ — Հանրականաց եւ սեպհականաց վերայ խօսինք զատ զատ։

Որովհետեւ երկու պատմչաց համաձայնութիւնը չորս հանրականաց մէջ դժուարաւ կրնայ իրարմէ անկախ յառաջ եկած լինել, հօս այն իրաւամբ՝ որով Տէրպօղոսեան երրորդ աղբիւր մի կ'ուզէ դնել անոնց, կրնանք մենք երկու պատմչաց մին միւսոյն աղբիւր համարել՝ առանց երրորդի մի։ Եւ յիրաւի, նոցա մին միւսէն առած լինելուն յայտնի փաստը կը գտնենք նոյն իսկ երրորդ հանրականի մէջ. Եղիշէի քով այդ կը զանազանէր չորրորդ հանրականէն եւ երկու սեպհականներէ՝ (թ, 5, 8) Գնունւոյ ընդ Դիմաքսենի տեղափոխութեամբ. Նոյն ցանկը մի եւ նոյն զանազանութիւնն ունի եւ Ղազարայ քով. ուրեմն մին միւսէն օրինակած է զայն։ Ցոռի շրջան կը լինէր համարելը՝ թէ մի երրորդ անձին գործ են յիշեալ երկու հանրականքն իրենց զանազանութեամբ հանդերձ, եւ Եղիշէ եւ Փարպեցի. այդ անձին առած են զայնս նոյն հանգամանօք. այդ առանց փաստի չի կրնար հաստատուիլ։

Իսկ թէ երկու պատմիչներէն ո՛վ միւսոյն աղբիւր է եղեր, զայդ նոյն իսկ քննադա-

տին ձեռնարկութեամբք ցոյց կու տանք մենք։ Նա կ'ընդունի՝ — ըստ որում չի մերժեր՝ ինչպէս կ'ընէ սեպհականաց նկատմամբ, — թէ չորս հանրական ցանկերը Վարդանանց ժամանակակցի գործեր են. եւ յօղուածին վերջը հարկ կը համարի դնել Եղիշէի «իսկական յիշատակարան» մի, որոյ վերայ յետոյ շինուեր է այժմեան գիրքը։ Այսպիսի խմբագրութիւն մի ստոյգ համարելով հանդերձ, պէտք է խորհրդածել՝ թէ նախնական «յիշատակարանը» բնականապէս առանց նախարարական անուանց չէր լինէր. ուստի եւ պատաշաճ կը թուի, զի հանրականքն՝ որ այդ յիշատակարանին ժամանակակից կը համարուին, նոյն իսկ աղոր սեպհականութիւն եղած լինին։ Եւ արդէն Տէրպօղոսեան տեղ մի իբրեւ թէ կը սկսի «ստուգել այն կարծիքը՝ թէ Եղիշէն է այն ցանկերի հեղինակը». եւ այս միշտ ստոյգ է, թէպէտ այժմեանը լինի Եղիշէի գործ, թէպէտ այլ անծանօթ գրուած մի։

Գանք սեպհականաց։ Ընդունելով իսկ ասոնց լոկ երկու աղբիւր ըստ քննադատին՝ եւ ոչ աւելի, մենք կը խորհրդածենք. եթէ ասոնց հեղինակք կրցեր են իրենց կողմանէ աւագութեան զանազան կարգեր յօրինել, հետեւաբար կարելի կը դառնայ՝ որ նոյն կարգերը կազմած լինին նոյն ինքն Եղիշէ եւ Ղազար. որով եւ քննադատին ասոր հակառակ կարծիքն ոչ մի հաստատութիւն չի ունենար։ Բայց մենք ներքին փաստ եւս ու-

նինք իւր դէմ։ Յառաջ յիշեցինք՝ թէ երկրորդ հանրական ցանկն եւ Եղիշէի երկրորդ սեպհականը (թ. 9) մի եւ նոյն անձինքը կը բովանդակեն, որ են Թեկնածուք Վասակայ. ուրեմն նոյն ցանկը կը համարուին, եւ կարգն է միայն տարբեր։ Արդ, կարգի տարբերութեան համար կարծելը՝ թէ ադոնք զանազան աղբիւրներէ հանուած են, նոյն է՝ թէ տեղ մի գրուած տեսնելով՝ զոր օրինակ «Սարգիս, Եփրեմ եւ Եսայի», եւ նոյն գրոց մէջ այլուր՝ «Եփրեմ, Սարգիս եւ Եսայի», համարինք՝ թէ այդ անուանքը երկու զանազան տեղերէ քաղած է այդ գրոց հեղինակը։ Այլ եւ չենք հասկանար, թէ նոյն նախարարքը՝ թէպէտ տարբեր կարգաւ՝ բայց մի եւ նոյն գործոց եւ պայմանի (սիւնեցւոյն կուսակցութեան) մէջ ներկայացնողն ինչպէս «Ե դարի պատմութեան անտեղեակ» եւ «պատմական փաստերը յեղաշրջող» կը լինի։ — Նմանապէս նոյն ցանկն է չորրորդ հանրականն եւ Ղազարայ երրորդ սեպհականը (թ. 7), վերջինս համառօտութիւն նախորդին։ Արդ, փոխանակ սեպհականը Փարպեցւոյն ձեռօք կազմուած համարելու հանրականէն, զայն օտար ազբերէ մի առած կարծելը՝ նոյնպէս զուրկ է հաստատութենէ։ Յիրաւի կան այդ սեպհականի մէջ երեք անձինք, որոց պէտք է ուրիշ աղբիւր մի գտնել, զի չկան հանրականին մէջ. բայց մենք պիտի տեսնենք՝ թէ այդ նոր անձինք եկամուտ են սեպհականին մէջ՝ յետ Ղազարայ։

Ուստի՝ առ հասարակ սեպհականաց փոխանակ երկու, կամ աւելի ճիշդ՝ իւրաքանչիւրին մի մի (հինգ) օտար աղբիւր գնելու, կարելի կը կարծենք մեկնել զանոնք, մասամբ՝ մի եւ նոյն հեղինակին միօրինակութիւն չպահելով, եւ մասամբ՝ գրչագրաց աղաւաղմամբ։ Փորձենք զայդ ցոյց տալ, նախ պարզելով ակնարկ մի նախարարաց նոյն ժամանակի բարձական դասաւորութեան վերայ, յորմէ կը կախուի առաջին կէտը։

Մեր իշխանաց աւագութեան կարգն ի սկզբանէ միշտ փոփոխութեան մէջ է եղեր (Խոր. Գ, ԽԳ, ԽԸ, ԾԱ, ԿԵ)։ Մեսրոպայ երէց կ'աւանդէ մեզ մեծին Ներսիսի ի ձեռն Բ Արշակայ հաստատած կարգը (Սոփ. Զ, 32), որ չի համաձայնիր ս. Սահակայ գահնամակին հետ*. բայց մեզ վերջին հաստատութիւնն է հարկաւոր։ Արդ, թէ այն մինչեւ Վարդանանց օրերն անխախտ մնաց կամ ոչ, քննելի է։ Եղիշէի խօսքը՝ թէ Յազկերտ 441ին** պատրէր «զոմանս պատուովք եւ իշխանութեամբք մեծամեծօք» (30), զոր Տէրպօղոսեան մէջ կը բերէ, յայտնի չի ցուցներ

* Այդպիսիք են նա եւ երկու նախարարական ցանկերն առ Ագաթանգեղայ (ՃԺԲ, ՃԻԶ) մեծին Տրդատայ օրերուն յատուկ, եւ վեցն առ Փ. Բուզանդացւոյ՝ (Գ, Թ, ԺԲ, ԺԴ, ԺԶ. Դ, Դ, ԺԱ) յԲ Խոսրովէ ցԱրշակ Բ. որոց ոմանք իրարու մէջ եւս կը տարաձայնեն։

** «Ի չորրորդ ամին... իւրոյ տէրութեանն» (Եղ. 30)։

բարձի փոփոխումն, այլ գուցէ այդ ժամանակ տուաւ Վասակայ մարզպանութիւն, որ անձնական պատիւ էր եւ ոչ տոհմային։ Իսկ սրուանձտեան Գարեգնի համար ըսածը, թէ աներկիւղ պատասխանին պատճառաւ արքայն «հանեալ ի բաց զտէրութիւնն ի նմանէ» (24), — զի «նախարար» էր (22), — կը նշանակէ՝ թէ տոհմի գլխաւորութենէ զրկեց զնա, եւ ոչ թէ տոհմը նուաստացոյց. այնպէս՝ որ թէպէտ նա Աւարայրի մէջ էր* (Եղ. 210, Ղզ. 213), այլ Խուրս էր նոցա տոհմին ներկայացուցիչ** (Եղ. 174)։ Կայ եւ այս, որ նախարարք 449ին դեռ ի Տիզբոն չգնացած, պարսիկք երեք դաշնակից

* Յազկերտի համարձակ պատասխանող Գարեգնի ազգատոհմը չի դներ Եղիշէ. եւ կը յաւելու՝ թէ «կերկեամ մի տուաւ ի չարչարանս, եւ... ընկալաւ զվճիռ մահու» (24)։ Հ. Չամչեան ի Պատմ. հայոց (հտ. Բ, 19, 460) նոյն կը համարի զնա ի Շաւարշան ընկած համանուն սրուանձտեանի հետ, ըստ որում Եղիշէ կը կոչէ զվերջինն «յառաջադէմ». իբր թէ յառաջ քան զայլ նահատակակիցս արդէն չարչարուած ի Տիզբոն։ Մենք եւս համամիտ ենք այդ միկնութեան. հաւանական է՝ որ դեռ չմեռած ազատեցաւ ի բանտէ կեղծ ուրացութեամբ նախարարաց, որք գնացին ի Պարսկաստան՝ հոն գտուողները «փրկել ի մեծամեծ հարուածոցն» (Եղ. 72). բայց նա առաջին պատուէն զուրկ մնաց։

** Այդ վերջին կէտն ընդ երկբայութեամբ է Խուրսի անուան եւ տոհմի հետ, ինչպէս պիտի տեսնենք գրոց հետեւեալ 127 էջի մէջ։

ազգաց (հյ. վր. եւ աղ.) հոն գտուող իշխանազուններէն «զոմանս... քարշեցին յազնուական պատուոյն անարգեալ» (Եղ. 36). եւ իբր նախարարք եւս գնացին եւ մերժեցին Յազկերտի առաջարկը, նա հրամայեց՝ զանոնք այլ «հանել մեծաւ անարգանօք յերեսաց իւրոց» (80). սակայն յետ կեղծ ուրացութեան «վերստին ամենեցուն զպատիւս եւ զպահս նորոգէր» (84)։ Այսպէս այդ վկայութիւնք դեռ չեն ցուցներ սահակեան գահնամակին փոփոխութիւն. ուստի երկու պատմըչաց ցանկերու մէջ փնտռենք։

Եղիշէի եւ Ղազարայ համաձայնութիւնը չորս հանրականաց մէջ՝ նշան է, թէ անոնք ժամանակաւ խանգարումն չեն կրած. եւ ահա այդ բոլոր ցանկերն — ինչպէս եւ սեպհականք — անհամաձայն են գահնամակին։ Եթէ չորսը կազմուած համարինք նոյն ժամանակի աւագութեան կարգին համեմատ, պէտք է ըսել՝ թէ գահնամակի կարգն արդէն փոխուած էր։ Սակայն տեսանք՝ որ երրորդն հակառակ է չորրորդին մի կէտով, եւ երկուքն այլ միւս հանրականաց հետ գործ են մի եւ նոյն գրչի, Եղիշեայ։ Ապա յայտնի է՝ թէ անոնց հեղինակն ամէն նախարարութեանց աւագութեան ճիշդ կարգին չէ հետեւած, ուստի եւ չէ ջանացած եւ չէր իսկ կրնար մի եւ նոյն ազատ դասաւորութիւնը պահել բոլոր ցանկերու մէջ, թէ հանրականաց եւ թէ սեպհականաց, բայց եթէ երկուց կամ երից մէջ, ինչպէս են երեք հանրականք,

եւ այն՝ դիպուածով իմն։ — Տէրպօղոսեան ինքնին կը խոստովանի՝ որ «մենք որոշակի չենք կարող ասել, թէ Եղիշէի ցուցակները անպատճառ 440–453 թիւը կատարուած փոփոխութիւններն են ներկայացնում». եւ ահա իբրեւ թէ հանրականաց կարգն օրինական լինէր եւ յատուկ նոյն դարուն, Եղիշէի սեպհականքն անոնց հակառակելուն համար վճռեց՝ թէ ատոնց հեղինակը զատ, հեռի ի Վարդանանց, եւ «Է դարի պատմութեան անտեղեա՞կ» պատմիչ է։ Թէ որչափ զօրութիւն ունի այդ վճիռ, ինքնին յայտնի է։ Այս՝ նկատմամբ Եղիշէի սեպհականաց։

Գալով ղազարեանց, անոնք եւս չունին գահնամակի կարգը։ Իսկ թէ արդեօք Փարպեցւոյ պատմագրութեան ժամանակ կա՞ր բարձական նոր կարգ, եւ իւր սեպհականքն ըստ ա՞նմ են յօրինուած, այդ եւս չի հաստատուիր։ Արդարեւ նոյն պատմչի քով կը կարդանք, թէ անարգ մարդիկ Պերոզէն «զտանուտէրութիւնն գնեալ ուրացութեամբ, … որոց ոմանք ի լեռնախոյզ աւազակաց» (335), եւ Վահան մամիկոնեան կ՚ըսէր առ Միհրան՝ թէ «գյետինսն առ լաւս ունիք եւ զլաւսն յետս տանիք» (423, 417, 9), սակայն Վահանայ նուաճման ժամանակ Վաղարշ ուխտապահից գահերը նորոգեց վերըստին* (536–8). եւ Ղազար իթէ ուզէր իւր

* Արդէն Պերոզի անկարգ գահափոխութեանց չէր լսած մեր ազգն, որ կը չարժէր միշտ ուխտապահից

ցանկերն ըստ բարձական կարգի կազմել, այդ վերահաստատ կարգին համեմատ պիտի յօրինէր։ Այդ կարգի վրայ եթէ այլ կետով չենք կարող հաստատուն բան մի ըսել, գէթ այս յայտնի է թէ Վաղարշ արծրունեաց տոհմի Նորոգումն առ ի կախ Թողուց «վայր մի, զի գիտասցեն մարդիկն՝ որ ի տոհմէն են, սպաս ինչ արժանաւորապէս ցուցանել առ մեզ,... հայեսցուք ապա եւ՝ մեք յարժանն» (538). այս պայմանի կատարման համար՝ ըստ երեւութին բաւական ժամանակ կը պահանջուէր. եւ Ղազար, որ Վահանայ Նուաճմանէն ոչ շատ ուշ պատմագրեց*, իւր առաջին սեպհականի մէջ (Թ. 5) զԱրծրունին յետ Սիւնեցւոյն դասեր է ըստ գահնամակին, ուրիշ պատուաւոր տոհմերէ վեր. այսպէս եւ

ձեռօք եւ ազդեցութեամբ, ինչպէս կը պատմէ Ղազար։ Մինչեւ անգամ իրենք ուխտապահքն «անուանեցին իշխան տէրութեան սիւնեաց» զհաւատարիմն Բաբգէն (371) հակառակ ուրացող Գդիհոնի՝ «սիւնեաց տեառն», եւ կամաց արքայից արքայի՝ յորմէ ապստամբած էին։

* Ն. Բիւզանդացի Վահանայ մարզպանութիւնը կը դնէ յամին 485. եւ նկատելով Փրպ. յառաջաբանին այս խօսքը, թէ նա «բազում եւ անհամար ուղղութեանց աշխարհիս հայոց ի ժամանակս իշխանութեան իւրոյ եղեւ արարող անձամբ» (8), պատմագրութիւնը կը դնէ «գոնէ 4–5 ամօք յետոյ մարզպանութեան Վահանայ,... յամսն 490–491», (ի Լումայի, Ա տարի, Բ գիրք, 827), որ ըստ մեզ յետ երեք տարւոյ եւս բաւական է։

երրորդ սեպհականի մէջ։ Ապա յայտնի է, թէ Վարդանանց շրջանի վերայ գրելով ուզեր է նոյն ժամանակի կարգը պահել այդ կէտի մէջ, ինչպէս ուղիղ բանը կը թելադրէր։ Եւ թէպէտ իւր պատմագրութեան ժամանակ արծրունեաց գահն արդէն նորոգուած իսկ համարինք, այդ եւ բոլոր տոհմից նորոգութիւնը պիտի լինէր դարձեալ ըստ նախկին կարգին, այն է գահնամակին, քանի որ ուրիշ կարգ անյայտ է մեզ։ Ապա եւ իւր սեպհականաց ուրեք ուրեք խոտորումն գահնամակէն՝ պէտք է մեկնել մասամբ այն ազատութեամբ, որով վարեր է Եղիշէ։ Այսուհետեւ անցնինք գրչագրաց համեմատութեան։

Ստուգելու համար՝ թէ երկու պատմչաց սեպհականք բաց՝ ի հեղինակաց ազատութենէն՝ կրա՞ծ են նա եւ գրչագրական փոփոխութիւններ՝ թէ ոչ, կը պակասին մեզ նոցա գործոց հին գրչագիրք. եւ նորագոյնք ոչ մի լոյս չեն տար։ Բայց այլ եւ այլ տեղեր ունինք Եղիշէի համակոտորներ, որք իրենց անսովոր ընթերցուածովք մի եւ նոյն պաշտօնը կը մատուցանեն մեզ փոքր ի շատէ։ Այսպէս, մեր գրչագրատան մէջ կան երկու ճառընտիրք. մին (Թիւ 17) յամին ՈՀԳ (1224) գրուածը, զոր կը կոչենք Ա. եւ միւսն (Թ. 985) անթուական, բոլորագիր, զոր կ՚անուանենք Բ. նոյնպէս երկու տպագիր օրինակներ (Թ. 9 եւ 19) սրբագրած երկու պարիսեան գրչագրաց վերայ՝ թուականքը մեզ անյայտ, զորս կը կոչենք Գ եւ Դ.. ճառընտիր մ՚այլ

(Թ. 1117) բոլորագիր, անթուական՝ բայց շատ նոր եւ բազմախալ, այս եւս Ե։

Այդոնց բովանդակութիւնն այս է։ Ա ունի Եղիշէի Ե, Զ, Է եւ Ը յեղանակներն անթերի՝ ցվերջ նահատակութեան Ղեւոնդեանց. հետեւաբար իւր մէջ կան նախարարաց ութերորդ եւ երրորդ ցանկերը։ Բ ունի Զ յեղանակին մի մասն, պակաս ի սկզբան, որով ունի միայն երրորդ ցանկը։ Գ եւ Դ ունին սրբագրուած լոկ Ե, Զ եւ Ը յեղանակները, ցվերջ նահատ. Ղեւ. ուրեմն եւ նոյն երկու ցանկերը. — այս երկուց բովանդակութենէն յայտնի կը լինի՝ թէ իրենք եւս ի ճառընտրաց են սրբագրած *. — վերջապէս Ե ունի Ե եւ Զ յեղանակներն, եւ դարձեալ նոյն ցանկերը։

Արդ, կարդալով այդ ցանկերէն առաջինը (Թ. 8), կը տեսնենք՝ որ Ա, Գ եւ Դ զԱրտակ պալունի եւ զՎահան ամատունի իրարու տեղ են փոխած. նոյնպէս ըրած է Գ զԿարէն սահառունի եւ զՀմայեակ դիմաքսեան. երկու դէպքն այլ հակառակ միւս գրչագրաց եւ տպագրաց. սակայն առաջինն համաձայն գահնամակին եւ հինգերորդ ցանկին (Թ. 5), ուրեմն ուղղագոյն քան այժմեան կարգը. իսկ երկրորդ դէպքն անհամաձայն գահնամակին։ Ա բնաւ չունի զԿարէն եւ զՀմայեակ. իսկ Դ միայն զՀմայեակ

* Պարխեան գրչագրաց թուերն են 46 եւ 47, եւ նիւթը չէ յիշուած։

չունի, եւ Ե զԳազրիկ դիմաքսեան։ Ա, Գ եւ Դ զխուրս սրուանձտեաց կը կոչեն խուրով (այսպէս եւ Ե) ընձառացի կամ ընծառացի, որ ս. Ներսիսի ցուցակին մէջ առանձին տողմ է՝ Ընձառեայք, յանուն Անձիտ գաւառի (Բուզ. Ղզ.), որ եւ Հանձիթ (Խոր. աշխրհ. եւ այլն)։

Կարդալով միւս ցանկը (Թ. 3), կը տեսնենք՝ որ Ա, Բ, Գ եւ Դ զՏաճատ գնթունի եւ զՀմայեակ դիմաքսեան իրարու տեղ են դրած՝ հակառակ սովորական օրինակաց եւ գահնամակին։ Նոյն չորսը նա եւ չունին բնաւ զՆերսեհ քաջբերունի եւ նորա եօթն զինուորները։ Այդ տեղափոխութիւնն եւ պակասն Ա օրինակի 1224 թուականէն այլ յառաջ է. Ն. Շնորհալին (ԺԲ դարուն) Վարդանանց Նորահրաշ շարականի մէջ հիւսելով Եղիշէի, — որոյ վկայ են նոյն պատմչին Աւարայրի նահատակաց տուած մակդիրքը, քաջն Վարդան, զարմանալին Տաճատ եւ այլն, որ կան այդ շարականի մէջ, — զՀմայեակ յառաջ կ'երգէ քան զՏաճատ, եւ զՆերսեհ չի ճանաչեր բնաւ. որով յայտնի է՝ թէ մեր չորից նման գրչագիր մ'էր կամ էին իւրքն այլ*։ Նոյն ցանկի մէջ Ա, Գ

* Հ. Գբ. Աւետիքեան ի Բցտր. շարականաց (յէջ 600) Ներսեհի պակասը կը մեկնէ այսպէս՝ թէ գուցէ Շնորհալին չէ ուզած տուն մի յաւելուլ Նորահրաշի տասն տանց վերայ. սակայն բուն պատճառը մեր ցուցածն է։ — Բայց Ներսեհ իւր հօթամբ անտարակոյս անկելոց մէջ էր. զի Եղիշէ հոն «ինն» նախարար կը դնէ եւ նո-

**եւ Դ կը կոչեն զԱրուէն անձեւացի կամ անձաւացի, եւ Բ անձրացի (գրչագրի սխալ), փոխանակ ընծայենց*։ Թող ուրիշ երկրորդական զանազանութիւնքը**։**

ցս սեպհական «երկերիւր ութսուն եւ եւթն նահատակք» (211)· Ա, Բ եւ Դ չունին «ինն» բառը· բայց անփոփոխ ունին զինուորաց գումարը, որոյ եւ ընդհանուր Վարդանանց «հազար երեսուն եւ վեց» հաստատուն գումարին լրման համար հարկաւոր են ներսահեանք· ուրեմն սոքա սխալմամբ դուրս են ընկած։ Ջնոյնս եւ Տաճատայ եւ Համայեկայ այժմեան կարգն ունին մեր Ե օրինակը, Կոնիբերի հրատարակած մագաղաթի պատառն, որոյ մասին պիտի խօսինք հետեւեալ գլխոյն մէջ, եւ Փարպեցին։ Շնորհալին իւր Վիպասանութեան մէջ «Եղիշէի տաղին» հետ չէ յիշած զՂազար՝ իբրեւ պատմիչ Վարդանանց. որ նշան է՝ թէ կամ չէ կարդացած զայն, եւ կամ նորա յԵղիշեայ զանազանութիւնքը չէ ընդունած. բայց մամիկոնեան Վահանայ նշանաւոր անուան եւ չրջանի վերայ եւս լռութեամբ անցնիլն աւելի առաջինը կը հաստատէ։ Ղազարայ գրչագիրքն ինչպէս այժմ, նոյնպէս եւ ԺԲ դարուն հազուագիւտ պիտի լինէին, մանաւանդ ի Կիւղիկիա, եւ ոչ մատչելի բոլորին։

* Նոյն օրինակք յառաջ երկու անգամ ընծայեանէ կամ ընծայէն կը կոչեն զԱրուէն, եւ հոս միայն տարբեր. առաջինը կը հաստատեն այս ցանկի մէջ եւս՝ Ե օր. եւ Կոնիբերի պատառիկն եւ Ղազար. ուստի յայտնի սխալ է ընծայեցին։

** Զոր օրինակ, նոյն ցանկերու առաջնոյն մէջ Ա ունի Մերշափուհ, Գ, Դ, Ե Մերշապուհ, (այսպէս

Այս համեմատութենէն տեսուեցաւ՝ թէ այլ եւ այլ ժամանակներ որպիսի՛ յեղափոխութիւն եկեր է Եղիշէի մէջ յիշեալ երկու ցանկերու վերայ. թէպէտ գրչագրական՝ եւ ոչ օտար ձեռին փոփոխութիւնք, բայց նշանաւորք. այնպէս՝ որ թէ եւ բոլորն այլ ուղիղ չեն, բայց ահա առաջին ցանկը (թ. 8) ուղղեցին մի կետով։ Երկուքը միայն ունին հին օրինակներ *, եւ երկուքն այլ փոփոխ-

-երքեմն եւ Եղ. օրինակք, եւ Թովմ. արծր.)։ Ա, Գ, Դ քնթունի։ Ա, Դ չահոռապետ, (այսպէս եւ ս. Ներս. ցուցակը), Գ չապոռապետ, Ե չաւխուռապետ։ Գ գունդն վահանեան՝ փոխանակ վահեւունեաց։ Ա, Դ քովեանքն՝ փոխ. քողեանքն։ Գ առպատունիք։ Ե ակիւղացիքն՝ փոխ. ակէացիքն։ — Երկրորդ ցանկին մէջ՝ Ա, Բ, Դ Աբուանձայ։ Ա, Բ, Գ, Դ Վարդանայ հետ «հարիւր երեսուն եւ երեք» ընկածները կը գրեն «հարիւր յիսուն եւ երեք». Արտակայ «յիսուն եւ եւթն՝» «փոխն եւ եւթն», ռամկական կարդ (փոխ. եւթնեւտասն), որ յայտնի կը ցուցնէ բառի փոփոխումն. Համայեկայ «քսան եւ երկու՝» լոկ «քսան»։ Սակայն այս թուոց եւ միւս անկելոց գումարը չեն հաներ ընդհանուր «երկերիւր ութսուն եւ եւթն» անփոփոխ գումարը. ինչպէս եւ Ե՝ Տաճատայ հետ «ինն եւ տասն» ընկածները դնելով «քսան», մի հոգի աւելի կը լինի ընդհանուր գումարէն. եւ հետեւաբար բոլորն այլ սխալ են գրչագրաց։

* Հին ըսելով կ՚իմանանք ոչ եթէ մեր Ա–Ե օրինակաց գրչութեան ժամանակը, քան զորս հնագոյն կը թուի Անձեւացեաց օրինակը, (տես ի ներած. տպ.

խուած կը գտնենք․ ապա յայտնի է՝ թէ նոյն վիճակին ենթարկուած պիտի լինէին եւ միւս ցանկերն՝ որոց նոյնպիսի հին օրինակներ չկան։ Արդ, եթէ գրչագիրք խանգարեր են Եղիշէի ցանկերը, իրաւացի է հետեւեցնել՝ թէ նորա սեպհականքն ի սկզբան աւելի մօտ էին հանրականաց քան այժմ։

Եւ արդարեւ երկրորդ հանրականի եւ նորա երկրորդ սեպհականի մէջ (թ․ 9) — որ նոյն ցանկն էին — տեսուած կարգի մեծ զանազանութիւնը՝ պատմչին ազատութեան չենք կարող ընծայել․ նա սովորութիւն ունի գէթ աւագագոյն տոհմերն յառաջ դնել քան զայլս․ (տես հանրականքը եւ իւր առաջին սեպհականը)․ եւ մինչ դեռ երկրորդ հանրականին մէջ զԲագրատունին առաջին կարգի մէջ դրած էր, նոյն տոհմը միւս ցանկի մէջ (թ․ 9) չորրորդ է դրուած, յետ Խորխոռունեաց եւ Վահեւունեաց․ եւ Ամատունին՝ որ միւս ցանկերու մէջ բաւական բարձր է, հոս ամենէն յետոյ դասուած է։ Երկրորդին յետնութեան պատճառն այն է, որ Մանէն ամատունին «սեպուհ» էր, ուստի նախարարներէն վայր պիտի ընկնէր․ սա արդէն հանրականին մէջ եւս լռելեայն յետադասուած է՝ «զսեպուհս

Թէոդոսիոյ). այլ ըստ որում ճառընտրաց բովանդակած յեղանակներն իբրեւ վկայաբանութիւն հանուած լինելով յԵղիշեայ հաւանօրէն Ե–Զ դարուց մէջ, (այս մասին յաջորդ գլխոյն մէջ), անոնք եւ ընդհանուր պատմութիւնը միմեանց այնուհետեւ կրած գրչագրական փոփոխութեանց չեն ենթարկուած։

ոմանս յայլմէ տոհմէ» (Եղ. 127) բացատրութեան ներքոյ. բայց բագրատունի Տիրոց «իշխանի» տեղափոխութիւնն՝ յայտնի սխալ համարելի է գրչագրաց։

Ժամանակը Ղազարայ սեպհական ցանկերու եւս չէ խնայած։ Զայս հաստատելու համար՝ ինչպէս ըսինք՝ մեր ձեռին անոնց հին գրչ. օրինակներ չկան։ Արդարեւ ունինք մագաղաթեայ հին պատառ մի, միջակ երկաթագրով, որ ուղղագրութեան կանոններէն թուի գրուած ոչ յոյս կոյս քան ԺԲ դար. բայց աղօր բովանդակութիւնն է մեր խնդրոյն համար անկարեւոր երկու կտորներ, որոց զանազանութիւնքը թէպէտ ընտիրք, բայց տառականք կամ բառականք են եւ ոչ ինչ աւելի*։ Ունինք եւ երկու տպ. օրինակներ՝ յորս երկու գրչագրերէ արտագրուած է ս. Սահակայ տեսիլը միայն, եւ ունին բազմաթիւ եւ երբեմն բաւական նշանաւոր զանազանութիւններ։ Նոյնը կայ մի ուրիշ բոլորագիր անթուական գրչագրի եւ մեր Ե կոչածին մէջ, նոյն համգամանօք, յորոց ըստ մեծի մասին արտագրուած է մեր գործածած տպագիրն. (հմմտ. 1793ի տպ. հետ)։ Ասոցմէ զատ նա եւ Ղազարայ յառաջաբանին, ամբողջ

* Ադոնք են. «չընդդիմացեալ(+) հաւանիմք. եւ է ինչ զոր . . . Ես յայսմ հետէ եւ յառաջ ի մտի այսպէս եղեալ է իմոյ անձինս, զի եթէ է եւ զոյ հնար» (տպ. 136-9). եւ միւսն, «զխոնարհութիւն գլխոց իւրեանց . . . առաւել ցուցէք զմեծ սէր(ն որ էր) առ մեզ,

պատմութեան եւ Քղթոյն տպագրութեանց մէջ — ի յառաջաբանին՝ այս տարի առանձին յօդուածով եւս* — ցոյց տրուած են տեղիք, որ յայտնապէս խանգարուած են կամ կըր-ճատուած։ Սակայն այս բոլորը դեռ չեն հա-ւաստեր ցանկերու խանգարումն. եւ զայս մենք պիտի ջանանք ապացուցանել այժմ։

Փարպեցւոյ երկրորդ սեպհականի մէջ (Թ. 6), յորում կը նշանակուին նիզակակիցք Վարդանայ, եւ նորա հետ յաղուանս կ'եր-թան, կը տեսնենք նա եւ զվահեւունին Գիւտ, որ թէ ըստ Եղիշէի (127, 160) եւ թէ ըստ նոյն ինքն Ղազարայ՝ (195) կուսակից եւ դաւակից էր Վասակայ եւ մնաց ի Հայաս-տան։ Ապա յայտնի է՝ թէ այդ հակասու-թիւնը պտուղ է գրչագրաց աղաւաղման, զի

ւ—զկյաւիտենական … զմտաւ ածէք ծանուցանել (մեզ) եւ պարզելով. եւ ելթէ նախնեացն քոց» (տպ. 153—6)։ Հոս տեսուածոց նման զանազանութիւնք ամբողջ ըն-թերցուածին մէջ եւս կան, որոց համեմատ արդի օրի-նակաց մէջ պէտք է փոխել քանի մի տեղ իբրեւ յայտնի սխալ. ինչպէս, «(խրախ)ուն մեծ ուրախութեան առ-նեին», եւ ոչ «խրախ» (տպ. 154). դարձեալ՝ «եր-թեալք այնուհետեւ հրաժարել ի թագաւորէն», եւ ոչ «հրաժարեւոյ» (տպ. 155). եւ այլն։ Նա կը հոլովէ՝ աւագանւոյ, ազատանւոյ, եւ ոչ աւագանոյ եւ այլն։

* Ն. Բիւզանդացի ի Լումայի, նախայիշեալ տեղը, 309—28։ — Տ. Խալաթեան եւս Ղազարայ ընդհանուր պատմութեան քննութեան մէջ, թէ եւ ցուցած կետե-րէն ոմանց խանգարումն անհաւաստի է։

դժուար է թէ Ղազար ինքնին գործած լինի դայդ։ Զայս կ'ընդունէր եւ Տէրպօղոսեան, ինչպէս տեսանք յառաջ։

Փարպեցւոյ երրորդ սեպհականի մէջ (Թ. 7), որ համառօտութիւն է չորրորդ հանրականին, ի պարսս բանտարկեալ նախարարաց ցուցակին, կը տեսնենք երեք նոր իշխաններ՝ որք կը պակասին հանրականին մէջ, եւ հոս կը յիշուին միայն տոհմային անուամբք. «զիշխանն տանն Վանանդեայ,... եւ զիշխանն Գնթունեաց, եւ զիշխանն Աշոցաց»։ Ո՞վ են դոքա։ Աւարայրի մէջ կը յիշէ Ղազար՝ «Թաթուլ տէրն Վանանդայ» (210), որ ըստ Եղիշեայ՝ գլուխ էր երրորդ գնդին (204)։ Նոյն մարտի մէջ էր եւ «Տաճատ գնթունի՝» նիզակակից Թաթլոյ (Եղ. 173, 204), որ միակ ներկայացուցիչն էր իւր տոհմին, եւ իւր նշանաւոր դիրքը ցոյց կու տայ՝ թէ նախարարն էր գնթունեաց. զի թէ ուրիշ մի լինէր նախարար եւ միանգամայն ուխտապահ, — որոյ համար պիտի բանտարկուած լինէր միւս ուխտապահից հետ, — պէտք էր՝ որ նա եւս մասնակից եւ յիշուած լինէր պատմութեան մէջ։ Դարձեալ՝ Յազկերտի հրովարտակին պատասխանելու համար հաւաքուած նախարարաց մէջ առաջին անգամ կը յիշուի ի Ղազարայ՝ «տէրն Աշոցայ Հրահատ» (126), եւ անգամ մ'այլ հոս՝ նորա երրորդ սեպհականի մէջ՝ անանուն։ Արդ, գնթունեաց իշխանն ըստ երկուց պատմչաց եւս ընկաւ պատերազմին մէջ, ուստի եւ չէր կրնար ի Պարս-

կատաան երթալ. Հետեւաբար սխալ է իւր յիշատակութիւնը Ղազարայ սեպհականին մէջ. Նոյնը կասկածելի կ'ընէ եւ միւս երկու իշխանաց բանտարգելութիւնն, յորոց զուրկ է չորրորդ հանրականը. զի եթէ Փարպեցին յիշած լինէր զանոնք, նա գոհ եւ վստահ իւր ընդունած նոր տեղեկութեան վերայ, պիտի յաւելոյր զանոնք հանրականին մէջ եւս՝ զոր կ'առնոյր յԵղիշէայ. բայց նա զգուշացեր է այդ բանէն, ուրեմն երկքն այլ (եւ մին անտարակոյս) եկամուտ են իւր սեպհականին մէջ։ Ուստի այս եւս խանգարուեր է ժամանակաւ։— Այդ երկու սեպհականք բնականապէս երկբայելի կ'ընեն միւսին (Թ. 5) վաւերականութիւնն այլ։

Այսպէս ահա երկու պատմչաց ցանկերու մէջ բարձական կարգի անհամաձայնութիւնքն յառաջ են եկած՝ մասամբ հեղինակաց գրչի ազատութենէն եւ մասամբ գրչագրական փոփոխութիւններէ ։ Հետեւաբար բոլորովին անհաստատ է Տէրպօղոսեանի անոնց վերայ հիմնած համոզումն, թէ Եղիշէի պատմութիւնն յետնագոյն ժամանակի գործ է, եւ թէ նորա կարծեցեալ խմբագրիչն եւ Ղազար ունեցեր են երեք օտար եւ քան զիրենք հնագոյն աղբիւրներ՝ Նախարարաց ցանկերու համար։

Բ. Միւս երկու խնդիրներն, յունաց հրեշտակութեան եւ աղուանից օգնութեան, մենք հետազօտեցինք արդէն. ուստի հոս կը մնայ մեզ համառօտիւ անցնել։

Ասոնց առաջնոյն մէջ՝ Եղիշէ կը դնէր մի

դեսպան, եւ ապա կը յաւելոյր՝ «յանդիման եղեն մեծի Թագաւորին» (124). Փարպեցին եւս ունի այդ խօսքը բառացի, «յանդիման եղեն Թագաւորին Թէոդոսի» (217), եւ կը դնէ երեք դեսպան։ Ասոր քննադատն հարկ կը համարէր կարծել՝ թէ Եղիշէի մէջ խանգարուեր է դեսպանաց թիւն. իսկ մէջ բերուած համանման խօսքէն կը հետեւեցնէր, թէ «կամ երկու պատմչից մէկը միւսին աղբիւր է ծառայել, եւ կամ մի երրորդ յիշատակարանից դուրս են գրել երկու պատմիչն էլ Յանդիման եղեն կտորը». բայց որովհետեւ, կ՚ըսէր, Եղիշէ իր հակասութեամբ չէ կարող աղբիւր եղած լինել Ղազարայ «կարգաբանեալ ճշգրտապատում» տեղեկութեան, ուրեմն կը մնայ ընդունել՝ թէ Եղիշէի պատմութեան հեղինակն ի Փարպեցւոյն կամ յայլ յիշատակարանէ հանած է «Յանդիման եղեն...» խօսքերը, «մոռանալով որ այդ տողերը հակասում են իւր ձեռով աղաւաղած տողերին, այն է՝ մի հոգւով դեսպանութեան տեղեկութեան»։

Դիցուք՝ թէ Եղիշէի տեղեկութիւնքն հակասական են, եւ յարմարուած անծանօթէ մի։ Այս տեղ բնականապէս ընդ առաջ կ՚ելնեն մեզ այս հարցերն։ Առաջին, եթէ անծանօթն համարձակեր է աղաւաղել իւր աղբիւրը՝ զՂազար կամ «մի երրորդ յիշատակարան», ինչո՞ւ այդ երրորդը բուն Եղիշէի գործը չլինի, եւ անծանօթն անոր մէջ խանգարած դեսպանաց թիւը, եւ Ղազար

նախ քան այդ խանգարումն օգտուած անորմէ։ Երկրորդ, եթէ Եղիշէի խմբագրիչն յանդիմանն չինելոյն տեղեկութիւնն առաւ ի Փարպեցւոյն կամ յայլմէ, ի Վարդանանց այնչափ հեռի — «ուշ ժամանակի» — ուստի եւ անծանօթ այդ մարդն ի՞նչ նպատակ կամ շահ ունէր նոցա թիւը եւ անձինքն «աղաւաղելու՝» հակառակ իւր աղբեր. արդեօք նոցա թոռանց հետ մի հաշիւ ունեցաւ, եւ վրէժը պապերէ՞ն ուզեց առնուլ։ Երրորդ, եթէ խմբագրիչը կրցեր է ինքն իրեն հակասել, ինչո՞ւ ամբողջ պատմութիւնը Ե դարու Եղիշէն գրած եւ այն հակասութիւնն ինքն ստեղծած չլինի, եւ Ղազար՝ որ «յանդիման եղեն» կտորով անորմէ կախումն ունի, նորա տուած այդ տեղեկութիւնն իւր բերանացի աղբեր (Արշաւրի, 316) ձեռօք ուղղած եւ այնպէս մէջ բերած չլինի։

Այս հարցերն ինքնին կը խախտեն քննադատին այժմեան Եղիշէն քան զՓարպեցին ժամանակաւ յետադասելու համար կատարած քմածին ձեռնարկութիւնքը։ Մենք ինչպէս տեսանք յառաջ, «յանդիման եղեն» խօսքին եւ դեսպանաց ըստ Եղիշէի թուոյն մէջ բնաւ հակասութիւն չկայ անկողմնակալ դատողի համար. այլ ընդ հակառակն՝ մեծապէս կասկածելի էին Ղազարայ յիշած անձինքը. եւ այս կէտն՝ աւելի զվերջինս խանգարուած, կամ ասոր մէջ զԵղիշէ եւ սխալ աւանդութիւն մի (Արշաւրէն զատ) միասին խառնուած ցոյց կու տայ։

Գ. Աղուանից խնդրոյն մէջ Եղիշէ կ'ըսէր՝ թէ սպարապետը գնաց յօգնութիւն՝ հասարակաց հաւանութեամբ, եւ Վասակ ըստ նոյն պատմչին կը գրէր առ Սեբուխտ, թէ ես «քակեցի զմիաբանութիւն ուխտին Հայոց, ... զգունդն երրորդ արարի ընդ Վարդանայ յաղուանս» (128)։ Այս կարծեցեալ հակասութիւնը, զոր քննադատն այս տարի Եղիշէի կողմնասիրութեան տուաւ, անցեալ տարի նորա անծանօթ խմբագրչին կ'ընծայէր։ Մարզպանի թուղթը նոյն իմաստիւ կայ եւ առ Ղազարայ (188), բայց սորա միւս տեղեկութիւնքը Վարդանայ երթին համար՝ համաձայն են թղթոյն. հետեւաբար Եղիշէ իւր հակասութեամբ չէր կարող աղբիւր լինել Փարպեցւոյն, այլ սա նորա կամ երրորդ մի երկոցուն, բայց թէ մին եւ թէ միւսը խանգարմամբ գործածուելով Եղիշէի մէջ։

Ի պատասխանի այդ հետեւութեան՝ հոս եւս կրնանք կրկնել նախորդ խնդրոյն մէջ քննադատին կարծեաց հերքիչ հարցերէն առաջինը եւ երրորդը. (տես անդ)։ Վասակայ նամակն արդարեւ նոյն է երկու պատմչաց քով. Թէպէտ Ղազար մէջ կը բերէ զայն այն կերպարանօք՝ յորում տեսանք յառաջ պարսից եւ Հայոց նամակաց պատճէնքը. այն է՝ այլափոխած, եւ աւելի իմաստից՝ քան բառից նմանութիւն մի պահելով։ Մենք իրաւացի փաստերով ցոյց տուինք Բ գլխոյն մէջ՝ թէ ինչպէս սիւնեցւոյն փքալից խօսքերն հակառակ էին իրականութեան, թէ ուղիղ եւ

հարկաւոր էր ոգւոյն եւ Եղիշէի տեղեկու-
թեանց մէջ ականատեսի պատշաճ դատողու-
թեամբ յառաջ եկած տարաձայնութիւնն, եւ
թէ Ղազար ուզելով ձայնակցել իւր տեղե-
կութիւնքը Թղթոյն հետ, ուրիշ կողմանէ հա-
կառակ է ինքն իրեն, այլ թէ ոչ՝ պէտք է
իւր խօսքերն այլազգ մեկնել։ Ուստի եւ յայսմ
եւ ի նախորդ գլուխս քննուած տարաձայնու-
թեանց մէջ խանգարումն կամ այլ ինչ եւ
իցէ՝ հարկ է Փարպեցւոյն քով փնդռել, եւ
չէ ուղիղ՝ նորա հետ համեմատելով այժ-
մեան Եղիշէն խլել մեզ ծանօթ պատմագրի
ձեռքէն։

Գ. Տէրպօղոսեան յետ հաստատած կար-
ծելու Եղիշէի պատմութեան անհարազատու-
թիւնը, կ'ուզէ նա եւ ցոյց տալ քանի մի
հաւանական աղբիւր, զորս գործածած լինի
խմբագրիչը։ Եւ են, ի Թովմ. արծրունւոյ *
յիշատակեալ Համառօտագրութեան Արբ. խոստո-
վանողի. «մեզ յայտնի է նոյնպէս՝ որ ոմն
Մովսէս սիւնեաց եպս. գրել է Ե դարի պատ-
մական դէպքերի մասին ճառեր». «յայտնի
են նոյնպէս Ե դարի մասին մեզ չհասած
զանազան յիշատակարաններ»։ Կը փափաքի,
բայց այդ աղբերաց պակասութիւնէն կամ
խանգարմանէն կ'անկարանայ հաստատել՝ թէ
«յետին դարերի գրողներից մէկը, Եղիշէի
անուան տակ ծածկուած», հանած լինի այն
քանի մի տեղեկութիւնքն՝ որք պատմիչն

* Տպ. Կ. պոլսոյ, 1852, յէջ 88։

կանատես կը ցուցնեն Ե դարու անցից*։ Ի վերջոյ կը յայտնէ եւ բուն Եղիշէի վաւերական յիշատակարան մի եղած եւ այժմեանն «յետին դարերում» անտի կարկատուած լինելու կարծիքը, թէպէտ ոչ վստահութեամբ։

Առ այս մեր պատասխանը շատ պարզ է։ Աբրահամու յիշեալ գործն ինքնին անվաւեր եւ ժամանակաւ յետնագոյն գրութիւն մ'է ըստ մեզ, ինչպէս պիտի ցուցնենք յաջորդ գլխոյն մէջ. ուստի եւ չէ կարելի հաւատել՝ որ քան այժմեան Եղիշէն յառաջ գրուած եւ անոր աղբիւր եղած լինի։ Մովսիսի սիւնեցւոյ պատմական «ձառերն» ուր յիշուած են, մեզ անյայտ է. թերեւս կ'ուզէ ըսել Պետրոսի սիւնեցւոյ «ճառք» կամ «տաղացուածք» կամ «ներբողումն» կոչուածը, զոր ԺԳ–Դ դարուն գործածեր է Ստեփ. Օրբելեան (հտ. Ա, գլ. Ա, Թ–ԺԲ). բայց Պետրոս կը համարուի ապրած Զ դարու մէջ**. ուստի

* «Ցորում պատահեցաք եւ մեք իսկ ականատես լինելով» (Եղ. 9)։ «Ես ինքնին անձամբ անդէն ի տեղւոջն պատահեցի եւ տեսի եւ լուայ» (27)։ «Երանելի խուժիկս... երկրորդեաց մեզ զամենայն կարգաւ» (322)։ — Երեք տողիցս համար ա՛յնչափ աղբիւր յուզելը շատ տարօրինակ գործ է. ամբողջ գիրքը կարկատողը չէ՞ր կրնար այդ տողերն ալ կեղծել. ինչո՞ւ միայն ադոնց հետ այդչափ խղճմտութեամբ վարուիլ։

** Պատմ. հայ դպրութեան, Բ տպ. յէջ 389։ — Սիսական, յէջ 20։

եւ չէր կարող Ե դարու անցից մասնակից եւ «ականատես» կոչել զինքն, եւ այդ կեղծ տեղեկութիւնն Եղիշէի կարծեցեալ խմբագրը-չին եւս աւանդել։ Ե դարու միւս անյայտ յի-շատակարանք, — որոնք կամ որոցմէ են ան-շուշտ Մամբրէի վերծանողի եւ Թէոդորոսի քերթողի պատմութիւնքն՝ որոց «Մնացորդ-ներէն» օգտուեր է Թովմա (47), — նա-խայիշիլոց հետ ի միասին փակ մատեաններ են, որոց ընդ Եղիշէի ունեցած յարնչու-թիւնը մարգարէութեամբ միայն կարելի է գուշակել. մեր երեւակայութիւնը շատ բան կրնայ ստեղծել, հնարաւոր եւ անհնար. բայց ամէն հնարաւոր իրականութիւն չէ, գէթ ցոր-չափ չէ ցուցուած թէ է։ Գալով վերջապէս Եղիշէի վաւերական գատ յիշատակարանին, այն եւս գոյութիւն ունի լոկ քննադատին գրչին ներքոյ, ըստ որում սխալ են այն «հիմ-քերն՝» որ ստիպեր են զնա այժմեան պատմու-թիւնը չտալ նոյն Եղիշէի։

Ե. Միակ ակնյայտնի աղբիւրն, որ թէ Եղիշէի եւ թէ Ղազարայ՝ ըստ իրենց պատ-մելոյն՝ աւանդեր է Ղեւոնդեանց նահատա-կութեան տեղեկութիւնքը, միայն ուղղակի (322), եւ միւսոյն անուղղակի՝ Արշաւրայ բերանով (305), դա Խուժիկն է։ Թէ Տէր-պօղոսեան այս մասին ի՛նչ կը խորհի, մեզ յայտնի է. երկրորդ յօդուածին մէջ ըսաւ նա՝ թէ «քահանաների նահատակութեան հան-գամանքը՝ իբրեւ պատմական իրողութիւն կասկածելի է (ԽԷ–ԾԸ)»։ Ձի ըսեր հանգա-

մանքներէն ոմանք, այլ ընդհանուր «հանգամանքը», որ է նոյն ինքն նահատակութիւնը. եւ Փարպեցւոյն մէջ այդ տեղեկութեան չափն այլ ցոյց կու տայ՝ «Խէ–ԾԸ» հատուածները։ Երկու ժամանակակից պատմչաց՝ յետոյ եւ այլոց՝ վկայած մի դէպք առանց պատճառի ուրանալը քմահաճութիւն մ'է, որ չի պարտաւորեր զմեզ ժամավաճառ լինել պատասխանելու իրեն։ Մեզ կը մնայ միայն ցուցնել երկու պատմչաց հայեացքը Խուժկի անձին եւ պատմածոց վերայ։

Գալով անձին, Ղազար կը գրէ՝ թէ նա հայոց ծանօթ «վաճառական» մ'էր՝ քրիստոնեայ. եւ լսելով՝ որ Վեհդենշապուհ (Եզ. Դենշապուհ) քահանայքն առած՝ Վրկանէն կը տանի յԱպար նահատակելու, կը թողու իւր գրաստները, վաճառքը եւ ընկերքը. եւ ձեւանալով անտեղեակ դահճապետի նպատակին եւ ճանապարհորդ դէպ յԱպար, կ'ուղեկցի անոր, ճանապարհին մէջ կ'ընտանենայ նորա հետ, եւ բռնադատեալ՝ կը կանգնի եւ հանդիսատես կը լինի սրբոց նահատակութեան (283–9)։ — Իսկ ըստ Եղիշէի՝ «ի զօրացն արքունի» էր Խուժիկ, «եւ վիճակեալ ի դասս դահճացն». եւ գիշերը կու գայ կը խառնուի իբրեւ դահիճ՝ Դենշապհոյ զանազան խմբերէ կազմուած ամբոխին հետ, մի խմբի ուղեկիցներէն միւս խմբէն կարծուելով, եւ այնպէս ականատես կը լինի իւր կրօնակցաց վախճանին (283–4)։

Արդ, ո՛րչափ անբնական եւ դժուարին բան

է «վաճառականի» մի խառնուրդն այնպիսի օտարոտի եւ մինչեւ իսկ գաղտնի (Եղ. 283, Ղզ. 262) գործոյ մի եւ այնպիսի մարդոց մէջ. եւ անոր հակառակ՝ ո՛րչափ բնական եւ յարմար է «դահճի» մի մասնակցիլը նոյն գործոյն մէջ։ Եւ ոչ այս միայն, այլ եւ յետ նահատակութեան՝ Խուժիկ պահապան եւս կը դրուի սրբոց մարմնոց. այնչափ տարօրինակ դիպուած՝ որ Ղազար կը ստիպուի «Աստուծոյ ազդեցութեանն» ընծայել (306). ուր Եղիշէ կ՚ըսէ, թէ «Մնայր անդէն ընդ պահապանսն որպէս զմի ի նոցանէ» (318)։ Սորա հաշիւն այնքան պարզ է, որ մենք չենք կարող չճանաչել զինքն աւելի տեղեակ Խուժկի անձին՝ քան Փարպեցին։

Գալով Խուժկի տուած տեղեկութեանց, երկու պատմչաց մէջ սկիզբէն ցվերջ կը տեսնենք գրեթէ անխոտոր զուգընթացութիւն մի՝ ոչ միայն իմաստից, այլ յաճախ եւ բառից. առ այս մի օրինակ բաւական լինի.

| ԵՂ․ 249 | ՂԶ․ 256–7 |
| --- | --- |
| «Արդ ի վեշտասաներորդի ամի տէրութեան նորին թագաւորի ··· խաղայր գնայր յաշխարհն Քուշանաց ··· ի գործ պատերազմին· եւ գնացեալ ի Վրկանէ, եւ ելեալ յԱպար աշխարհ, | «Եւ յամի վեշտասաներորդի թագաւորութեանն իւրոյ Յազկերտ ·· խաղայր ի պատերազմ ի վերայ Քուշանաց ··· ի Վրկանէ· եւ ելեալ յԱպար աշխարհ, ··· հրամայէր պահել |

նովին կապանօք զնախարարսն եւ զքահանայսն հրամայեաց պահել ի դղեկ քաղաքին ի Նիւշապուհ. եւ զերկուս յերանելի կապելոցն ընդ իւր խաղացոյց. ահ արկանէր ամենայն քրիստոնէութեան ընդ որ անցանէր»:

անդ զկապեալսն հայոց զքահանայսն եւ զնախարարսն ի դղեակ շահաստանին Նիւշապուհ. բայց զերանելի զերկու քահանայսն . . . հրամայէր ընդ իւր խաղացուցանել. . . ահ եւ երկիւղ արկանէր ի վերայ քրիստոնէից *»:

Բնաւ չկայ տարակոյս՝ թէ այդ տողերը եւ էջերը մին միւսէն առած է. — առանց փաստի բոլորովին անհիմն կը լինէր կարծելը՝ թէ երկուքն այլ երրորդէ մի առած են. — Խուժկի պատմածն ոչ մի կերպիւ չէր կրնար երկու անժամանակակից եւ իրարմէ անկախ (եթէ այդպէս համարինք) պատմչաց գրիչներէ դուրս գալ նոյն կարգաւ եւ բառացի տողերով: Բայց ո՞վ ուստի՛ առած է: Խուժկի անձին նկարագիրն երկու պատմչաց քով՝ ցոյց տուաւ, թէ Եղիշէի պատմութեան գրիչն աւելի ծանօթ էր անոր. եւ այնու՝ որ Ղազար նորա անձն անճիշդ (կամ գէթ տարբեր) կը նկարագրէ, չէր կարող նա աւանդած լինել Եղիշէի ճիշդ նկարագիրը նորա երեւա

* Նոյնպիսի բառացի նմանութիւն տես չարունակաբար յԵղ. 252 եւ ի Ղզ. 260. 283, 262. 287, 293. 314, 302–3. 316, 304. 318, 306. 321–2, 310–1. 322, 312–3, եւ այլն:

կայեալ խմբագրողին, եւ ոչ քան զնա կանուխ լինել, — զի ճշդութիւնը նշան է նորա աւելի մօտ լինելուն նկարագրեալ անձին. — այս հանգամանքը միանգամայն կը հաստատէ Եղիշէի խօսքը՝ թէ Խուժիկ «երկրորդեաց մեզ զամենայն»: Նորա անձին նկարագիրն աւանդողը պէտք էր արձանագրած լինէր երկրորդածն եւս, զի միայն աստ յիշատակութեամբ կրնար յիշուած լինել երկրորդիչն. այսու երկու մասունքն այլ կը կապուին իրարու եւ ծանօթ ականատես պատմչին հետ. եւ կը ջնջուի նորա զՂազար աղբիւր ունենալու ո եւ է հաւանականութիւն:

Փարպեցւոյ սխալն Խուժկի մասին յառաջ կու գայ անտի, որ աղբիւր է ունեցեր ոչ թէ զԱրշաւիր (305), որում դժուարին էր չճանաչել զԽուժիկ*, այլ ըստ մեզ ժողովրդական աւանդութիւնը, որ սովոր է շատ անգամ եղծանել ճշմարտութիւնը: Նմանապէս եղծուած կամ փոքր ի շատէ կերպարանա-

* Այդ կոչումն նոյն իսկ անձին անունը կը համարի Եղիշէ, «Խուժիկ անուն». իսկ Ղազար ազգին անունը կը կարծէ, «ազգաւ Խուժիկ». եւ ցաւ կը յայտնէ՝ որ «զանուն սքանչելոյն ոչ ոք հոգացեալ պատմեաց մեզ» (313–4): Եթէ ինք կամսարականէն լսեց նորա պատմածները, ի՞նչպէս կրնար Արշաւիր չճանաչել եւ չաւանդել անունն իսկ այն մարդոյն՝ որ այնչափ քաջածանօթ էր իրեն (305) եւ ամբողջ հայ ազգին (283–4): Այս կէտը կասկածելի կ'ընէ՝ ոչ միայն նորա մասին յարշարունւոյն լսելը. այլ եւ Խուժկի ուրիշ անուն ունենալը:

փոխուած պիտի լինէր նա եւ նոյն օտարականի պատմածը, թէպէտ զայն դարձեալ աւանդութենէ առնոյր Ղազար, թէպէտ կամսարականէն. եւ երբ կը նկատենք բառացի նոյնութիւնը Եղիշէի հետ, կը ստիպուինք հետեւեցնել, թէ Խուժկի պատմածոց համար իբրեւ աղբիւր գործածեր է ոչ այլ ինչ կամ զոք, բայց նոյն ինքն զԵղիշէ, միայն դուրս թողլով անոր միջէն (համառօտութեա՞ն համար) Ապար աշխարհի մոգպետին դարձն ի քրիստոնէութիւն, եւ աւանդութենէ յաւելլով Բասենոյ Թաթիկ եպիսկոպոսի մահուան հանգամանքները (261), որք կը պակասէին Եղիշէի քով (317), եւ ըստ կամս փոփոխելով խօսող անձինքը եւ խօսակցութիւնքը։

Այսպէս ուրեմն Եղիշէի ութերորդ յեղանակի մէջ չի տեսնուիր՝ գէթ մեզ՝ յետնագոյն գրչի հետք, այլ անոր հակառակ։ Յիշենք նա եւ նախորդ յեղանակաց քննութեան մէջ մեր տեսած շատ կէտերը, որք կը հաստատէին Եղիշէի այժմեան պատմութեան հնութիւնը քան զՂազար։ Զոր օրինակ, հայոց ի մոգութիւն դարձի խորհրդոյն հեղինակաց նկատմամբ՝ առաջնոյն հաստատուն եւ պատմական տեղեկութիւնն, հակառակ յեղյեղուկ եւ անճիշդ արձագրութեան երկրորդին. պարսից ընդ հայոց թղթակցութեանց հարազատ պատճէնքը, Զանդաղանի ապանութեան բնական եւ հաւանական հանգամանքներին, առ Թէոդոս դեսպանաց երթի եւ դարձի կարգաւոր եւ բանաւոր պատմու-

թիւնն, եւ Ատրորմզդի պատերազմաց եւ մարզպանութեան ճշգրիտ ժամանակն առ Եղիշէ, եւ ադոնց հակառակք առ Ղազարայ. Վարդանանց պատերազմի մանրամասն ժամանակագրութիւնը միայն քով, որոյ հազիւ մի մասն կայ երկրորդին քով, եւ այլն. այդ բոլորը ցոյց կու տան, թէ Եղիշէի պատմութեան հեղինակը չէր կարող հանդիպած եւ օգտուած լինել ի Փարպեցւոյն, կամ այն աւանդութենէն՝ որ չփոթեր է զսա. այլ կանուխ էր քան զսոնք, ուստի եւ ժամանակակից Վարդանանց։ Իսկ Ղազարայ զԱտրորմիզդ «յաշխարհէն հայոց» կարծելն՝ ազդեցութեամբ Եղիշէի «յաւագ նախարարացն» բացատրութեան, չորս հանրական յանկերու նոյնութիւնն երկու պատմչաց քով, եւ նոցա սովորաբար բառացի համընթացութիւնը նոյն իսկ ամբողջ պատմութեան մէջ՝ զոր համառօտութեան համար զգուշացանք համեմատել գրով, այդ բոլորը կը վկայեն՝ թէ Փարպեցին լաւելեայն օգտուեր է յԵղիշեայ։

Բայց ինչո՞ւ լռելեայն։ Նա կը պատմէ՝ թէ «ընդ բազում ճառս մատենից առաջնոցն պատմագրացն հայոց անցի» (4), թէ տեսեր է զԱգաթանգեղ եւ զՓաւստոս, եւ թէ օգտուեր է ի Կորեանէ (35, 103), Արշաւրայ տեղեկութիւններէն եւ Վասակայ ի բանտի ծառայողաց պատմածներէն (255). ինչո՞ւ ուրեմն չէ յիշեր եւ զԵղիշէ։ Արդեօք ներելի՞ է կարծել, թէ ո եւ է գժտութիւն կամ նախանձու պէս բան մի ունեցած լինի նորա

*դէմ, որում Թէպէտ ոչ հասակակից, այլ ժամանակակից էր. կամ Թէ լաւ եւս՝ Նոցա պատմագրութեանց կարճ ժամանակամիջոցի մէջ Եղիշէի գրածը դեռ ծանօթացած չլինելով հասարակաց, Ղազար լռեր է՝ որ ժամանակակցաց առջեւ ինքն համարուի առաջին պատմիչ Վարդանանց։*



## Ե

## ԱՅԼ ԲԱՆԱՍԷՐՔ ՆՈՅՆ ՆԻՒԹԻ ՄԱՍԻՆ

*Եղիշէի պատմութեան մի պատառն՝ հրատարակուած ի Կ. Կոնիբերէ. — Այլ պատառ մի՝ ծանուցուած Բազմավիպի մէջ. եւ Վահան արծրունին. — Սոյն պատառի մէջ յիշուած նոր անձինք. — Եղիշէի աղբերք ըստ տէր Գր. Խալաթեանի. — Եղիշէի պատմագրութեան չափն եւ ժամանակ։*

Այն ինչ Տէրպօղոսեանի Եղիշէի պատմութեան աղբիւրն սկսած էր հրատարակուիլ, յարգելի ուսուցչապետն Գր. Խալաթեան ինչ նոր դիտողութիւն որ կրնար կատարել կամ յիշեցնել արդէն կատարուածներն յայլոց, այն մասամբ՝ որ Եղիշէի այժմեան պատմութիւնն սկզբնական բնագիրը չէ, փութաց համառօտիւ ի լոյս հանել*, եւ նախ քան

* «Եղիշէի աղբիւրների առթիւ». ի Հանդ. ամս. 1895, թիւ 4, էջ 113։

Տէրպօղոսեանի գրութեան աւարտումն՝ «ուղղել մասամբ ու լրացնել» իւր կարծիքները, զորս յայտնած էր ի Ղզ. փրպ. եւ գործք Նորին:

Արդարեւ իւր դիտողութիւնքն աւելի խնդիր կը վերցնեն քան միւս բանասիրին: Անոնց նիւթ կը լինին նախ՝ Եղիշէի մագաղաթեայ պատառ մի, որ Կ. Կոնիբերի ձեռօք յայտնեցաւ ի Լոնդոն եւ լոյս տեսաւ Ամս. Հանդէսի մէջ (1893, թ. 5): Դարձեալ, ուրիշ պատառիկ մի ճաշոցի, որ վաղուց ծանուցուած էր Բազմավէպի մէջ (Թ, աւգ. 1): Յարգելի բանասէրը տեսնելով եւ նկատել տալով ադոնց մէջ ցոյց տրուած բաւական տարբեր կամ աւելի եւ պակաս ընթերցուածներն, որք հրատարակիչներէն իբրեւ փաստ են համարուած Եղիշէի բնագրին ի սկզբան ուրիշ կերպարանաց մէջ լինելու, եւ որում ինքն այլ կը հաւանի, կը յարէ. «Գուցէ այս իսկ նախնական բնագիրը լինի, որից օգտուել է Փարպեցին, եւ որը Սեբէոսին էլ (Է դար) ծանօթ էր. յետոյ նա ենթարկուել է փոփոխութիւնների ու նորից մշակուել, ըստ երեւութին՝ ոչ վաղ քան Է դար»:

Մեր համոզմամբ՝ տէր Խալաթեան կրնար չփոխել իւր նախկին կարծիքը. եւ զայս հաստատելու համար քննենք յիշեալ պատառները: Ադոնց մէջ կան գրչագրական մանր զանազանութիւնք՝ զորս ընդհանրապէս ունին խորհրդածութեանցս նախորդ գլխոյն մէջ (խնդիր Ա) յիշուած ճառընտիրք եւս, եւ չեն

# Է

## ԱՅԼ ԲԱՆԱՍԷՐՔ ՆՈՅՆ ՆԻՒԹԻ ՄԱՍԻՆ

*Եղիշէի պատմութեան մի պատառն՝ հրատարակուած ի Կ. Կոնիբերէ. — Այս պատառ մի՝ ծանուցուած Բազմավիպի մէջ. եւ Վահան արծրունի. — Սոյն պատառի մէջ յիշուած նոր անձինք. — Եղիշէի աղբերք ըստ տէր Գր. Խալաթեանի. — Եղիշէի պատմագրութեան չափն եւ ժամանակ:*

Այն ինչ Տէրպօղոսեանի Եղիշէի պատմութեան աղբիւրն սկսած էր հրատարակուիլ, յարգելի ուսուցչապետն Գր. Խալաթեան ինչ նոր դիտողութիւն որ կրնար կատարել կամ յիշեցնել արդէն կատարուածներն յայլոց, այն մասամբ՝ որ Եղիշէի այժմեան պատմութիւնն սկզբնական բնագիրը չէ, փութաց համառօտիւ ի լոյս հանել*, եւ նախ քան

* «Եղիշէի աղբիւրների առթիւ». ի Հանդ. ամս. 1895, թիւ 4, էջ 113:

Տէրպօղոսեանի գրութեան աւարտումն՝ «ուղղել մասամբ ու լրացնել» իւր կարծիքները, զորս յայտնած էր ի Ղզ. փրպ. եւ գործք Նորին:

Արդարեւ իւր դիտողութիւնքն աւելի խնդիր կը վերցնեն քան միւս բանասէրին: Անոնց նիւթ կը լինին նախ՝ Եղիշէի մագաղաթեայ պատառ մի, որ Կ. Կոնիբերի ձեռօք յայտնեցաւ ի Ղուգդոն եւ լոյս տեսաւ Ամս. Հանդէսի մէջ (1893, թ. 5): Դարձեալ, ուրիշ պատառիկ մի ճաշոցի, որ վաղուց ծանուցուած էր Բազմավիպի մէջ (Թ, աւգ. 1): Յարգելի բանասէրը տեսնելով եւ նկատել տալով ադոնց մէջ ցոյց տրուած բաւական տարբեր կամ աւելի եւ պակաս ընթերցուածներն, որք հրատարակիչներէն իբրեւ փաստ են համարուած Եղիշէի բնագրին ի սկզբան ուրիշ կերպարանաց մէջ լինելու, եւ որում ինքն այլ կը հաւանի, կը յարէ. «Գուցէ այս իսկ նախնական բնագիրը լինի, որից օգտուել է Փարպեցին, եւ որը Սեբէոսին էլ (Է դար) ծանօթ էր. յետոյ նա ենթարկուել է փոփոխութիւնների ու նորից մշակուել, ըստ երեւութին՝ ոչ վաղ քան Է դար»:

Մեր համոզմամբ՝ տէր Խալաթեան կրնար չփոխել իւր նախկին կարծիքը. եւ զայս հաստատելու համար զննենք յիշեալ պատառները: Ադոնց մէջ կան գրչագրական մանր զանազանութիւնք՝ զորս ընդհանրապէս ունին խորհրդածութեանցս նախորդ գլխոյն մէջ (խնդիր Ա) յիշուած ճառընտիրք եւս, եւ չեն

## Ե

## ԱՅԼ ԲԱՆԱՍԵՐՔ ՆՈՅՆ ՆԻՒԹԻ ՄԱՍԻՆ

*Եղիշէի պատմութեան մի պատառն՝ հրատարակուած ի Կ. Կոնիբերէ. — Այլ պատառ մի՝ ծանուցուած Բազմավիպի մէջ. եւ Վահան արծրունին. — Սոյն պատառի մէջ յիշուած նոր անձինք. — Եղիշէի աղբերք ըստ տէր Գր. Խալաթեանի. — Եղիշէի պատմագրութեան չափն եւ ժամանակ:*

Այն ինչ Տէրպօղոսեանի Եղիշէի պատմութեան աղբիւրն սկսած էր հրատարակուիլ, յարգելի ուսուցչապետն Գր. Խալաթեան ինչ նոր դիտողութիւն որ կրնար կատարել կամ յիշեցնել արդէն կատարուածներն յայլոց, այն մասամբ՝ որ Եղիշէի այժմեան պատմութիւնն սկզբնական բնագիրը չէ, փութաց համառօտիւ ի լոյս հանել*, եւ նախ քան

* «Եղիշէի աղբիւրների առթիւ». ի Հանդ. ամս. 1895, թիւ 4, էջ 113:

Տէրպօղոսեանի գրութեան աւարտումն՝ «ուղղել մասամբ ու լրացնել» իւր կարծիքները, զորս յայտնած էր ի Ղզ. փրպ. եւ գործք նորին։

Արդարեւ իւր դիտողութիւնքն աւելի խնդիր կը վերցնեն քան միւս բանասէրին։ Անոնց նիւթ կը լինին նախ՝ Եղիշէի մագաղաթեայ պատառ մի, որ Կ. Կոնիբերի ձեռօք յայտնեցաւ ի Ղուզդոն եւ լոյս տեսաւ Ամս. Հանդիսի մէջ (1893, թ. 5)։ Դարձեալ, ուրիշ պատառիկ մի ճաշոցի, որ վաղուց ծանուցուած էր Բազմավէպի մէջ (Թ, աւգ. 1)։ Յարգելի բանասէրը տեսնելով եւ նկատել տալով ադոնց մէջ ցոյց տրուած բաւական տարբեր կամ աւելի եւ պակաս ընթերցուածներն, որք հրատարակիչներէն իբրեւ փաստ են համարուած Եղիշէի բնագրին ի սկզբան ուրիշ կերպարանաց մէջ լինելու, եւ որում ինքն այլ կը հաւանի, կը յարէ. «Գուցէ այս իսկ նախնական բնագիրը լինի, որից օգտուել է Փարպեցին, եւ որը Սեբէոսին էլ (Է դար) ծանօթ էր. յետոյ նա ենթարկուել է փոփոխութիւնների ու նորից մշակուել, ըստ երեւութին՝ ոչ վաղ քան Է դար»։

Մեր համոզմամբ՝ տէր Խալաթեան կրնար չփոխել իւր նախկին կարծիքը. եւ զայս հաստատելու համար զննենք յիշեալ պատառները։ Ադոնց մէջ կան գրչագրական մանր զանազանութիւնք՝ զորս ընդհանրապէս ունին խորհրդածութեանցս նախորդ գլխոյն մէջ (խնդիր Ա) յիշուած ճառընտիրք եւս, եւ չեն

## Ե

## ԱՅԼ ԲԱՆԱՍԷՐՔ ՆՈՅՆ ՆԻՒԹԻ ՄԱՍԻՆ

*Եղիշէի պատմութեան մի պատառն՝ հրատարակուած ի Կ. Կոնիբերէ. — Այլ պատառ մի՝ ծանուցուած Բազմավիպի մէջ. եւ Վահան արծրունի. — Նոյն պատառի մէջ յիշուած նոր անձինք. — Եղիշէի աղբերք ըստ տէր Գր. Խալաթեանի. — Եղիշէի պատմագրութեան չափն եւ ժամանակ։*

Այն ինչ Տէրպօղոսեանի Եղիշէի պատմութեան աղբիւրն սկսած էր հրատարակուիլ, յարգելի ուսուցչապետն Գր. Խալաթեան ինչ նոր դիտողութիւն որ կրնար կատարել կամ յիշեցնել արդէն կատարուածներն յայլոց, այն մասամբ՝ որ Եղիշէի այժմեան պատմութիւնն սկզբնական բնագիրը չէ, փութաց համառօտիւ ի լոյս հանել*, եւ նախ քան

* «Եղիշէի աղբիւրների առթիւ». ի Հանդ. ամս. 1895, թիւ 4, էջ 113։

Տէրպօղոսեանի գրութեան աւարտումն՝ «ուղղել մասամբ ու լրացնել» իւր կարծիքները, զորս յայտնած էր ի Ղզ. փրպ. եւ գործք նորին:

Արդարեւ իւր դիտողութիւնքն աւելի խընդիր կը վերցնեն քան միւս բանասիրին: Անոնց նիւթ կը լինին նախ՝ Եղիշէի մագաղաթեայ պատառ մի, որ Կ. Կոնիբերի ձեռօք յայտնեցաւ ի Ղուգդոն եւ լոյս տեսաւ Ամս. Հանդիսի մէջ (1893, թ. 5): Դարձեալ, ուրիշ պատառիկ մի ճաշոցի, որ վաղուց ծանուցուած էր Բազմավիպի մէջ (Թ, աւգ. 1): Յարգելի բանասէրը տեսնելով եւ նկատել տալով անոնց մէջ ցոյց տրուած բաւական տարբեր կամ աւելի եւ պակաս ընթերցուածներն, որք հրատարակիչներէն իբրեւ փաստ են համարուած Եղիշէի բնագրին ի սկզբան ուրիշ կերպարանաց մէջ լինելու, եւ որում ինքն այլ կը հաւանի, կը յարէ. «Գուցէ այս իսկ նախնական բնագիրը լինի, որից օգտուել է Փարպեցին, եւ որը Սեբէոսին էլ (Է դար) ծանօթ էր. յետոյ նա ենթարկուել է փոփոխութիւնների ու նորից մշակուել, ըստ երեւութին՝ ոչ վաղ քան Է դար»:

Մեր համոզմամբ՝ տէր Խալաթեան կրնար չփոխել իւր նախկին կարծիքը. եւ զայս հաստատելու համար զննենք յիշեալ պատառները: Ադոնց մէջ կան գրչագրական մանր զանազանութիւնք՝ զորս ընդհանրապէս ունին Խորհրդածութեանցս նախորդ գլխոյն մէջ (խնդիր Ա) յիշուած ճառընտիրք եւս, եւ չեն

այնպէս հետաքրքրիչք. ուստի մեր ուշը պիտի դարձնենք միայն կարեւոր զանազանութեանց վերայ։

Ա. Տէր Կոնիբերի հրատարակածը* քան զինք քառասուն տարի յառաջ արդէն օրինակուած էր նոյն մագաղաթէն, եւ մինչեւ ցայժմ կը գտնուի մեր մատենադարանի մէջ. եւ այս եւս պիտի ծառայէ մեզ հոս։

Ցարգելի բանասէրն առաջին էջին առաջին սիւնակը սաստիկ խանգարուած է գտեր. այնպէս՝ որ տողից վերջին ծայրերէն հազիւ կրցեր է կարդալ երբեմն մի տառ, երբեմն երկու եւ մերթ աւելի։ Եւ կը զեկուցանէ, թէ աղօր «բնագիրը բոլորովին ուրիշ է քան զայն զոր այժմ կ'ընթեռնունք. վասն զի արդի տպագրութեանց մէջ չենք գտներ (այդ) Ա սեան տողերուն վերջին տառերը»։ — Ցիրաւի՝ եթէ ուղիղ կարդացուած լինէին այդ տառեր, կարելի կը լինէր բնագիրն ուրիշ համարել. բայց այնպէս խանգարուած է եղեր այդ սիւնն, որ մեր գաղափարողն ոչ մի գիր չէ կարդացած։ Եւ ըստ որում Կոնիբեր սխալ կարդացած եւ կարծեօք հանած է անոր քանի մի տառերը, յայտնի է հետեւեալ կետերէն։ Ութերորդ տողն ունի ՑՍԻՐԵՒ. այդ գրերէն եթէ ուզենք բառ դուրս հանել, կարելի է բաժնել միայն այսպէս, ՑՍ ԻՐ ԵՒ. առաջինը՝ մասն սեռ. հոլ. բառի մի, միջինն՝ արդէն

* Ի տպ. Եղ. 208 էջէն, 5 տողէն՝ մինչեւ յէջ 217, տող 13։

յայտնի, եւ վերջինը՝ չաղկապ կամ մասն ուրիշ բառի։ Սակայն իր եզական՝ սխալ կը թուի մեզ, զի հին լեզուն սովորաբար յոգնակի կը գործածէր զայն նոյն իսկ եզական իմաստիւ, եւ ինքն Եղիշէն միշտ յոգնակի գործածած է *. եւ նախորդ բառն՝ որ ըստ 8Ս յանգին պիտի լինի յոգն. սեռ. յատկացուցիչ, աւելի պատշաճապէս յոգնական կ'ուզէր յատկացեալը։ Ցայտնագոյն սխալ է երկոտասաներորդ տողի ԼԸՆՑ ընթերցուածը. չէ կարելի ԼԸՆ բառի մի վերջին վանկն համարել, զի այդ գրչագիրը սովոր չէ ը գործածել ոչ միայն տողի մէջ, այլ եւ ոչ ի գրադարձս։ Տարակուսական է վեշտասան տողի ԼԵՑԵԱ յանգն այլ։ Արդ, էջիս այդպիսի ընթերցուածոց վերայ հիմնուած բնագրական տարբերութիւնն այլ ըստ այնմ ընդունելի է։

Նոյն էջի երկրորդ սիւնակին երկրորդ տողը կը սկսի՝ «(պատե)ՐԱԶՄԻՆ ոչ սակաւ նախճիրս ի տեղւոյն գործէր ի մեծ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ» (տպ. 208). մի խօսքի մէջ կրկնուած է պատերազմին բառն՝ որ անպատեհ է. այլ եւ չէ կարելի առաջինը կետով զատել յաջորդ բառերէն՝ որք իրենցմէ յառաջ դեռ ուրիշ բառ (անուն բային) կ'ուզեն իմաստին լրման համար, ինչպէս կայ տպագրին մէջ. եւ վերջապէս մեր գաղափարողն այլ չէ կրցած կարդալ առաջին «. . . րազմին». եւ կրնանք

** Տես յէջս 5, 6, 22, 5, 6, 7, 34, 80, 100 եւ այլն, կրկին իմաստիւ։

ըսել՝ թէ Կոնիբեր սխալ կարդացած է, փոխանակ բնագրին «(Նիզակա) ԿՑԱՒՔՆ» բառին։ Մետասաներորդ տողին ընթերցուածն է՝ ՈՒ ՀԱՍԱՆԷՐ ՄԱՆՈՒԿԵՒ, փոխանակ տպ. «բազմաց օրահասք մահու հասանէին. մանաւանդ» (208). իսկ մեր գաղափարողն յետ տասներորդ տողի «կարճատէր» բառին՝ միջոց կը թողու («բազմաց օրահասք մահ» կտորին համար), եւ մետասանը կը կարդայ՝ ԿԻ ՀԱՍԱՆԷՐ ՄԱՆԱՒԱՆԴ. վերջին բառն որ համաձայն է տպագրին, Կոնիբեր սխալ կարդացած է. իսկ իր առաջին ՈՒ, որ է կէսը «մահՈՒ» բառին, ուղիղ է քան մեր ԿԻ։

Երկրորդ էջին առաջին սիւնակին մէջ տպագրին (209) երկրորդ տողի «անդադար լինէր» բառերէն մինչեւ եօթնեւտասներորդ տողը, ապա քսաներորդն եւ յաջորդը բոլորովին կը պակասին, նա եւ ըստ մեր օրինակութեան։ Տպագրին այդ աւելի տողերը Կոնիբեր կը համարի «յետոսամուտ ընդմիջարկութիւննիր», այս ինքն Նոր յաւելուած, «հաւանականօրէն Ժ դարէն ետքը», եւ տէր Խալաթեան եւս նոյնը կը հաստատէ։ — Այդ հատուածք անպակաս են թէ ճառընտրաց եւ թէ այլ գրչագրաց մէջ։ Եւ մենք կը խորհըրդածենք. եթէ ըստ անգղիացի բանասիրին՝ մինչեւ Ժ դար գրուած հարիւրաւոր (գուցէ եւ հազարաւոր) օրինակները չունէին պակասը, ի՞նչպէս կարելի էր՝ որ յետ Ժ դարու խանգարուած մի օրինակ նլնէր ընջէր

բոլոր առաջնոց ընթերցուածը*. կամ թէ ըսենք, եթէ միոյն այնչափ օրինակներ հասած են մեր ձեռք, ի՞նչպէս կարելի էր որ բաց ի ծանօթ կաղիկաղ պատառկէն՝ այլ յաջորդութիւն չլինէր նախորդ հարիւրաւորաց: Ուստի կը միայ ընդունել՝ թէ յիշեալ մագաղաթը ճառընտրի մասն էր, — եւ իրօք իսկ, զի ընդհանուր ճառընտրաց գործածած վեցերորդ յեղանակի կտոր մ'է, — եւ ճառընտրի հաւաքիչը կամ անուշադրութեամբ դուրս է թողեր յիշեալ տողերը**, կամ քա-

* Այդ երեւոյթը կրնար տեղի ունենալ, եթէ խանգարումն եղած լինէր ոչ թէ ի Ժ, այլ Ե դարուն, անմիջապէս գրութեան ժամանակները՝ երբ Եղիշէի գործը դեռ չէր ծաւալած: Այդպէս պիտի մեկնէինք նաեւ Ղազարայ պատմութեան (412) եւ Թղթոյն (593, 608) նշանաւոր պակասորդքն (արդիւնք անկման թերթից՝ եւ ոչ խանգարման), եթէ ունենայինք նոյնպէս պակասաւոր հին կամ քանի մի իրարմէ անկախ օրինակներ. փոխանակ լոկ մի մի օրինակաց՝ յորոց եղած է մեր տպագիրն (տես յաղդ. Նորին). եւ մեր գրչագրատան երեք օրինակք պատմութեան իրարմէ գաղափարուած են:

** Այդ բանին արդիւնք են մեր նախորդ գլխոյն մէջ Ա, Բ, Գ եւ Դ կոչած ճառընտրաց պակասորդքն եւս ուրեք ուրեք. ինչպէս այս տողերը «եւ ամենայն պատրաստութեամբ, նոքա եւ որ բունքն հաստատուն կացեալ էին ի տեղւոջն» (տպ. 173). «եւ բերդից զոր եւ ոչ առնուլ իսկ ոք կարէր» տպ. 210). ինչպիսի էր եւ «յազգէն քաջբերունեաց հրաշակերտն Ներսեհ եւթն արամբք» (տպ. 210) յայտնի պակասը:

ղուածով մէջ բերած է զԵղիշէ. զի ճառընտրաց մէջ բնագրաց փոփոխութիւնն յապաւմամբ կամ համառօտութեամբ՝ սովորական բան է. Նախորդ գլխոյս մէջ Ե կոչուած օրինակն անարուեստ կերպիւ համառօտած է զԵղիշէ: Եւ քան զայս աւելին այլ կայ, ինչպէս կը գրէ Հյկզ. բռգր. ի ցուցակի մատենից, թէ բնագիրք «ուրեք ըստ բառից եւ ուրեք ըստ իմաստից են օրինակեալ». զոր օրինակ, այդպէս է Եղիշէն յայսմաւուրաց մէջ:

Երրորդ էջին երկրորդ սիւնակին մէջ հետեւեալ տողերը կը կարդանք նոտրագիր յաւելուածովքս. «այլ եւս եւթն հարիւր եւ քառասուն այր, որոց զանուանսն գրեալ են ի դպրութեանն կենաց, որք կատարեցան ի նմին աւուր ի մեծ պատերազմին. եւ միահամուռ լինի հազար երեսուն եւ վեց այր, որք մեծաւ ձգնութեամբ վասն սուրբ հաւատոց ի վերայ սուրբ եկեղեցւոյ պատերազմեալք կատարեցան ի Քրիստոս: Իսկ ի կողմանէ ուրացելոցն...» (տպ. 211): — Այդ յաւելուածքը կան եւ մեր օրինակութեան մէջ. եւ կը պակասին այլ ամէն տեղ եւ ճառընտրաց մէջ: Ատոնք ուրիշ բան չեն՝ բայց եթէ կրկնութիւն նախընթաց տողից իմաստին եւ բառից իսկ. «կատարեցան ի մեծ պատերազմին» եւ «պատերազմեալք կատարեցան», որք այդպէս իրարու կից՝ չեն կրնար նոյն մատենագրին լինել. այլ յայտնապէս ջերմեռանդական յաւելուած մի են նոտրագիրքն ի հա-

ւաքչէ ճառընտրին։ Այսու պէտք է չափել գրչագրի միւս զանազանութիւնքն այլ։

Չորրորդ էջին առաջին սիւնակին մէջ յետ իններորդ տողի «գնդին իւրոյ քան զհայոց» բառից (տպ. 211) լսկոյն կը յարէ ըստ Կո-Նիբերի. «**Իսկ.. ինգին հայոց անինչ յամրոցի, եւ երթեալ զաւրն պարսից զալ ի խաղաղութիւն. որոց եկեալ, հրամայեաց սպանանել ի Նոցանէ երկերիւր եւ տասնեւերեք այր**», եւ այլն (տպ. 216)։ Մերն յետ իններորդ տողին միջոց կը թողու, եւ տասներորդ տողէն կը կարդայ միայն «... **եդին հայոց**». դարձեալ միջոց, եւ մետասաներորդ տողէն՝ «**ոչ յամրոցի**» եւ այլն։— ինչպէս կը տեսնենք, այս տողերու մէջ Եղիշէի վեցերորդ եւ եօթներորդ յեղանակները կը միանան՝ մեր գործածած տպագրին չորս էջերու յապաւմամբ, եւ յաւելմամբ Նոտրագիր տողից։ Հոս բոլորովին ակներեւ է Եղիշէի բնագրին աղաւաղումն. իմաստ մ'է՝ անկապ եւ թերի. Թող առաջին անյարմար եւ սխալ բառերը, առանց որ եւ է յառաջընթաց տեղեկութեան՝ յանկարծ «ամրոց» մի դուրս կ'ելնէ, ուր «երթեալ զաւրն պարսից՝ (կը յորդորէ՞ն, ի՞նչ կ'ընեն, եւ զո՞վ, չկայ ինչ) զալ ի խաղաղութիւն». ահա կը պակասին խօսքին կարեւոր մասունքն. եւ յետոյ միւս գրչ. եւ տպ. օրինակաց «երեքտասանք» կը ռամկանայ «տասնեւերեք*»։ Անգղիացի բանա-

* Այդպէս ունի բառդ եւ մեր նախորդ գլխոյն Ա. ճառընտիրն։

սէրը կը կարծէ՝ թէ հոս «չորս փոքրիկ տողերու մէջ պատմուած կը գտնենք այն՝ որ արդի հրատարակութեանց մէջ մէկուկէս մեծադիր էջ կը լեցնէ». Նա իբր օտարազգի, չէր կարող ճանաչել քաջ՝ թէ այդ շարադրութիւնը եւ լեզուն հայերէն չեն. այլ կամ արդիւնք համառօտելու ջանից անհմուտ ճառընտրողին, եւ կամ թուղթ ընկած էր այն գրչագրէն՝ յորմէ գաղափարուած է այդ, վասն զի պակասորդին չափն այլ համեմատական է։ Իսկ մենք՝ կանոնաւոր լեզուն, իմաստից լրումն եւ հետեւաբար Եղիշէի բուն բնագիրը կը գտնենք միւս օրինակաց մէջ։

Ըսինք՝ թէ այդ էջը կը միացնէ երկու յեղանակները, որոյ համար կ՚ըսէ Կոնիբեր՝ թէ «թերեւս համեմատ է այն ծրագրին՝ զոր Եղիշէ իւր պատմութեան սկիզբը կը նախագծէ, ըսելով՝ թէ իւր պատմելիքը պիտի աւանդէ յեօթն գլուխս», մինչ այսօր ութ գլուխ են. զայս կը հաստատէ եւ տր. Խալաթեան։ — Տր. Կոնիբեր կը թուի չդիտած՝ թէ Եղիշէ կը նախագծէ եւս ինչ որ պիտի պատմէ իւրաքանչիւր գլխոյ մէջ. որ է, ի վեցերորդին «զընդդիմանալն Հայոց պատերազմաւ», եւ յեօթներորդին «զյերկարութիւն իրացն խռովութեան» (6). եօթներորդի նիւթը կը գտնենք ոչ թէ ութերորդի, այլ այժմեան եօթներորդի մէջ. ուրեմն հարկ է որ սա զատ գլուխ լինի վեցերորդէն, ինչպէս եւ է այսօր։ Եղիշէ ութերորդի նիւթը բնաւ չի նախագծեր. ուրեմն սա պէտք էր եօթանց հաշուէն դուրս

լինէր, ինչպէս եւ է։ Իսկ երկու գլխոց միացումն ի Մագաղաթի Կոնիբերին՝ ուրիշ փաստ մ՚է անոր խանգարուած լինելուն։

Նոյն չորրորդ էջի երկրորդ սիւնակի վերջին երկու անընթեռնլի տողից անծանօթ եւ ըստ բանասիրին տարակուսական Թագորդքը՝ ՑԱՆԽՆ եւ ԳՏԵԱ, զորս մեր գաղափարողը չէ կարդացած, ըստ մեզ՝ արդի բնագրի շարունակութեան հետեւեալ երկաթագրերն են. «իսկ սուրբ քահանԱՑՔՆ՝ որ անդ դիպեցան ՑԱՄՈւրան» (տպ. 217)։

Այսպէս՝ տր. Կոնիբերի հրատարակած պատառիկը չէ կարող ապացուցանել Եղիշէի բնագրին խանգարումն յայլ օրինակս։

Բ. Բազմավիպի ծանօթացուցած պատառիկն, որ այժմ մեր ձեռին է, սաստիկ մաշած է՝ ինչպէս կը գրէր եւ անծանօթ հմուտ հրատարակիչն, որոյ կարդացածէն հազիւ քանի մի բառ աւելի կրցանք կարդալ եւ մենք Եղիշէի ընթերցուածէն։ Մագաղաթին առաջին էջը բոլորովին ընթեռնլի է, եւ ունի Ղեւոնդեանց տօնի ընթերցուածոց կէսը. որ է Պետրոսի Ա թղթէն քանի մի տող՝ մինչեւ «ընկալայք զկատարումն հաւատոց ձերոց» (Ա, 9). յետոյ աւետարան՝ ոչ Ղուկ. ըստ տօնացուցին, այլ «Մաթէոսի. Ասէ Յիսուս. յորժամ հալածիցեն զձեզ... զի լաւ էք քան զբազում ճնճղուկս» (Ժ, 23–31)։ Եւ երկրորդ էջի առաջին սիւնակին վերայ կը սկսի Վարդանանց տօնը սոյն վերնագրով. «Հրովտից Լ, սրբոյն Վարդանա». ապա իսկոյն

*կը յօրէ՝ «Վասն քո մեռանիմք զօրհանապազ» սաղմոսը՝ (ԽԳ) քանի մի բառ. յետոյ Եսայեայ ընթերցուածն ըստ տօնացուցին. «Այսպէս ասէ տէր ցիսրայէղ... այդ որ ողորմելոցն է՝ մխիթարեսցէ զնոսա» (ԽԹ, 8–10)։ Ապա կը յօրէ մանր երկաթագրով.* ՎԿԱՅՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՑՆ ՎԱՐԴԱՆԱ ԵՒ ՀՄԱՅԵԿԱ ԵՒ ՎԱՀԱՆԱ ԵՒ ՍԱՀԱԿԱ ՀԱՅՈՑ ՍՊԱՐԱՊԵՏԱՑ *(բառիկ մի անորոշ)* ԱՄԵՆԱՅՆ ՍԲ (°) ԱՐԱՆՑ, ՈՐՔ ՄԵՌԱՆ Ի ՄԵԾ ՊԱ*(տերազմին)* *(բառ մի անորոշ)* ԳԱՐՍԻՑ (°). *եւ կը սկսի Եղիշէի հինգերորդ յեղանակը՝ «Մեծ է սէրն աստուծոյ՝» քանի մի տող**։

*Ո՞յք էին Վարդանայ հետ յիշուած այդ սպարապետք։ Բազմավէպն անդէպ կը համարի կարծել զանոնք Մամիկոնեանի նիզակակիցքը՝ Հմայեակ դիմաքսեան եւ Վահան գնունի, ըստ որում նախ՝ սոքա պարզ զօրավարներ էին եւ ոչ սպարապետք. եւ երկրորդ՝ եթէ նոյն անձինք լինէին, պէտք էր՝ որ նոցա միւս եւ աւելի պատուաւոր նահատակակիցք այլ յիշուէին ի միասին։ Ուստի Հմայեկաւ կ՚իմանայ Վարդանայ եղբայրը, եւ Վահանաւ զարծրունին՝ որ ըստ Թովմ. արծր. կը մեռնի Վարդանայ հետ, եւ Սահակաւ զբագրատունին՝ որոյ մահը կը պատմէ Ղազար, կամ դարձեալ ուրիշ արծրունի*

* *Ասոնց մէջ եղած զանազանութիւնքն այլ լոկ գըրչագրական են. տես անոնց ընդ. տպագրի համեմատութիւնը Բազմավիպի մէջ։*

մի։ եւ կը համարի, թէ ճաշոցի նոյն ընթերցուածին մէջ՝ հետեւաբար եւ Եղիշէի բնագրին մէջ ի սկզբան՝ կային դոցա յիշատակութիւնք։ Զայս կը հաստատէ եւ տր. Խալաթեան. բայց նա Վահանաւ կ'ուզէ Վարդանայ եղբօրորդին՝ մեծ սպարապետն իմանալ, եւ Սահակաւ՝ միայն զբագրատունին։

Առաջնոյն արծրունին լինելու կարծիքն հաստատուած է Թովմայի աւանդութեան վերայ (88–9), որ իբր թէ Բարծումա նեստորականն* Եղիշէի մօտ գալով ի Մոկս՝ ուր կը ճգնէր սուրբը, կը խնդրէ եւ կ'առնու նորա պատմութիւնը տեսնելու համար. յետոյ հալածուելով արծրունեաց Մերշապուհ իշխանէն, իւր հետ կը տանի գիրքը, եւ անոր միջէն ջնջելով «որ ինչ վասն տանն արծրունեաց էր գործոց հանգամանք, եւ որ ինչ օրինակ մարտիրոսութեան Վահանայ», դարձեալ յետ կ'ուղարկէ զայն ի Ռշտունիս՝ ուր տեղափոխուած էր Եղիշէ. բայց նա արդէն վախճանած լինելով, տեսնողք կը կարծեն՝ թէ եղած սրբագրութիւնքը պատմչին են։ — Այս տեղեկութիւնն համոզեր է եւ զայլս հին ժամանակէն. այնպէս՝ որ Եղիշէի պատմութեան գրչագրաց ծայրը յաւելուած կը գտնենք Վահանայ նահատակութեան մասն ի Թովմայէ, իբրեւ լրումն Բարծումայի աւերածին։ Բազմավիպի մէջ Սահակայ (ըստ Բզմ.

* Այդ մարդը կը համարուի օտար եւ հայ պատմագրաց ծանօթ Բարծումայն. (Հ. Միք. Չմչ. Պատմ. Բ, 152)։

արծրունւոյ ուրումն քան բագրատունւոյն) անունն այլ եղծուած կը կարծուի նոյն նեստորականէն։

Այս տեղ երկու խնդիր կայ. մին՝ թէ արդեօք Եղիշէի մէջ ստուգիւ ձեռն մխած է Բարծումա. եւ երկրորդ՝ թէ ո՞յք են մեր մագաղաթի Վահանն, Սահակ եւ Հմայեակ։

Գանք առաջնոյն։ Թովմայի պատմածին համեմատ դեռ մի միայն օրինակ կար Եղիշէի գործոյն, որով եւ Բարծումա կարելի համարեցաւ եւ ձեռնարկեց ջնջել արծրունեաց յիշատակը։ Արդ, եթէ ճաշոցի բազմանուն վերնագրոյն ներքեւ տարբեր բովանդակութիւն ունենար Եղիշէի ընթերցուածը, պիտի հետեւէր՝ թէ Բարծումայի նենգութեան ժամանակ արդէն կային Եղիշէի պատմութեան ուրիշ օրինակներ եւս, որոց չէ հասած նեստորականին տապարը, եւ անոցմէ հանուած է ճաշոցի ընթերցուածը։ Հետեւաբար կամ խանգարման ժամանակ Եղիշէի մի միայն օրինակ լինելն է սխալ, եւ կամ մեր ընթերցուածին տարբեր բովանդակութիւն ունելը։ Եւ կը հաստատուի երկրորդ կէտին սխալն, երբ նկատենք՝ որ եթէ խանգարուածէն զատ լինէին եւ անեղծ օրինակներ, ադոնց գէթ միոյն անվրէպ պիտի հանդիպէր Թովմա (Թ դարուն), որ շատ անգամ չեղածն իսկ կը սիրէ եղած տեսնել։ Այդպիսի օրինակ Ղազար անգամ չէ տեսած Եղիշէէն հազիւ քանի մի տարի յետոյ. ապա թէ ոչ՝ նորա ութ յեղանակաց բովանդակութեան հետ՝ Վահա-

նայ պատմութիւնն այլ առած եւ աւանդած կը լինէր։

Եթէ ոչ պատմութեան, գէթ ճաշոցին՝ որ եկեղեցական մատեան էր՝ շատ օրինակներ պիտի լինէին, եւ կային անտարակոյս. սակայն փարպեցին եւ արծրունեաց պատմիչն ադոնց մէջ եւս նոր բան մի չեն գտած։ Եթէ լինէր նոր բան, մենք անգամ պիտի հանդիպէինք անոր. վասն զի ինչպէս կ'ըսէ Բազմավէպն, այժմեան ճառընտիրք յաջորդութիւն են հին ճաշոցի. այս ինքն անոր մէջ եղած վկայաբանական ընթերցուածքն հանուած եւ առանձին ամփոփուած են՝ աւելի ճոխանալով, եւ կոչուեր տօնական եւ յետոյ ճառընտիր*։ Եւ յիրաւի կը տեսնենք՝ զի նոյն յե-

* Այս մասին քանի մի տեղեկութիւնք թերեւս աւելորդ չլինին։ — Ճառընտրաց սկզբնաւորութիւնը ծանօթ է, ինչպէս եւ Բազմավէպ կ'իմացնէ նոյն տեղ, մինչեւ Ը դար, ի ձեռն Սողոմոնի՝ Մաքենոցաց վանից առաջնորդին։ Ցամին ՈԾԴ (1204) գրուած ճառընտրի մի յիշատակարանին մէջ կը կարդանք. «Սկիզբն պատմութեանց... սրբոց հարց եպիսկոպոսաց եւ վարդապետաց... զորս ի մի կանոն կարգադրութիւն ժողովեալ տռն Աստուծոյ Սողոմոնի՝ Մաքենոցաց ուխտին առաջնորդ... ի թուականին ՃՂԶ (747)... անուանելով Տօնական»։ Սողոմոնի գործը բաց յայլոց կատարելագործեցին գլխաւորապէս ԺԱ–Բ դարուն Գրիգոր վըկայասէր եւ իւր գործակիցն Կիրակոս, որոց ընդարձակ յիշատակարանը կայ հ. Մկ. Աւգերեանի Վարուց սրբոց ԺԱ հատորոյ յաւելուածին մէջ (յէջ ձէ–թ)։ Նոքա

ղանակն է որ կայ հին ճաշոցի պատառկին եւ ճառընտրաց մէջ. բայց սակայն վերջինքդ բաց ի Գնունւոյն՝ չեն ժառանգած ի ճաշոցէ այլ Վահան կամ Սահակ, ոչ այլ մեծ Նորութիւններ, եւ ոչ մեր պատառկին բազմանուն վերնագիրը:

Տօնամակը (ճաշոց) ճոխացուցեր են «ըստ ամենայն տաւնից արժանապէս ի դէպ՝ սաղմոսիւք եւ ընթերցուածովք աստուածախաւսիւք (ս. գրոց)», եւ մեծ մասամբ ի յունարենէ թարգմանուած «վարուք սրբոց» կամ «մարտիրողաւքն» որ է վկայաբանութեամբք, ընդ ամէնն «եւթանասուն եւ վեց»: Յիշատակարանին առաջին մասնէն վեր ի վերոյ ընթերցմամբ մի այնպէս կը թուի՝ թէ վկայաբանութիւնքն այլ Տօնամակի (ճաշոցի) մէջ են գրեր. բայց մտադիր ընթերցումն ցոյց կուտայ՝ թէ «համառօտաքաղ Տաւնամակէն» դուրս էին անոնք. զի մեր հին ճաշոցաց եւ ոչ մին ունի զանոնք, բաց ի պատառկէն՝ որոյ վերայ կը խօսինք: Սակայն եւ աստ մէջ Ղեւոնդեանց ս. ընթերցուածքը կը վերջանան առանց վկայաբանութեան, եւ Վարդանանք միայն ունին Եղիշէի ընթերցուածն՝ յետ սրբազանից: Մի գիրք՝ որ երկու տօնից եւս վկայաբանութիւն ունենայ, դա ճառընտիրն է՝ ինչպէս տեսանք յառաջ. — թող յայսմաւուրքը՝ գործ ԺԳ դարու ի տէր Իսրայելէ եւ յայլոց. — ապա յայտ է՝ թէ ճառընտրի մէջ ամփոփեցան վկայաբանութիւնք: Ուստի եւ մեր ճաշոցի պատառկն իւր պաշտօնը Ղեւոնդեանց վարուց՝ նոցա տօնին ծայրը, Վարդանանց ընդարձակ պատմութեամբ, ինչպէս կը գուշակուի Եղիշէի բնագրին բառացի սկզբնաւորութենէն, եւ իւր ամենամեծ հնութեամբ՝ չէր կարող Վը-

Ուրիշ տեսակէտիւ եւս չէ կարելի Եղիշէի մէջ Վահանայ ջնջումն ընդունել. վասն զի եթէ ըստ Թովմայի զԲարծումա հալածողն էր արծրունեաց Մերշապուհ իշխանն՝ եւ ոչ Վահան, եւ արծրունեաց յիշատակի եղծման պատճառն այդ հալածումն էր, հարկ էր՝ որ նախ հալածողի յիշատակն եղծուած լինէր։ իսկ մենք կը տեսնենք՝ որ Մերշապուհ (կամ Ներշապուհ) պահուած է հոն ամենէն պատուաւոր դրից մէջ եւ յԱւարայրի (122–6, 204). պահուած է նոյնպէս «ի տանէ արծրունեաց» անկելոց սուրբ յիշատակն, եւ ամբողջ ազգատոհմն՝ Շաւասպ, Շնգին, Մեհրուժան, Պարգեւ, Տաճատ եւ Ապրսամ՝ Եղիշէի այնչափ դրուատած խոստովանող նախարարաց մէջ։ Բարծումայի փոխանակ Մերշապհոյ՝ զՎահան ջնջելը կը նշանակէ՝ թէ նորա թշնամութիւնն ամբողջ տոհմին կամ ըստ Թովմ. «տան» հետ էր. եւ ի՞նչպէս կարելի էր՝ որ հալածչին եւ բոլոր զարմին յիշատակը պահէր, եւ ջնջէր անմեղ Վահանայ ոչ միայն գործերը, այլ եւ անունը։

կայսերբ գործոյն հետ նոյն լինել. այլ այն ժամանակաց, երբ դեռ շատ համառօտ էր ճաշոցը (տես ի պարզատոմար Վեն. Ծ), եւ իւր մէջ կրնար տանել քանի մի ճառ կամ վկայաբանութիւն՝ որոց թիւը շատ նուազ էր յայնժամ. ուրեմն ոչ յայս կոյս քան Ը դար կամ Սողոմոնի կարգադրութիւնը, ինչպէս կը կարծէ եւ Բազմավէպ։ Բայց Եղիշեայ ընթերցուածին ի ճաշոց մտնելը կարելի է դեռ յառաջ տանել մինչեւ ի Զ կամ Ե դար։

Դարձեալ ըստ Թովմայի՝ Բարծումա Թըլնամի էր ոչ լոկ արծրունեաց, այլ մեր բոլոր իշխանաց. «Քսութեամբ, կ'ըսէ, զնախարարացն հայոց առ Պերոզ վարելով, բազում ոճիրս արիւնհեղութեան գործեաց». Թըլնամի եւ Քրիստափոր կաթողիկոսին, եւ հետեւաբար ամբողջ ազգին։ Այդպիսի մարդն եթէ ձեռք բերած լինէր Եղիշէի գիրքը, յորում անմահացած են իւր ատելիք, ոչ թէ մի անմեղ անձին անունն եւ գործեր, այլ ամբողջ գիրքն անհետ կ'ընէր։ — Այս բոլորը նկատելով, շատ բռնազբօս եւ անհիմն կը գտնենք Թովմայի կարծիքը, թէպէտ իւր լինի այն, թէպէտ յայլմէ առած. այս ինքն՝ Վահանայ մարտակցութիւնը եւ մահն ընդ Վարդանանց, եւ նորա յիշատակի ջնջումն յԵղիշեայ՝ ի ձեռն օտարի մի, որ հետաքըրքրուած լինի նորա գրած հայ պատմութեամբ, կամ կարօտ կարդալու այն լրերն՝ որք դեռ հասարակաց բերանն էին։

Բազմավէպն իրաւամբ կը խորհրդածէր՝ թէ Եղիշէի հինգերորդ յեղանակի մէջ տեղ մի զգալի է պակասը. Ս. Ղեւոնդի ճառն առանց վերջաբանի է։ Ստուգիւ պակաս էր ոչ միայն ճառն՝ այլ եւ անոր վերջին իմաստը, զոր բարեբախտաբար ամբողջացոյց Անձեւացեաց օրինակն՝ հրատարակուելով յետ տասն տարւոյ։ Եւ պակասորդն էր հետեւեալ նոտրագիր կտորը. «Արդ մինչեւ ի գալուստն երկրորդ՝ նոյն նահատակութիւն կատարի չարչարանօք առաքինեացն եւ ընտրելոց նահատակաց, յո-

րոց միջի եւ դուք էք հանդիսացեալ այսօր, եւ հրաւիրեալ ի լուսաւորչացն ձեր սրբոց հասանել ի գունդս նոցա, եւ ժառանգորդս խոստացելոցն լինել անանց բարութեանց ի Քրիստոսէ Յիսուսէ՝ որ է օրհնեալ յաւիտեանս». ապա կու գայ՝ «Յայս վայր խօսեցաւ» եւ այլն։ Այս նոր տողերը կը պակասին եւ ճառընտաց մէջ. որ նշան է՝ թէ դուրս են ընկեր Եղիշէի ընթերցուածին ի ճաշոց մտնելէն յառաջ։ Այս պակասորդը չէ կարելի Բարծումայի կարծեցեալ խարդախութեան արդիւնք լինել, նախ՝ որ իւր բովանդակութիւնը դուրս է խանգարչին ընծայուած նպատակէն. եւ երկրորդ՝ որ ահա մի օրինակի մէջ նոյն կտորն անթերի կայ, եւ կը վկայէ՝ թէ նեստորականը չէ դպած Եղիշէի գրութեան, այլ գաղափարողաց անզգուշութեամբ պակասեր է մի մասնիկն յայլ օրինակաց։

Բազմավէպ կը յիշեցնէր եւս, թէ ըստ Ղազարայ՝ (206) ս. Ղեւոնդ կը յորդորէր զհայս յիշատակաւ հին սրբոց, եւ նախ Լուսաւորչի «համբերութեան», որ է չարչարանաց, եւ այժմ իւր ճառի մէջ կը պակասի մեր հօր անունը։ Սակայն մեզ դժուարին կը թուի՝ որ մինչ այլոց յիշատակը պահուած է, Լուսաւորչին ջնջուած լինի. Բարծումա իրեն անծանօթ մեր հօր հետ խնդիր չունէր։ Ղազարայ խօսքն եւ ոչ կրնայ ակնարկել ճառին այս ընդհանուր բացատրութիւնը, «հրաւիրեալ ի լուսաւորչացն ձեր սրբոց», յորում ոչ «համբերութիւն» կայ եւ ոչ զայն

ցուցնող չարչարանք։ Մենք այս խնդիրն այլ-
ազգ կը մեկնենք. կը դիտենք՝ որ Փարպե-
ցին կը սիրէ ամենայն ուրեք ս. Լուսաւորչի
անունը առնել եւ գնել. Թէպէտ նա իւր
պատմութեան շրջանէն շատ յառաջ է եւ ոչ
մի կապակցութիւն չունի անոր հետ, բայց
նորա անունն ամենէն յաճախ յիշուածներէն
մին է հոն. իսկ Եղիշէ եւ ոչ անգամ մի կը
յիշէ։ Այս բանն արդիւնք է երկու պատմչաց
ձկտմանց զանազանութեան, զոր լաւ ցոյց
կու տայ մանաւանդ հետեւեալ օրինակը. ուր
Եղիշէ քրիստոնէական ընդարձակ տեսու-
թեամբ կ՚ըսէ նախարարաց համար՝ թէ «ան-
մեղութեամբ ամէնին զուրբ քարոզութիւն
առաքելոցն եւ զմարգարէից» (29), Ղազար
ազգասիրական ամփոփ տեսութեամբ նոցա
բերանը կը դնէ՝ թէ «ծնեալք... ի ձեռն ա-
մենասուրբ վարդապետութեան նահատակին
Գրիգորի եւ սրբոյն զաւակի» (142,7)։ Մենք
կը համարինք՝ թէ նոյն ձկտմամբ տեսեր է
նա Լուսաւորչի յիշատակը եւ ս. Ղեւոնդի
ճառին մէջ՞։

Բայց եթէ Եղիշէ բնաւ չէ գրած Վահա-
նայ արծրունւոյ վերայ, ո՞վ կամ ուստի՞ էր
ուրեմն Թովմայի յիշածը։

Նորա անունն առաջին անգամ նոյն պատ-
մըչին քով կը գտնենք. ըստ իրեն՝ Նախա-
րարք «խորհեցան թագաւորեցուցանել զնա
ի վերայ հայոց» (86) իբրեւ քաջ եւ մեծի-
մաստ ոմն. սակայն յետոյ անմիաբան լինե-
լով, նորա հետ գնացին հնազանդեցան Վար-

դանայ։ Եւ թէ մեծ պատերազմին մէջ նա երկրորդ էր յետ սպարապետին, եւ ներկայացուցիչ իւր տոհմին։ Վահանայ ընծայուած այդ պատիւը կը ցուցնէ՝ թէ այն ժամանակ նա արծրունեաց տանուտէրն էր. զի չէր կարող սեպուհ մի քան զիւր նախարարը բարձրապատիւ լինել։ Սակայն Եղիշէ եւ Ղազար յայնժամ տանուտէր կը ճանաչեն զՄերշապուհ. առաջինը կը կոչէ զնա «իշխան արծրունեաց», եւ երկրորդը՝ «տէր արծրունեաց»։ Յաղկերտ աւագ նախարարքն ի դուռն կոչելու ժամանակ՝ նոյն տոհմէն զըՄերշապուհ կը կոչէ. առ Թէոդոս Թղթոյն մէջ երեք իշխանք կը յիշուին յանուանէ՝ որոց մին ինքն է. աղուանից օգնութիւն յղելու ժամանակ հայոց զօրքը յերիս բաժանելով, առաջինը Մերշապհոյ կը յանձնեն «ի պահապան աշխարհին». Աւարայրի մէջ նա կը կարգուի առաջին թեւին զօրագլուխ. խոստովանող նախարարաց մէջ ուրիշ արծրունիներէ յառաջ դասուած է նա։ Եւ այսպիսի հոյակապ մարդ մի Թովմայի պատմութեան մէջ այլ յիշատակ չունի՝ բաց ի հալածելոյ զԲարծումա. — եւ պէտք չէ մոռանալ՝ որ նա կարդացեր է զԵղիշէ, ինչպէս կը յիշէ ինքնին. նոյնպէս եւ զՂազար՝ յորմէ առած է Վահանայ գործերը (91–3). — ըստ իրեն եւս «մեծ իշխան» է նա, բայց կը յիշուի յետ պատերազմին եւ մահուան Վահանայ (գոգցես իբր յաջորդ անոր). իսկ այս նշանաւոր մարդը, զարմանալի բան,

բոլորովին անծանօթ է իւր ժամանակակից պատմչաց, եւ ոչ թէ կրճատուած՝ որոյ անբակելութիւնը տեսանք։ Աւանդութիւնն անգամ՝ յորմէ օգտուեր է Փարպեցին, չէ ճանաչեր զնա եւ աւանդեր պատմչին։ Արդարեւ յայտնապէս կը հակառակի Թովմա առաջնոց, Վարդանանց ապստամբութեան ժամանակ զնա դնելով գլխաւոր գործիչ յարծրունեաց կամ Նախարար՝ փոխանակ Մերշապհոյ. եւ մենք ստիպուելով հաւատալ ժամանակակցաց, եթէ չուզենք բոլորովին ուրանալ իւր յիշած Վահանայ գոյութիւնը, գոնէ անհրաժեշտ կը համարինք հեռացնել զնա Վարդանանց օրերէն, եւ անստուգութեան մատնել։ Շնորհալին եւս չէ ընդուներ զնա Նորահրաշի մէջ։

Սակայն Թովմա իւր մտքէն չէ հնարած Վահանայ պատմութիւնը, այլ կ՚ըսէ՝ թէ գըտած է զայն « ի Համառօտութեան Աբրահամու խոստովանողի » (88)։ Ի՞նչ գիրք է այդ։ — Մեսրովպ երէց (Ժ դարուն) կ՚աւանդէ իւր գրութեան յիշատակարանի մէջ (Սոփ. Զ, 138), թէ իւր գործը, որ է պատմութիւն հայոց, քաղեր է « ի Հայոց մնացորդաց յԱրեւելից գրոց » կամ « յԱրեւելից գրոց՝ ի Հայոց մնացորդացն պատմութեանց »։ Նախորդ դարուն մէջ Թովմա եւս տեսեր է Արեւելեայ գիրքը, « զոր շարագրեաց, կ՚ըսէ, երանելի խոստովանողն Քրիստոսի Աբրահամ ի գեղջէն Արածոյ* » (70), եւ անոր միջէն ցոյց

* Աբրահամ խոստովանողն եւ երէց՝ Զենակս գիւղէն

կու տայ Շմաւոնի վկայութիւնը, այն՝ որ տպուած է ի Սոփերս (Ի, 7–54)։ Երկու պատմչացդ բացատրութիւններէն այս կը հետեւի, թէ կար ճառընտրի ոճով հաւաքածոյ մի զանազան պատմութեանց, որոյ անունն էր Արեւելից գիրք, եւ յորում կային Աբրահամու Թարգմանած վկայաբանութիւնքն. իբրեւ գլխաւոր կամ յառաջադաս նիւթ, որոյ համար այս բացատրութիւնը կ՚ընէ Թովմա, « ի գիրս պատմութեան վկայեղոցն, որ Արեւելեայ ասի գրոցն վերագրութիւն », իբրեւ թէ միայն կամ նախ « վկայելոցն » յատուկ լինէր գիրքը։ Կային դարձեալ անոր մէջ « Մնացորդք հայոց պատմութեանց » զոր գործածեր է Մեսրովպ։ Այդ Մնացորդաց հետ ինչպէս իմաստիւ՝ նոյնպէս եւ նիւթով մի կը կարծենք Աբրահամու Համառօտութիւնը։ Մեսրովպայ գործը « ծաղկաքաղ » է ի Մնացոր-

էր (Դզ. 282 . իսկ յԱրածոյ՝ Աբրահամ սարկաւագն էր (Եղ. 317, Դզ. 229), որ քան զՂեւոնդեանս ութուտասն օր յառաջ նահատակուեցաւ իւր չինակից Սամուէլ երիցու հետ (Եղ. 252, Դզ. 260–1)։ Զայս երկուս Եղիշէն առաջին անգամ ընդհանուր բացատրութեամբ կը կոչէ « երկու քահանայք » (229). նոյն տեղ եւ փարպեցին կը կոչէ՝ « զքահանայսն Արածոյ » (222). գուցէ այս կոչմանէս խաբուելով Թովմա, արածացի սարկաւագը կը չփոթէ ընակացի խոստովանող Թարգմանչի հետ։ Նոյն հանգամանքը չփոթութիւն յառաջ բերած է նա եւ երկու պատմագրաց քանի մի տպագրութեանց անուանց ցանկերու մէջ։

դաց Հայոց կամ ըստ մեզ ի Համառօտութենէ. ապա յայտնի է՝ թէ սա աւելի ընդարձակ էր, եւ կրնար բովանդակել մինչեւ Վահանայ արծրունւոյ վէպ մ՚այլ՝ նորա ժամանակակցաց հետ, եւ աւանդել Թովմայի։ Սակայն այդպիսի առասպելայօդ վէպ մի չէր կրնար Վարդանանց ժամանակակից Աբրահամու գործ լինել. այլ արծրունեաց տոհմի փառաց նախանձաւորի ուրումն, որ գուցէ հանդիպելով անծանօթ Վահան արծրունւոյ անուան մի, փափաքեր է Վարդանանց քաջազանց մէջ խառնել զնա իբրեւ նախարար, չունելով իւր առջեւ զԵղիշէ եւ զՂազար՝ որ հակառակը վկայէին իրեն. եւ կցեր է իւր գրածն Արեւելից գրոց Մնացորդաց հետ կամ խառներ անոր մէջ։ Իսկ Թովմա համարեր է եւ զայն գործ Աբրահամու՝ վկայաբանութեանց թարգմանչին (ինք չարագրիչ կը կարծէ), եւ կոչեր է «Համառօտութիւն Աբրահամու». մինչ հաւանօրէն ամբողջ Հայոց մնացորդքն իսկ կամ Համառօտութիւնն այլոց գործեր էին, եւ Աբրահամ միայն վկայաբանութեանց թարգմանիչ էր։ Այս կարծիքն աւելի կը հաստատուի, եթէ նկատենք՝ որ Մեսրովպ այլ չի ճանաչեր զԱբրահամ իբր հեղինակ Մնացորդաց։

Գ. Սակայն պէտք է պարզել ճաշոցի վերնագրին խնդիրը։ Եթէ անընդունելի է արծրունի Վահանայ — հետեւաբար եւ նոյն տոհմէն Սահակայ մի — գոյութիւնն Եղիշէի հարազատ բնագրի մէջ, ապա յայտնի է՝ թէ ադոնք ճաշոցի եղիշեան ընթերցուածի

մէջ եւս չկային. որով եւ մենք եւս հակամէտ ենք կարծելու՝ որ անոր վերնագրին մէջ յիշուածները լինին մամիկոնեանն Վահան եւ բագրատունին Սահակ. եւ այս այնու մանաւանդ՝ որ ինչպէս վերնագրին «սպարապետաց» մէջ անյարմար էր տեսնել Գնունի կամ Դիմաքսեան սոսկ զօրավարները, նոյնպէս եւ այլ ո՛ եւ է Վահան կամ Սահակ մի որ չեն սպարապետք։ Իսկ մամիկոնեանն Հմայեակ յետ Վարդանայ անկման հրամանատարութիւն ըրաւ (Ղզ. 216). իւր որդին յայտնի սպարապետ է, եւ Բագրատունին՝ մարզպան (Ղզ. 369). որով երեքին այլ ուղղակի կամ անուղղակի կը յարմարի վերնագրին «սպարապետ» անունն։ Եղիշէ զՀմայեակ «երանելի» կը կոչէ, եւ Ղազար «սուրբ». որ նշան է թէ Վարդանանց հետ կը տօնուէր. զի թէպէտ ոչ նոյն օրը, բայց նոյն պատերազմի մէջ մեռաւ վկայութեամբ։ Ղազար «սուրբ» կ՚անուանէ եւ զՍահակ, որ նշան է՝ թէ սա այլ կը յիշատակուէր եկեղեցւոյ մէջ*։ Բայց Վահանայ համար չենք

* Հին ժամանակ քաղաքական նպատակաւ ընդ հեթանոսս պատերազմաց մէջ ընկածներն այլ կը տօնէին երբեմն, ինչպէս ս. Վրթանէս զՎաչէ մամիկոնեան սպարապետ, այս մտածութեամբ՝ որ եթէ թշնամիք տիրէին աշխարհին, «գիւրեանց... զօրէնս սատ արդեւք հաստատէին». եւ այդ չարեաց առաջն առողն արժանի դատեց տօնուելու (Բուզ. Գ, ԺԱ)։ Վարդանանք աւելի իրաւամբ հասան այդ պատուոյն խոյսին յետ անկման. զի

*գիտեր՝ թէ արժանացած է այդ պատուոյն, բայց եթէ ճաշոցէս։*

*Սակայն վերնագիրն ի՞նչ յարնչութիւն ունէր Եղիշեայ ընթերցուածին հետ. արդեօք վերնագրին մէջ յիշուած բոլոր սպարապետաց վարքը նո՞յն պատմիչն էր աւանդած, թէ զանազան պատմիչներէ քաղուած էր ճաշոցի մէջ,*

*Եղիշէ կը գրէ սիւնեցւոյն համար՝ թէ « ոչ յիշեցաւ անուն նորա ի մէջ սրբոց, եւ ոչ մատեան յիշատակ նորա առաջի սուրբ սեղանոյն յեկեղեցւոջն » (247)․ ապա յայտնի է թէ Վարդանանք կը տօնուէին իւր օրերէն սկսեալ։*

*Մեծին Վահանայ ի վերս պարսից դէմ տուած կռուոյն մէջ էր՝ որ ընկաւ վերոյիշեալ « սուրբն » Սահակ. նորա հետ եւ « սուրբն » Վասակ Մամիկոնեան, որոյ երեք հրաշիւք լուսաւորեցան մարտէն յառաջ (Ղզ․ 409)․ թող սոցա միւս նահատակակիցքը նոյն եւ այլ կռուոց մէջ, եւ յատկապէս « սուրբն » Յազդ սիւնի՝ որ գերի կը բռնուի, եւ չուզելով ուրանալ՝ կը գլխատուի։ Հաւանական է՝ որ սոքա եւս կը տօնուէին Վարդանանց օրը, ինչպէս ցոյց կու տայ Սահակայ անունը ճաշոցի պատառին մէջ․ (թէ եւ Յազդ առանձին կը յիշուի ի յայսմ․)։ Եթէ այս կարծեաց հակառակի տօնելի Վարդանանց ՌԼԶ (1036) սահմանաւոր թիւը, պէտք է գիտել՝ որ հնագոյն տօնացոյցք, ճաշոցք, յայսմաւուրք եւ մանաւանդ մեր պատառիկը՝ չունին զայն․ իսկ նորագոյնք կամ նոյնպէս չունին, եւ կամ կը դնեն ԿՌ (60,000) կամ ՌԼԶ, որ նշան է՝ թէ նոր են յաւելուած. զի եւ արդէն սխալ է ԿՌ, եւ սրբացեալ Վարդանանք քան զՌԼԶ « երկերիւր եւ երեքտասան » աւելի են (Եղ․ 216, 65)։*

կամ թէ բոլորին յիշատակութիւն չկար, այլ ոմանց միայն։

Վերնագիրը կ'իմացնէ՝ թէ ընթերցուածին մէջ պիտի պատմէ յիշեալ սպարապետաց «վկայութիւնը», այս ինքն մահը։ Եղիշէի ընդհանուր պատմութեան մէջ Վարդանայ եւ Համայեկայ մահերը կան մինչեւ ցայսօր. բայց Սահակայ եւ Վահանայ ոչ մահերը եւ ոչ անուանքը կան, եւ չէին կրնար լինել. զի Սահակ* կ'ընկնի Վահանայ ապստամբութեան ժամանակ՝ որ պատահեցաւ 482 տարւոյն երկրորդ կիսուն**, եւ Վահան կը մեռ-

* Դա այն Սահակն է, որոյ խնդրանօք՝ կ'ըսէ Խորենացին՝ (Ա. Ա) թէ գրեր է իւր պատմութիւնն ի խոր ծերութեան (Գ, ԿԵ)։ Թովմ. արծր. կը սխալի՝ միացնելով զնա Սահակ ասպետի եւ սպարապետի հետ (82), որոյ մահուան ժամանակ Մովսէս դեռ տղայ էր։ — Մենք հոս չենք փափաքիր պատմահօր մասին մի երկբայականով արժանանալ «պատմական ճշդութիւն որոնողի» պատուոյն։

** Ապստամբութիւնն սկսաւ՝ առիթ առնլով Վախթանգայ հանած շփոթն ի Վիրս՝ «յամի քսաներորդի հինգերորդի Պերոզի» (Ղզ. 358), եւ տեւեց մինչեւ Վաղարշու առաջին տարին, որ է 484ի վերջերը (Ղզ. ՁԸ)։ Պերոզ թագաւորած է ըստ Նոլդեկի — որոյ ժմնա-գր. ցուցակը գործածած ենք միշտ — բուն 459 տարւոյն առաջին կիսուն, յետ յաղթելու իւր եղբօր երկամեայ մարտիւ. Եղիշէ (351) եւ Ղազար (325) եւս նոյն տարին կը հաշուեն նորա գահակալութեան ժամանակը։ Արդ, 459ի Ա կէսը՝ ցուց. 11 հյկ. տարեգլուխն՝ հա-

նի խաղաղութեամբ եւ շատ ուշ քան զնա. իսկ Եղիշէ իւր յառաջաբանին մէջ կը զե-կուցանէ՝ թէ եօթն յեղանակաց մէջ Վար-դանանց պատերազմի շրջանէն անդր պիտի չանցնի. եւ ութերորդն ամփոփ պատմութիւն մ'է: Ոչ միայն իրենց մահուան, այլ եւ ս եւ է գործոյ առթիւ չէին կրնար նոքա յիշուիլ նոյն պատմչէն, զի 451 տարւոյն Վահան դեռ « յոյժ տղայ » էր (Ղզ. 324), նոյնպէս պիտի լինէր եւ նորա ժամանակակիցն Սա-հակ: Եւ որպէս զի Եղիշէ նոցա մահը կա-րենար գրել, պէտք է՝ որ շատ երկար ապ-րած լինէր, եւ արդէն վաղուց գրած ութ յեղանակաց վերայ ուրիշ մի կամ ուրիշներ այլ յաւելած: Իւր նմման թուականը չեն ա-ւանդեր մեզ ոչ յայսմաւուրքն եւ ոչ իւր վա-րուց պատմութիւնն ի Սոփերս (ԺԱ). եթէ մինչեւ Վահանայ օրերն ապրած լինէր, զոր չենք կարող հաւատել, կրնար թերեւս գը-րած լինել նա եւ նորա (անշուշտ գործոց՝ եւ ոչ մահուան) եւ Սահակայ « վկայութեան » վերայ: Բայց իւր վարուց գրիչը (Սոփ.) կ'ի-

շուելով առաջին տարի, նորա « քսաներորդ հինգե-րորդ » տարին կը լինի 482 աւգ. 11 — 483 աւգ. 11. եւ ապստամբութիւնն սկսաւ 482ի աշնան, յետ որոյ « ի հանդիստ ձմերայնոյն մտանէին » (Ղզ. 384), եւ այլն: Հ. Չամչեան զայն 481ին կը դնէ, չգիտեմք ինչու. նոյն-պէս եւ հ. Գաթրճեան ի Տէեղ. Պատմ. եւ տր. Խա-լաթեան անոր կը հետեւի ի Ղ. Փ. Խո. փորձ. Նորին (յէջ 102, ծն. իբր « քան զշատս ստուգագոյն »:

մացնէ՝ թէ Նորա գրոց մէջ գտած է մինչեւ « զքահանայիցն եւ ամենայն սրբոցն (ուխտապահ նախարարաց) մարտսն որ մարտեան եւ պարտեցին զբռնաւորն՝ » . այն է մի բռնաւորի (Յազկերտի) ժամանակ կատարուածը. մինչ Սահակ Պերոզի ժամանակ մեռաւ, եւ Վահան՝ սորա յաջորդաց։ Եղիշէի վարուց գրութեան ժամանակն անյայտ է. սակայն Ասողիկ եւս Ժ դարուն կ'իմացնէ՝ թէ Վահանայ եւ Նորա եղբարց մասին « ուսուցանէ քեզ Ղազար Փարպեցի » (Բ, Բ), եւ Նորա հետ չի յիշեր եւ զԵղիշէ իբր պատմիչ Վահանանց։ Այլ եւ ոչ Սեբէոս Է դարուն գըտեր է աւելի բան « ի ձեռն այլոց՝ » որ է Եղիշէի* գրուած պատմութեան մէջ, բայց մինչեւ այն տեղին՝ յորում կը պատմուի՝ թէ քահանայք « կատարեցին զնահատակութիւնս

* Եւ ոչ Ղազարայ. որովհետեւ Սեբէոս « ի ձեռն այլոց » գրուածը թողլով, կը խոստանայ եւ կը գրէ՝ ինչ որ չէր գրուած նախ քան զինքն. ինչպէս եւ « զայն ամենայն որ ի Պերոզի ժամանակն եղեալ չարութիւն » (Տպ. Կ. պոլ. 1851, յէջ 43). եւ Գ դպր. Ա գլխոյն մէջ կը սկսի նկարագրել Վահանայ գործերը. կ'ընծայէ անոր « երեսուն հազարաւ » պատերազմ մի « ի դաշտին Գերանայ », եւ Պերոզի յաջորդ եւ զՎահան մարզպան կարգող կը դնէ զԿաւատ, մին արտաքոյ եւ միւսն հակառակ Փարպեցւոյն։ Այս բոլորը ցոյց կու տան՝ թէ նա եւս չէ տեսած Ղազարայ պատմութիւնը։ — Զարմանալի՜ բան. որչափ հանրածանօթ է եղեր Եղիշէ մեր մատենագրաց, այնչափ եւ Ղազար սակաւածանօթ։

իւրեանց յԱպր Շահր՝ մերձ ի Նիւշապուհ քաղաքի, ի տեղւոջն՝ որ կոչի Թէարքունի » (43)։ Ապա ուրեմն Եղիշէ ութ յեղանակէն աւելի չէ գրած. այնու մանաւանդ՝ որ ինք Սեբէոս կը սկսի պատմել Վահանայ գործերն իբր դեռ չգրուած յԵղիշեայ։

Պիտի կարծէինք՝ թէ ճաշոցն իւր յիշած սպարապետաց վկայութիւնքը զանազան պատմիչներէ քաղած եւ միացուցած էր, եթէ չլինէին վերնագրին այս բառերը, « որք մեռան ի մեծ պատերազմին » ։ Ոչ Եղիշէ եւ ոչ այլ պատմիչք, եթէ նոցա խօսքերը քաղուած էին հոդ, չէին կրնար գրած լինել՝ թէ Սահակ եւ Վահան մեռան Վարդանանց հետ « ի մեծ պատերազմին » ։ Այս խօսքը եթէ սխալ չենք կարդար, — զի Բազմավիպի մէջ ի ՄԵԾԸ կարդացուեր է ի ՔՍ. եւ ՊԱ-(տերազմին՝) ինչպէս եւ հետեւեալ ՊԱՐՍԻՑ բառերը չեն նշմարուած *, — յայնժամ հարկ է ըսել՝ թէ մեր գրչագրի գաղափարողն է դրեր զայն անգիտութեամբ՝ հակառակ ընթերցուածին. կամ մանաւանդ պէտք է որ բաց յԵղիշեայ՝ ուրիշէն քաղուած չլինէր նոյն ընթերցուածն, որպէս զի գաղափարողն իւր առջեւ չունենալով ճշգրիտ տեղեկութիւն-

* Սակայն այդպիսի ընթերցուածէ մի չնչուած կը թուի մեր մի յայսմաւուրքն (1427 տարւոյն), երբ Վարդանանց տօնին վերնագիր կը դնէ, « Սրբոյն Վարդանա եւ այլ զաւրացն հայոց, որք կատարեցան ի մեծ պատերազմին ի պարսից » ։

քը, կարենար այդ սխալը գործել իւր վեր ի վերոյ ծանօթութեամբ յիշեալ անձանց։

Մեր կարծեօք ամբողջ վերնագիրն իսկ օրինակողին է. եւ զայս կը հաստատէ վերնագրին եւ ընթերցուածոց մէջ եղած ուղղագրական զանազանութիւնը։ Առաջնոյն մէջ յանգի յ տառը միշտ կը պակասի, եւ ընթերցուածոց մէջ միշտ անթերի է։ Եթէ գաղափարողն երկու մասանց եւս սոսկ օրինակիչ լինէր, կամ երկու մասանց մէջ այլ պիտի գրէր յ, եւ կամ ոչ միոյն մէջ պիտի չգրէր. ուրեմն հարկ է՝ որ ադոնց մին նոր լինի։ Վերնագիրն առանց ընթերցուածոց չէր լինէր, բայց ընթերցուածքն առանց այդ վերնագրին կրնային լինել. ուրեմն նոր է վերնագիրը, զոր գրելու ժամանակ հեղինակը (նոյն ինքն մեր գրչագրի գաղափարողը) չէ զգացած գոյութիւնը եւ գրելու պէտքն այն տառին զոր չէր հնչեր, եւ այնպէս զանց է ըրեր ուրիշ շատ օրինակողաց նման. իսկ ընթերցուածքը նիւթապէս օրինակելով, յ տառը՝ զոր գտեր է անոնց մէջ՝ պահեր է։ Եւ արդէն ճառընտրաց մէջ Եղիշէի նոյն ընթերցուածը զանազան վերնագրեր կը կրէ. այդպէս պիտի լինէր եւ հին ճաշոցաց մէջ, վերնագիրը մատնուած լինելով գաղափարողաց կամաց։ Որով մեր օրինակին գաղափարողն այլ իւր կողմանէ անհմտութեամբ միացուցեր է «ի մեծ պատերազմին՝» այլ եւ այլ ժամանակներ ապրած եւ մեռած սպարապետները, զուցէ նոյն օրը տօնուելուն համար, —

զՎահա՞ն այլ խառնելով սրբոց մէջ, — որոց լոկ երկուց վկայութիւնը կը պատմէր Եղիշէի ընթերցուածն, եւ ոչ բնաւ բոլոր հոն յիշատակելոցը։

Դ. Տէր Խալաթեան յետ հաստատուելու Կոնիբերի եւ Բազմավիպի մագաղաթից նորութեանց վերայ, եւ եզրակացնելու այժմեան Եղիշէի ուշ ժամանակի խմբագրութիւնը, կը դնէ նա եւ քանի մի աղբիւրներ իբրեւ «փորձ» եւ «ծրագիր» սոյն խնդրոյ աւելի մշակման համար։ Եւ են, նախ՝ Աստուածաշունչը, եւ յատկապէս Ա եւ Բ Մակաբայեցիք. երկրորդ՝ Եզնիկ. երրորդ՝ ասորի հին վկայաբանութիւնք, եւ առանձինն՝ ս. Շմաւոնի վկայութեան հայ թարգմանութիւնը. չորրորդ՝ բաց յայլոց՝ նա եւ Փիղոնի հայերէն թարգմանութիւնն։

Աստուածաշունչը թուի՝ թէ աղբիւր է քանի մի վկայութեանց՝ զորս գործածած է Եղիշէ։ Իսկ Մակաբայեցւոց մատեաններէն «փոխ է առել կրօնական պատերազմի ընդհանուր գաղափարը, յարմարցնելով իւր գրուածքին հրէից գրքերի մի քանի պատմական պարագաները ու գործող անձինքների նկարագիրները»։ Ուրեմն կրօնական պատերազմի գաղափարը եւ հրէից պատմական պարագայքը դուրս հանելով, պէտք է մտածենք Վարդանանց պատերազմը զուտ աշխարհական. իսկ մերժելով անձանց նկարագիրները, չգիտենք թէ ինչ կերպարանք պէտք է տալ նոցա։ Խալաթեան այդ փոխառու-

թիւններն (ըստ իրեն) կ'ընծայէ ոչ թէ Եղիշէի, այլ յետոյ խմբագրողին. եւ թէ Ղազար «օգտուել է» պատմչին նախնական բնագրէն։ Իսկ արդ մենք փարպեցւոյ քով այլ նոյն գաղափարը, պարագայքը եւ նկարագիրները կը գտնենք, ապա ուրեմն Եղիշէի կարծեցեալ սկզբնական բնագրի մէջ այլ կային նոյներն։ Եւ ոչ թէ յԵղիշեայ միայն առած էր Ղազար կրօնական պատերազմի գաղափարը, այլ ինքնին իսկ ականատես էր Վարդանանց պատերազմին. զի նոյն էր որ Վահանայ ժամանակ նորոգեցաւ մի եւ նոյն նպատակաւ (Ղզ. 357–64)։ Զգիտենք՝ ինչ յաւիտենական վճռով սահմանուած է, որ կրօնական պատերազմը միայն հրէից մէջ հանդիպէր, եւ ուրիշ ազգաց պատմագիրք՝ եթէ այդպիսի բան մի աւանդեն, անոցմէ գաղափարած եւ կցկցած լինին։

Սուտգիր օգտուած է Եղիշէ Մակաբ. մատեաններէն, բայց միայն քանի մի իմաստից եւ բացատրութեանց կողմանէ. մեր բոլոր պատմագրաց — եւ արդէն ամէն քրիստ. հին պատմչաց — սովորական է՝ ս. գրոց ընտելական եւ իրենց պատմութեան յարմար խօսքերը բառացի կամ ազատութեամբ խառնել իրենց գրոց մէջ, որոյ մասին խօսուեցաւ յառաջ։ Սակայն որովհետեւ Եղիշէի՝ օրինակ իմն՝ «դէտ ակն ի վեր համբառնայր Մուշկան» (207) խօսքը նմանութիւն է ս. գրոց «դէտ ակն ի վեր ամբառնայր Եղիազար» (Ա Մկ. Զ, 43) բացատրութեան, չենք կըր-

նար հետեւեցնել՝ թէ ուրեմն Մուշկան աչերն ի գետին սեւեռած կը պատերազմէր, կամ պատերազմին ընթացքը չէր դիտեր բնաւ. այսպէս իմացիր եւ ա՛յլ նմանութեանց մասին*։ Մենք պիտի ըսէինք եւս՝ թէ Եղիշէի ընդհանուր լեզուն նմանութիւն է Մակաբայեցւոց, եթէ չնկատէինք նախ՝ որ Ե դարուն մատենագիր մի չէր կարող եւ կարօտ հիմնովին փոխել իւր խօսած եւ գրած լեզուն եւ ուրիշի նմանեցնել. եւ երկրորդ՝ Մակաբայեցւոց թարգմանիչն իւր լեզուն ինք չստեղծեց, այլ խօսուն բարբառ մ'էր այն ըստ էական մասին, ուստի նոյն դարու ուրիշ մատենագիր մ'այլ կրնար նոյն բարբառէն օգտուիլ, կամ թէ ըսենք՝ նոյն լեզուն ունենալ։ Արդէն Եղիշէի բարբառն սկիզբէն ցվերջ այնպէս անփոփոխ եւ ինքնաբուխ է, որ հարկ է զի բնական լինէր պատմչին եւ ոչ եթէ արուեստական, ապա թէ ոչ՝ ուրիշներ այլ պիտի կարենային այնպէս գրել արուեստիւ։ Արուեստականութեան ջանք մի եւ գործադրութիւնը Մակաբայեցւո՛ց մէջ կը տեսնենք, նոյն ոճերը եւ դարձուածները ստէպ կրկնել, երբեքն մինչեւ ութ հոմանիշ բառեր զետեղել իրարու քով՝ բնագրէն անկախ**, բռնազբօս

* Եղ. 15 — Ա Մկ. Զ 52։ Եղ. 112 — Ա, Բ 24։ Եղ. 116 — Բ, Է 5։ Եղ. 137 — Ա, Ե 53։ Եղ. 176 — Ա, Թ 10։ Եղ. 186 — Ա, Բ 32։ Եղ. 246 — Բ, Թ 9. եւ այլն։

** Ահա օրինակ մի. «Կամեցան կնճանալ ելանել տի-

եւ պարտասիչ — թէ եւ յոյժ ճոխ — շարադրութիւն մի․ ահա այսպէս նոցա թարգմանիչն առեր հեռացուցեր է զլեզուն իւր բնականութենէն․ իսկ Եղիշէ անոր պարզութիւնը չէ ուզեր խախտել նոյն եղանակներով։ Ասոր համար երկու լեզուաց նմանութիւնը բաց ի քանի մի բացատրութիւններէ զոր տեսանք՝ վեր ի վերոյ է, եւ մանրամասն դիտողը մեծ զանազանութիւն կը տեսնէ անոնց մէջ։ — Ոմանք կարծեցին՝ թէ զՄակաբայեցիս Եղիշէն թարգմանած եւ նմանութիւնն անտի ծագած լինի։ Սակայն թող յիշեալ լեզուական զանազանութիւնը, պատմութիւնն իսկ կը հակառակի այդ բանին․ Եղիշէ կը գրէ Վարդանայ համար՝ թէ «տեղեակ էր ի մանկութենէ իւրմէ սուրբ կտակարանաց․ զոր եւ ի ձեռն առեալ զքաջ նկարագիրն Մակաբայեցւոց՝ ընթեռնոյր ի լսելիս ամենեցուն» (182)․ Մակաբայեցւոց գիրքն այլ մին էր այն կտակարանաց՝ որոց տեղեակ էր «ի մանկութենէ»․ Մամիկոնեանի մանկութեան ժամանակ մանուկ էր եւ Եղիշէն՝ իբր կրտսեր թարգմանիչ․ ապա չէր կարող ինք թարգմանած լինել զՄակաբայեցիս, այլ երիցագոյն ոք *։

րել թագաւորել հպարտանալ ամբարտաւանել յողն կալ բարձրապարանոց երեւել ի վերայ երախտաւորաց իւրեանց»․ Գ Մակ․ Գ 12։

* Արարատ հանդէսի մէջ (1896, Թ․, 429, ծն․) կը կարդանք, թէ «Նորայր Բիւզանդացու կարծիքով՝ Մակ․

Եղիշէի լոյս է տուեր եւ Եզնիկ՝ «մազդեզանց դենին վերաբերեալ մասում»։ — Եթէ Վարդանանց պատմիչն Ե դարու մարդ էր, ինչպէս շատ անգամ ցուցինք, եւ իբրեւ զինուորական քահանայ կամ քարտուղար մեծ սպարապետին՝ երկայն տարիներ պարսից հետ յարնչութեան մէջ, ապա անկարօտ էր Եզնկայ՝ նոցա կրօնից հմտանալու համար։ Դարձեալ, մտադիր ընթերցողը կը տեսնէ՝ որ նորա շատ տեղեկութիւնք կը պակասին յԵղծ աղանդոց․ ապա ուրեմն սակաւ ունեցողը չէր կարող շատ ունեցողին աղբիւր լինել։ Հայոց նամակին (յԵղ․) եւ Եզնկայ գործոյն սերտ նմանութիւնն անտի է, զի ինքն Բագրեւանդայ եպիսկոպոսը շարադրեց յիշեալ նամակը, ինչպէս այլուր ցուցած ենք (Բզմ. ՏԱ, 274–7)։

Ասորական վկայաբանութեանց կամ ս. Շմաւոնի վկայութեան հետեւող լինելու կարծիքն այն տարտամ ստուերն է, որ գրական

երեք գրքերը Կորիւնի թարգմանութիւն են»․ եւ այս տեղեկութիւնը կը հանուի նոյն քանասէրի Կորիւն վարդապետ եւ Նորին Թարգմանութիւնք անուն գործէն, որ կը տպուի յԷջմիածին։ Այս կարծիքն հաստատուած կը թուի լեզուի նմանութեան եւ մանաւանդ յատուկ բառից եւ ոճերու վերայ՝ — որոց շատից հանդիպած ենք եւ մենք՝ — որ կան Մակաբայեցւոց եւ Ագաթանգեղայ մէջ․ եւ երկրորդն ի շատ քանասիրաց ընծայուելով Կորեան, առաջնոց թարգմանութիւնն այլ հետեւաբար նոյն անձին ընծայելի կը լինի։

աշխարհի մէջ երբեմն կ'երեւութանայ եւ խուկոյն կը ծածկուի։ Այդպիսի կարծեաց վերայ մենք եւս աւելի բան մի չենք ըսեր հոս, բայց միայն փափաք յայտնել՝ որ ապացուցուէր այն. բայց այնպէս՝ որ միայն ապացուցանողին համար ապացուցուած չլինէր։

Եղիշէի վերջին աղբիւրն էր Փիղոն՝ «ոճերու եւ դարձուածոց» մասին։ — Մենք ցարդ սովորութիւն ունէինք՝ այդ երկու գործերն օրինակ բերել իրարմէ հեռաւորութեան ի հայ լեզուի. իսկ տէր Խալաթեանի յայտնած կարծիքն ստուգիւ անհասկանալի է մեզ։ Գուցէ կ'ուզէ ակնարկել Եղիշէի քանի մի փոխառութիւնքն ի Փիղոնէ, ինչպէս իսկոյն կը սկսի ցոյց տալ, զորս բազմահմուտն Հ. Մկրտիչ Աւգերեան Նորա գործոց (Բանք երեք) ղատիներէն յառաջաբանի մէջ մատնացոյց ըրած է. եւ են չորս տեղիք, մի մի կարճ խմաստներ, եւ ընդարձակ տեղի մ'այլ յէջ 59։ Բայց կարծենք՝ աղոցմով «ոճերու եւ դարձուածոց» աղբիւր չի կրնար համարուիլ նա Եղիշէի. այդ կողմանէ նմանութիւն գտնելու համար անոնց մէջ հարկաւոր է Դիոգենի լապտերն։

Աւելի հետաքրքրիչն այն է, որ յարգելի բանասէրն յիշեալ տեղիքը հայ թարգմանութենէն առնուած համարելով, կը ջանայ որոշել նոյն թարգմանութեան ժամանակը, որպէս զի անոր հետեւեցնէ Եղիշէի պատմագրութեան ժամանակն այլ։ Ահա թէ ինչպէս։ Հյկզ. բառագիրքն զՓիղոն համարած է Եղա-

րու թարգմանութիւն «յերիցագոյն թարգմանչաց», նկատելով որ նորա խօսքերը կը գտնուին բաց յԵղիշեայ՝ նա եւ ուրիշ կրտսեր թարգմանչաց քով. (տես ի նոյն յաջր. Փիղ.)։ Խալաթեան ընդ հակառակն «հակամէտ է կարծելու՝ որ հազիւ թէ Է դարուց շատ վաղ կատարուած լինէր» թարգմանութիւնը. ստուտի եւ այժմեան Եղիշէի «խմբագրութիւնն էլ դնելու է ոչ վաղ քան Է դարում»։ Որովհետեւ «մեր ոսկեղինիկ կամ Ե դարու գրականութեան յատկանիշ չէ կարող համարուիլ հելլենաբանութիւնը» որ կայ Փիղոնի մէջ. եւ թէ նոյն դարու համարուած հեղենաբան գրուածները, զոր օրինակ անյաղթ Դաւթի գործոց մի մասն եւ Գիրք պիտոյից, Է եւ Ը դարուց յատկացնելու հակամէտ են բանասիրաց ոմանք։

Մեր պատասխանն այս է։ Հեղենաբանութիւնն եւ առ հասարակ որ եւ է օտարաբանութիւն այնպիսի պայման մ՚է, որ գոյանալու համար կը պահանջէ հաղորդակցիլ օտար ազգի կամ նորա մատենագրութեան հետ. ժամանակն առանց ադոր չէ կարող լեզու մի օտարին մօտեցնել, այլ միայն հեռացնել իւր նախկին կերպարանքէն։ Արդ՝ մեր նախնիք ո՞ր դարուն աւելի պարապեցան յունաց մատենագրութեամբ քան հինգերորդին մէջ. միայն այդ դարուն էր՝ որ դաս դաս թարգմանչաց գնացին՝ երկար տարիներ անցուցին յոյն մատենադարանաց եւ լեզուի մէջ։ Ապա ուրեմն այդ դարուն շատ հնարաւոր էր հե-

ղենաբանութիւնը մեր մատենագրաց. նոցա մէջ կրնային լինել այնպիսիք, որ անկարանային անարատ պահել մայրենի լեզուն, մանաւանդ թարգմանելու ժամանակ։ Դուլթի գործոց «մի մասն» կը հեռացնեն Ե դարէն. ուրեմն միւս մասն՝ նոյնպէս հեղենաբան՝ նոյն դարուն սեպհական կը մնայ։ Պիտոյից գրոց վերայ բացարձակ կարծիք յայտնելը քիչ մի դժուարին է, զի Ադ. Բաւումգարտներ ի քննադատութեան նոյն գործոյն՝ կը հաստատէ անոր եւ Խոր. պատմութեան մէջ հ. Ցհ. Զոհրապեանի գտած նմանութիւնը*, եւ հետեւաբար նոյն գրոց պատմահօր լինելը. իսկ Խոր. ժամանակին վերայ կասկածող քննադատք դեռ չկարացին միաբանիլ եւ հաստատուն տեղ մի դնել զնա, որով միայն պիտի համարուէին թերեւս հեռացուցած զնա Ե դարէն։ Դիոն. Թրակացւոյ քերականին նոյն դարու թարգմանութիւն լինելը մեզ համար գրեթէ ապահով է**. եւ դա աւասիկ հեղենաբան է։ Ոսկեդարու նախնիք ազդեցութիւն կրած են ոչ միայն յունարենէ, այլ եւ ասորերենէ. ս. Եփրեմի հարազատ գործոց թարգմանութեան Ե դարուն լինելուն վերայ դեռ տարակոյս չէ եղած. նոյն դարուն է Եւսեբեայ եկեղ. պատմութիւնն այլ՝ նոյն իսկ ըստ վկայութեան Խոր. (Բ, Ժ). եւ ահա

* Տես ի յառաջաբանութեան Գրոցն պիտոյից, տպ. յամին 1796 ի Ս. Ղազար։

** Այդ մասին ուրիշ առթիւ կը յուսանք գրել։

խառն են ադոնք ասորաբանութեամբ։ Եթէ վերջինս մուտ գտեր է թարգմանչաց լեզուի մէջ, ինչո՞ւ յունաբանութիւնն այլ չմտնէր։

Հեղենաբանութիւնը «դարու յատկանիշ» կը համարի Խալաթեան, եւ ոչ անհատից։ Եթէ այդպէս լինէր, պէտք էր՝ որ Եղիշէի լեզուն եւս հեղենաբան լինէր Դաւթի եւ Փիղոնի եւ այլոց նման, եթէ անոնց հետ Է—Ը դարուն գրուած լինէր։ Իսկ եթէ մի եւ նոյն ժամանակի մէջ կարելի էր գրել այնպիսի ոսկեղէն հայկաբանութեամբ՝ ինչպէս Եղիշէն է, եւ խուժադուժ հեղենաբանութեամբ՝ ինչպէս յիշեալքն, ինչո՞ւ ուրեմն նոյն բանն Ե դարուն եւս չկարենար պատահել. եւ ինչո՞ւ երեքն այլ Ե դարու գործեր չլինին։

Այս խորհրդածութիւնքը կատարեցինք մենք, որպէս զի ցուցնենք՝ թէ լեզուի կշռով նախնեաց ամէն գործերն յախուռն պէտք չէ կշռել։ Իսկ Փիղոնի հետ մեր հաշիւը շատ պարզ է։ Թող որ չէ կարելի յետ մղել զայն Ե դարէն՝ իւր հեղենաբանութեան համար, արդէն Եղիշէի փոխ առած տեղեաց լեզուն այնչափ հեռի է անորմէ, որ կը հարկադրինք հետեւեցնել՝ թէ նա հայ թարգմանութենէն չէ առած բնաւ զանոնք. — ապա թէ ոչ՝ բառ առ բառ պիտի օրինակէր զայն. — որով եւ իւր գրութեան ժամանակը Փիղոնէն բոլորովին անկախ կը մնայ։ Մեր ըսածին ի հաստատութիւն՝ դնենք հոս փոխառութեանց մին. «Զուգութիւն արդարութիւն ծնաւ . . . անգոյգն աղբիւր է չարեաց» (Փիղ. Ցաղագս

քահանայիցն)․ եւ Եղիշէ՝ «Ասացին ոմանք ի քաջ պատմագրացն. Զուգութիւն է մայր բարեաց, անզուգութիւն ծնող չարեաց» (7)։ Արդ ո՞վ կարող է ցուցնել՝ թէ զայս Եղիշէն հայ թարգմանութեննէն է առեր, եւ ոչ յոյն բնագրէն։

Բայց քան զայս աւելին կայ։ Վարդանանց պատմիչն այդ խօսքը քաղեր է «ի քաջ պատմագրացն»․ Փիղոն մեկնիչ է ս. գրոց, իմաստասէր եւ բարոյախօս, այլ ոչ պատմագիր։ Յիրաւի՝ Աղեքսանդրիոյ հրէիցմէ դեսպան յղուելով առ Գայ. Կաղիգուղա կայսր, գրած է իւր հրեշտակութեան պատմութիւնը, որ այժմ կորած է*. բայց այդ մասնական եւ համառօտ գրութեամբ՝ ուրիշ այնչափ իմաստասիրական գրուածոց հեղինակն ոչ «քաջ պատմագիր» կը լինի եւ ոչ սոսկ «պատմագիր»։ Նոյն իսկ եթէ այդ գործը տեսած լինէր Եղիշէ, Փիղոնի ս. գրոց մեկնութեանն խօսք մի առնլու ժամանակ չէր կարող ըսել՝ թէ «ի պատմագրէ» կ'առնու. վասն զի այդ բացատրութիւնը զայս կը ցուցնէ՝ եւ միայն զայս՝ թէ պատմական գործ մ'էր իւր աղբիւրը։ Աստի ի՞նչ կը հետեւի, եթէ ոչ՝ զի նոյն խօսքը երրորդէ մի առած են թէ Փի-

* Արեւմտեայց քով դեռ կայ «Յաղագս հրեշտակութեան առ Գայիոս» (տպ. Մանգէի)· բայց սա չի համապատասխաններ այն ծանօթութեան՝ զոր Եւսեբի եւ ս. Յերոնիմ ունին առաջնոյն վերայ· ուստի եւ անհարազատ համարելի։

ղո՛ն եւ թէ Եղիշէ։ Եւ ո՞վ կը վստահացնէ զմեզ՝ թէ միւս նման տեղիքն այլ այդ երրորդ աղբերէն չեն քաղած նորա։

Այս բոլորը տեսնելէ յետոյ մենք չենք հասկանար, ի՞նչպէս «անհերքելի կերպով ապացուցվում է Վարդանանց պատմութեան հեղինակի կախումը Փիլոնի հայ թարգմանութիւնից», մինչ բուն բնագրէն կախումն իսկ առհաւաստի է։ Եթէ համարինք իսկ՝ թէ մի կամ միւս փոխառութեան մէջ կախումն ունենայ Փիղոնէն, սակայն նորա ոսկեդարեան չքնաղ լեզուն թոյլ չի կրնար տալ՝ որ քայլ մ՚իսկ հեռացնենք զայն Ե դարէն։ Իսկ լեզուին եւ ոճոյն միակերպութիւնը եւ պատմական ո՛ եւ է յստամուտ նշանաց պակասութիւնը կը ջրեն նորա մէջ օտարի ձեռք մտած լինելու կարծիքը։

Ե. Առանձին ակնարկ մի պարզենք Եղիշէի գրած պատմութեան չափոյն եւ ժամանակին վերայ։

Ինչպէս տեսանք յառաջ, Եղիշէի ամենամերձ պատմիչներն անգամ այնչափ գտած են նորա գործը՝ որչափ մենք։ Նա իսկ իւր յառաջաբանի մէջ կը զեկուցանէ՝ թէ եօթն գլուխ կը գրէ, եւ իւրաքանչիւրի մէջ այս ինչ եւ այն նիւթը, եւ ահաւասիկ մենք ունինք այդ բոլորը։ Հեղինակը զանոնք շարագրելու ժամանակ բնաւ դիտաւորութիւն չունէր ութերորդ մ՚այլ գրելու. եւ եօթներորդին իբր վերջաբան դրաւ այս խօսքը, «Գրեցաւ յիշատակարանս այս», եւ այլն։ Աստի նոյնման

անվաւեր համարած է ութերորդը, կը գրէ Նիրաքլ*, որում կը հակառակի ինքն, ըսելով՝ թէ յառաջաբանի մէջ նիւթոց ցուցակը չի արտաքսեր ութերորդին նիւթը, եւ թէ եօթներորդին վերջին խօսքերը Վասակայ յանցաւորութեան եւ արդար պատժոյն նկատմամբ են։

Մենք Եղիշէի «Գրեցաւ յիշատակարանս» բացատրութեան մէջ աւելի ընդարձակ բան մի կը նկատենք՝ քան Նիրաքլի նկատածը։ Բայց թողլով զայդ, յառաջաբանը սակայն կ'արտաքսէ ութերորդը. վասն զի եօթներորդ եւ վերջին գլխոյն նիւթն է «յերկարումն իրացն խռովութեանն» (6). եւ մենք կը տեսնենք՝ որ խռովութիւնը կը յերկարի եւ միանգամայն կը վերջանայ նոյն եօթներորդ գլխոյն մէջ՝ մարզպանութեամբ Ատրորմզդի, որ «եկն եմուտ յաշխարհն հայոց սիրով խաղաղութեամբ» (228). իսկ այնուհետեւ Ապար աշխարհի անկեան մի մէջ քահանայից ոմանց նահատակութիւնը, որ է ութերորդ յեղանակի նիւթը, Հայաստանի «խռովութեան» մասն չի կազմեր։ Այս պատճառաւ պէտք է՝ որ ութերորդը դուրս լինի Եղիշէի ծրագրէն**։

* Նայման՝ ի Բեռլինեան տարեգիրս գիտնական քննադատութեան (1829, 1830), թէ Եղիշէի անգղ. թարգմանութեան մէջ, չգիտենք։ Եւ Նիրաքլ՝ Վետտերի Հայկական ուսումնասիրութեանց մէջ, թրգ. ի Մխիթ. Վիեն. 1895, յէջ 109, ծան։

** Եթէ աղտոր վերնագրին մէջ կարդանք, «Դարձեալ

ժամանակի ընդհատութեան արդիւնք են նա եւ այդ եւ նախորդ յեղանակաց մէջ եղած փոքրիկ զանազանութիւնքն. ինչպէս, յառաջ խայլընդուրք եւ յետոյ խայլանդուրք, գրա-դաշտական եւ գրադեշտական, Նածրացի եւ Նածարացի՝ ըստ Անձեւացեաց եւ այլ ընտիր օրինակաց։

Սակայն համամիտ չենք եւ ոչ Նայմանի՝ այդ վերջին գլուխը չընծայելու նոյն պատմչին։ Անոր Ղազարայ աղբիւր լինելը, զոր տեսանք նախորդ գլխոյս մէջ, հաստատուն փաստ է Եղիշէի ժամանակ գոյութեան, որով ահա դժուարութիւն չի մնար զայն նոյն պատմչին տալու։ «Հայոց պատերազմին» պատմու-թիւնը խնդրողը զայն ընդունելէ յետոյ՝ կրնար խնդրել որ Ղեւոնդեանց վկայա-բանութիւնն այլ գրէ. որով սա անյիշատակ կը մնար պատերազմի պատմութեան ծրագրի մէջ։ Մարդս մի երկասիրութիւն գրելու ժա-մանակ՝ պարտաւոր չէ ծանուցանել անոր մէջ՝ ինչ որ դիտաւորութիւն ունի կամ դեռ չունի գրել իւր ապագայ կենաց մէջ։ Բայց ուշա-դրութեան արժանի են մանաւանդ ներքին փաստերը. Թող ութերորդ գլխոյն եւ նա-խորդաց մէջ եղած բառից, դարձուածոց եւ

վասն նորին պատերազմին եւ չարչարանաց սուրբ քահա-նայիցն», պէտք է գիտել՝ որ առաջին մասն չի համա-ձայնիր բովանդակութեան, եւ ընդհանրապէս կը պա-կասի մեր գործածած գրչագրաց եւ Անձեւացեաց օ-րինակին մէջ. որով յայտնի է՝ թէ եկամուտ է։

առ հասարակ չարադրութեան նոյնութիւնը՝ զոր ամէն մարդ կրնայ տեսնել, մենք կը ցուցնենք մինչեւ անգամ մի եւ նոյն բացատրութիւնքը եւ իմաստները կրկնուած անոնց մէջ. զոր օրինակ, «առ յոյժ յիմարութեանն» (12, 257). — «ուղղել աւազան» (199, 269). — «ծերն դառնացեալ» (69, 280). — «յանձն իւր տարաբերէր՝ եթէ յո՛ թափեցից զդառնութիւն թիւնից» (12), եւ «առ մղձկել սրտին չգիտէր՝ թէ յո՛ թափէր զթոյնս դառնութեանն» (251). — «իբրեւ զհայր վերակացու համարեալ էր աշխարհականաց քրիստոնէից» (39), եւ «որպէս հայր հաստատուն համարեալ էր ամենայն աշխարհին» (299). եւ այլն։ Այս բոլորը կը վկայեն՝ թէ իրենց աղբիւրը մի է։ Իսկ իբրեւ ոճ, նոյն զգայուն գրիչն է՝ որ եօթներորդ յեղանակին մէջ կը նկարագրէ հայոց անցուցած կեանքն յետ պատերազմին (218–21), եւ ութերորդին մէջ հայ տիկնայց կենցաղը (354–61). եւ եթէ ոմանք ուզեն ո՛ եւ է զանազանութիւն ոճոյ նշմարել, այնչափ պիտի գտնեն՝ որչափ կրնար յառաջ բերել գրչի եւ ժամանակի ընդհատումն։

Վերջին յեղանակը կը բաժնէ Եղիշէ երեք մասանց՝ զատ զատ վերնագրովք. Նահատակութիւն Ղեւոնդեանց, խոստովանութիւն նոցա երկու աշակերտաց, եւ նկարագիր կապեալ նախարարաց եւ նոցա կանանց։ Նախարարաց բաժինը կը հասցնէ մինչեւ Պերոզի հինգերորդ տարին, եւ զանոնք յաջորդ

տարուոյն արձակելու խոստումն (354). եւ կը յարէ. «Բայց ի տեղի այսր ինձ դարձեալ գալ պիտի»։ Այս խօսքը մենք այսպէս կ'իմանանք, թէ վերստին պիտի դառնամ հոս՝ շարունակելու պատմութիւնս։ Իսկ Վիկ. Լանգլուաս ի Հաւաքման պատմչաց հայոց կը թարգմանէ զայն. «Բայց թողունք զայս, (կ'ուզէ ըսել արձակման խնդիրը), զի հարկ է ինձ պատմութեանս թելը դարձեալ բռնել» տիկնայց նկարագրով (հտ. Բ, 249)։ Մեր հասկացմամբ՝ Եղիշէ կը խոստանայ դեռ յառաջ տանել Նախարարա՛ց պատմութիւնը. բայց կը սկսի տիկնայց նկարագիրը, եւ առանց կատարելու իւր խոստումն՝ կը փակէ զայն մի մաղթանօք՝ որ կնիքն է ամբողջ գործոյն։ Այս հանգամանքը կը ցուցնէ՝ թէ իւր խոստումն ուրիշ ժամանակի համար էր. սակայն թուի՝ թէ կեանքը չբաւեց հասնելու իւր նպատակին. որովհետեւ յաջորդ պատմագիրք աւելի բան չեն տեսած, ինչպէս ըսինք յառաջ. եւ ամենէն մերձաւորն իսկ Ղազար, որ մինչեւ այդ կէտը մանրամասն կը հետեւի անոր, իշխանաց դարձը եւ մահը երկու տողի մէջ կ'ամփոփէ, որ ապացոյց է՝ թէ զայն չէր նկարագրած Եղիշէ, քան թէ կորսուելով՝ չէր հասած Փարպեցւոյ ձեռքը։

Գալով Եղիշէի պատմագրութեան ժամանակին, մենք անոր բովանդակութենէն կըրնանք հաւանական ժամանակամիջոց մի հանել՝ քան եթէ որոշ տարի մի։ Առաջին եօթն յեղանակները կը հասնին մինչեւ Վասակայ

դատաստանը եւ մահը։ Նկատելով որ Նախարարք դարձան «յամի վեցերորդի թագաւորութեան Պերոզի» (Ղզ. 332, Եղ. 354), որ է 464 թուականն, յետ «երկոտասան» տարի ի պատժի եւ տարի մի արձակ եւ ի պատուի անցնելոյ (Եղ. 333, 54), հետեւաբար սուննիցւոյ դատը կատարուած կը լինի յամին 452*, տարւոյն սկիզբները՝ «մինչ դեռ ի ձմեռոցին էր թագաւորն» (Եղ. 234)։ Ղազար կը յաւելու՝ թէ նա յետ դատապարտութեան դեռ «կացեալ (է) ի դրանն ամս ինչ կարի վշտագին» (254). ամս ինչ պէտք է համարել երեք կամ չորս տարի, որ է՝ ց454–5. որով եւ Եղիշէ եօթն յեղանակները գրած կը լինի ընդ մէջ 454–7 տարիներու, եւ մի գրչով։

* Փարպեցին հայոց երթը կը դնէ «յերեքտասաներորդում ամի Յազկերտի» (223), այս ինքն 450ին, պատերազմէն տարի մի յառաջ՝ որ յայտնի սխալ է։ Կ. Կոստանեանց ի Հիւսուածին (Գ, 128) գրչագրաց սխալ կը կարծէ զայդ՝ ժգի ժդ ընթերցմամբ. իսկ մենք բուն պատմչին կը համարինք. որովհետեւ նա ուրիշ տեղ մի կը գրէ Նախարարաց համար՝ թէ «հրաման տայր Յազկերտ պահել (զնոսա) անդէն մինչեւ յամն երկոտասաներորդ թագաւորութեան իւրոյ» (256). Նոտարագիր բացատրութիւնդ քանի մի տարւոյ միջոց կը ցուցնէ. եւ եթէ յառաջ փոխանակ երկոտասան գրած լինէր նա հնգետասան (որ է 452 թուն), կամ ժգ (որ. սխալ է), մի՝ կամ ըստ Կոստ. նոյն տարւոյ համար պիտի չկարենար ըսել՝ «մինչեւ յամն երկոտասաներորդ»։

տարւոյն արձակելու խոստումն (354). եւ կը յարէ. «Բայց ի տեղի այսր ինձ դարձեալ գալ պիտի»։ Այս խօսքը մենք այսպէս կ'իմանանք, թէ վերստին պիտի դառնամ հոս՝ շարունակելու պատմութիւնս։ Իսկ Վիկ. Լանգլուաս ի Հաւաքման պատմչաց հայոց կը թարգմանէ զայն. «Բայց թողունք զայս, (կ'ուզէ ըսել արձակման խնդիրը), զի հարկ է ինձ պատմութեանս թելը դարձեալ բռնել» տիկնայց նկարագրով (հտ. Բ, 249)։ Մեր հասկացմամբ՝ Եղիշէ կը խոստանայ դեռ յառաջ տանել նախարարա՛ց պատմութիւնը. բայց կը սկսի տիկնայց նկարագիրը, եւ առանց կատարելու իւր խոստումն՝ կը փակէ զայն մի մաղթանօք՝ որ կնիքն է ամբողջ գործոյն։ Այս հանգամանքը կը ցուցնէ՝ թէ իւր խոստումն ուրիշ ժամանակի համար էր. սակայն թուի՝ թէ կեանքը չբաւեց հասնելու իւր նպատակին. որովհետեւ յաջորդ պատմագիրք աւելի բան չեն տեսած, ինչպէս ըսինք յառաջ. եւ ամենէն մերձաւորն իսկ Ղազար, որ մինչեւ այդ կէտը մանրամասն կը հետեւի անոր, իշխանաց դարձը եւ մահը երկու տողի մէջ կ'ամփոփէ, որ ապացոյց է՝ թէ զայն չէր նկարագրած Եղիշէ, քան թէ կորսուելով՝ չէր հասած Փարպեցւոյ ձեռքը։

Գալով Եղիշէի պատմագրութեան ժամանակին, մենք անոր բովանդակութենէն կըրնանք հաւանական ժամանակամիջոց մի հանել՝ քան եթէ որոշ տարի մի։ Առաջին եօթն յեղանակները կը հասնին մինչեւ Վասակայ

դատաստանը եւ մահը։ Նկատելով որ Նախարարք դարձան «յամի վեցերորդի Թագաւորութեան Պերոզի» (Ղզ. 332, Եղ. 354), որ է 464 Թուականն, յետ «երկոտասան» տարի ի պատժի եւ տարի մի արձակ եւ ի պատուի անցնելոյ (Եղ. 333, 54), հետեւաբար սիւնեցւոյ դատը կատարուած կը լինի յամին 452*, տարւոյն սկիզբները՝ «մինչ դեռ ի ձմերոցին էր Թագաւորն» (Եղ. 234)։ Ղազար կը յաւելու՝ թէ նա յետ դատապարտութեան դեռ «կացեալ (է) ի դրանն աւելի ինչ կարի վշտագին» (254). աւելի ինչ պէտք է համարել երեք կամ չորս տարի, որ է՝ ց454–5. որով եւ Եղիշէ եօթն յեղանակները գրած կը լինի ընդ մէջ 454–7 տարիներու, եւ մի գրչով։

* Փարպեցին հայոց երթը կը դնէ «յերեքտասաներորդում ամի Յազկերտի» (223), այս ինքն 450ին, պատերազմէն տարի մի յառաջ՝ որ յայտնի սխալ է։ Կ. Կոստանեանց ի Հիւսուածին (Գ, 128) գրչագրաց սխալ կը կարծէ զայդ՝ ԺԳի ԺԴ ընթերցմամբ. իսկ մենք բուն պատմչին կը համարինք. որովհետեւ նա ուրիշ տեղ մի կը գրէ նախարարաց համար՝ թէ «հրաման տայր Յազկերտ պահել (զնոսա) անդէն մինչեւ յամն վեշտասաներորդ թագաւորութեան իւրոյ» (256). Նոտարագիր բացատրութիւնդ քանի մի տարւոյ միջոց կը ցուցնէ. եւ եթէ յառաջ փոխանակ երեքտասան գրած լինէր նա հնգետասան (որ է 452 թիւն), կամ ԺԳ (որ. սխալ է), մի՝ կամ ըստ Կոստ. նոյն տարւոյ համար պիտի չկարենար ըսել՝ «մինչեւ յամն վեշտասաներորդ»։

Նմանապէս մի գրչով գրած է ութերորդ յեղանակին երեք մասունքն այլ։ Այս անտի յայտնի է՝ որ ժամանակաւ յետնագոյն դէպքերն՝ ինչպիսի է Աբրահամու վերջին կեանքն եւ մահն՝ յառաջ են դասուած քան զպատմութիւն կապեալ Նախարարաց. յորս չենք կարող եկամուտ տեղափոխութիւն ենթադրել, զի Նախարարաց մասին ծայրը դրուած տիկնայց Նկարագիրն եւ մանաւանդ վերջնոյս յետին տողերը վերջաբան կը կազմեն։ Իսկ գալով ասոնց գրութեան ժամանակին, յայնս յետնագոյն դէպքն՝ ինչպէս ըսինք՝ Աբրահամու մահն է (յէջ 341). սա դարձաւ ի պարսից՝ «յերկոտասաներորդ ամի պատժաւորացն» (Եղ. 333), կամ որ նոյն է՝ «յարձակման» Նախարարաց ի բանտէ (Ղզ. 321), այն է՝ քան զնոսա տարի մի յառաջ, յամին 463. եւ պատմչաց այնուհետեւ նորա կենաց վերայ ըրած նկարագրէն այնպէս կը թուի՝ թէ ապրած է դեռ հինգէն ութ տարի*. որով եւ ութերորդ յեղանակը գրուած յամս 468–71։

* Եղիշէ կը պատմէ նորա համար, թէ «ընտրեաց իւր տեղի մի զատ յամենայն բազմամբոխ ժողովրդոց, եւ առաքինի եղբարբք երիւք կատարեաց զկեանս իւր մեծաւ ճգնութեամբ» (338–9). իսկ Ղազար՝ թէ «ձեռնադրեալ յաստիճան եպիսկոպոսութեան աշխարհին Բզնունեաց, . . . եւ վախճանէր ի նմին կարգի» (322)։ Ի՞նչպէս մեկնելի է այս յետին տարաձայնութիւնս այլ. իրաւունք տալով ցարդ ունեցողի՞ն զայն թէ չունեցողի՞ն։

## Զ

# ԹՈՎՄԱ ԱՐԾՐՈՒՆԻ ՎԱՄՆ ՎԱՐԴԱՆԱՆՑ

*Թովմայի աղբիւրը. — Նորա յիշատակած նոր անձինք եւ տեղեկութիւնք. — Տարաձայնութիւնք ընդ մէջ Թովմայի եւ Յհ. կաթողիկոսի. — Նման անձինք եւ անցք առ Սեբէոսի:*

Մեր միջին դարու պատմագիրք մեծին Վարդանայ վերայ կ'աւանդեն այնպիսի տեղեկութիւններ՝ որք կը պակասին Եղիշէի եւ Ղազարայ քով, եւ որք միանգամայն անտեղի եւ անյարմար են մամիկոնեանի ժամանակին: Այդ տեղեկութիւնք կան քանի մի պատմչաց քով միանգամայն, Յովհաննու կաթողիկոսի, Թովմայի եւ Վարդանայ վրդի. բայց որովհետեւ Տէրպօղոսեան, — որոյ երկրորդ յօդուածին առաջին գլխոյն վերայ զոր թողած էինք՝ կը դառնանք պարզել հոս մեր վերջին ակնարկը, — զԹովմա կ'առնու գլխաւոր աղբիւր, ուստի եւ մենք իրեն կը հետեւինք: Եւ պէտք է գիտել՝ որ արծրունին քան զայլս մանրամասն գրած է մեր քննելի նիւթոց վերայ:

Կը պատմէ Թովմա (ի դպր. Բ, գլ. Ա), թէ Շաւասպ արծրունի ոմն ուրացող՝ միացած Վնդոյ անուն պարսիկ մոգ մարզպանի մի հետ, Պերոզի հաւանութեամբ կու գայ կրակապաշտութիւն ծաւալել Հայաստանի մէջ՝ որմզդական մեհեան մի շինելով յԱրտաշատ։ Զայս տեսնելով Վարդան, «որ էր ամրացեալ ի տորոսականն Ձորայլ» ի կողմանս Մոկաց, զՏաճատ ըշտունի եւ զՎախրիճ անձեւացի յօգնութիւն կոչելով կը սպանէ ըզՇաւասպ, եւ զՎնդոյ եւ նորա որդին Շիրոյ* (կամ Շերոյ՝ ըստ Ցհ. կթղ.) կ'այրեն նոցա շինած մեհենին մէջ ի Դուին։ Այպա Գիւտայ աթոռը կը տեղափոխեն ի Դուին, շինելով հոն ս. Գրիգոր եկեղեցին քարերովը որմզդական մեհենին զոր կ'աւերեն։ — «Սակայն, իրաւամբ կը յարէ Տէրպօղոսեան, Եղիշէի՝ Ղազարի եւ Օրբելեանի ցուցմունքներով՝ մինչեւ Վարդանի մահը, 451 թիւը, Հայաստանում եղել է միայն երկու մարզպան, Վեհմիհրշապուհ եւ Վասակ սիւնի։ Պերոզը եւս թագաւորել է 459 թուին, եւ ոչ թէ 451 թուից առաջ։ Նա եւ գոյութիւն չէ ունեցել Շաւասպ անունով ուրացեալ նախարար»։ Ասոնց վերայ յաւելունք եւս՝ որ Վարդան չէ տեսած զԳիւտ իբր կաթողիկոս. զի երբ նահատակեցաւ նա, ս. Յովսէփ դեռ ազատ կ'ապրէր ի հայս (Եղ. Ղզ.)։

* Մովսէս կաղանկայտուացի եւս կը յիշէ մի «Շերոյ աղուանից իշխան՝» ապրած ի սկիզբն Ը դարու (գիրք Բ, ԺԶ)։

Թովմայի պատմածոց ստուգութեան չափն իմանալու համար հարկ է նախ ստուգել նորա գործածած աղբիւրը։

Ա. Կ. Կոստանեան իւր նախայիշատակեալ Հիւսուածին Գ գրոց մէջ զայնս կը համարի «չնչած թարմ ժողովրդական ոգւով», կամ թէ նոյն իսկ Թովմա զայն «դուրս է գրել Աբրահամ խոստովանողի պատմութիւնից» (յէջ 180), ըստ ակնարկութեան նորին ի վերջ նոյն գլխոյն՝ թէ «պատմի այս ի Համառօտութեան Աբրահամու խոստովանողի» (յէջ 88)։ Իսկ Տէրպօղոսեան ա՛յլազգ կը դատի. նա արծրունւոյն յիշեալ Ա գլխոյն ութ պարբերութիւնքը (ըստ տպ. Կ. պող.) իրենց բովանդակութեան համեմատ կը վերածէ հնգի. 1 = ա. 2 + 3 + 4 = բ. 5 = գ. 6 + 7 = դ. 8 = ե. եւ հաւանաբար ցոյց տալով ա, գ, դ, ե պարբերութեանց զանազան աղբիւրներ, առանց գրաւոր աղբեր կը գտնէ միայն բը, յորում կը բովանդակուին Թովմայի անսովոր պատմածները։ Աբրահամու Համառօտութիւնն յարծրունի պատմչէն աղբիւր նշանակուած է դին՝ ի ծայր սորին. եւ սա զատուած է բէն գով՝ որոյ աղբերք են «առաջնոց պատմագրաց յիշատակարանքն». զբ եւ դ Համառօտութենէն հանուած համարելու համար, կ՚ըսէ քննադատը, պէտք էր գոնէ զդ բի շարունակութիւնը համարել. «բայց այդ անկարելի է». ուստի վերջապէս բը կը պնդէ ժողովրդական աւանդութենէ առնուած լինել։

Այն որ «անկարելի է» Տէրպօղոսեանի համար՝ ըստ մեզ քաջ կարելի է։ Եթէ ուշ դարձնենք Գ. պրք. վերայ, կը տեսնենք որ բոլորովին տարբեր կազմութիւն ունի այն բէն եւ դէն։ Ասոնց բի մէջ Թովմա մանրամասն կը նկարագրէ այն նիւթերն որք չկային Վարդանանց պատմութեան մէջ յԵղիշէն, եւ կը վերաբերէին պատերազմին սկզբան։ Ապա գի մէջ երեքտասան տողով հարեւանցիկ յիշատակութիւն մի կ'ընէ Եղիշէի բոլոր պատմածոց, որք արդէն երկարօրէն գրուած էին «յառաջնոց պատմագրաց ... զոր՝ աւելորդ համարիմ, կ'ըսէ, երկրորդել զմիանգամայն (կարդա՛ զմիանգամ) ասացեալսն»։ Յետոյ դի մէջ դարձեալ յառաջ կը տանի իւր նոր տեղեկութիւնքը Վահանայ մահուան վերայ։ Ուրեմն գի թռուցիկ յիշատակութիւնն ոչ այլ ինչ է, եթէ ոչ իբրեւ սոսկ կապ մի ընդ մէջ մանրապատում տեղեկութեանց բի եւ դի, որք «զառաջին պատմագիրս» չունենալով իրենց աղբիւր, յայտնի է թէ հանուած էին դի ծայրը յիշուած Համառօտութենէն։ Եթէ Թովմա ասորմէ զատ աղբիւր մի ունեցած լինէր բի համար, անկարելի է որ լռէր, ինքն՝ որ միւս պարբերութեանց մէջ կը սիրէ յիշել իւր աղբերքը։

Հարկ իսկ է որ բն այլ Համառօտութենէն լինի. վասն զի Վահանայ արծրունւոյ պատմութիւնն՝ որ կը լինի դի մէջ, բէն կը սկսի. իսկ արդ նորա վարքն ոչ Եղիշէի եւ

ոչ Ղազարայ քով կայ, եւ միանգամայն մի հոգի միայն կրնար ստեղծել եւ պատմել այնպիսի առասպել վէպ մի, ուրեմն դի տեղեկութեանց ընձեռողն աղբիւր էր եւ բի։ Եւ հարկաւոր չէր որ յատկապէս յիշէր ըզՀամառօտութիւնը Նա եւ բի մէջ, քանի որ գի մէջ այլ յիշելով անոր աղբերքը՝ «զառաջին պատմագիրս», աւելորդ համարած է յիշել զայնս Նա եւ Աոյն մէջ՝ որոյ տեղեկութիւնքն այլ ի նոյն պատմագրաց են։

Թովմայի այս գլխէն է, որ ինչպէս խորհրդածութեանցս նախորդ գլխոյն մէջ ըսինք՝ յաւելուած է Եղիշէի գրչագրաց ծայրը. եւ կը սկսի դ. պարբերութենէն, (եւ կը վերջանայ Ե գլխոյն երրորդ պարբերութեամբ ըստ մեր բոլոր գրչագրաց)։ «Այս հանգամանքը, կ՚ըսէ Տէրպօղոսեան, մեզ մտածել է տալիս, նախ՝ որ գրիչները դ. պարբերութեան աղբիւրը վերագրել են միայն դ. պարբերութեան. եւ երկրորդ՝ որ ե պարբերութեան հակասական տեղեկութիւնները նրանք Վարդանի մասին չեն ընդունել»։

Քննադատն հոս այլ չունի իրաւունք։ Զի նախ՝ եթէ գրչագիրք դը չեն առած՝ Աբրահամու չհամարելուն համար, ուրեմն Եը եւ յաջորդ գլխոյն երեք պարբերութիւնքն այլ առած են խոստովանողին համարելուն համար, որ չէ եւ չէին կրնար այնպէս կարծել. ապա ուրեմն անյարմար է Տէրպօղոսեանի առաջին հետեւութիւնը։ Երկրորդ՝ եթէ Վարդանայ վերայ պատմածները չընդունելուն

համար թողեր են ըը, ինչո՞ւ անոր միջէն գէթ Վահանայ մասին գրուածները չեն առեր, որոց ստուգութեան եւս կասկածելու պատճառ չունէին՝ — ինչպէս չէ կասկածեր եւ ինք քննադատը՝ — քանի որ նորա անձնաւորութիւնն ընդուներ են։ Ապա ուրեմն այդպէս մէջ բերելու այլ պատճառ մի պէտք է լինի. եւ է այս, զի գրչագիրք (մանաւանդ թէ գրչագիր մի՝ եւ այլքն յետոյ անոր հետեւելով) ուզեր են ի յիշատակ Վահանայ՝ նորա կենաց կարեւորագոյն մասն՝ նահատակութիւնը միայն յաւելուլ Վարդանանց պատերազմի պատմութեան վերայ, եւ ոչ թէ նորա բովանդակ կենաց մասին տրուած տեղեկութիւնքը հաւաքել, որ արտաքոյ էր ծրագրէն Եղիշեայ։ Իսկ Թովմայի աւանդածները Վարդանայ մասին աւելորդ (դժուար է թէ հակառակաւ) հաշուելով չեն առած։

Այսպէս ուրեմն Վարդանանց մասին տրուած նոր տեղեկութիւնք Աբրահամու ընծայուած Համառօտութենէն առած են թէ Թովմա ըստ իւր պատմելոյ, եւ թէ Յովհաննէս կթղ. (ի գլ. ԺԵ), որ թէ եւ նոյն դարու մէջ՝ բայց քան զնա յառաջ գրելով, չէր կարող անորմէ առնուլ. եւ մինչ կայ գրաւոր աղբիւր, աւելորդ է յաւանդութենէ օգտուած կարծել զնա (զՅովհաննէս)։ Իսկ Վարդան պատմիչ այս վերջնոյս հետեւած է (ԻԷ). այս բանս յայտնի կը լինի իրեն սեպհականելէն նորա թէ պատմական զանազանութիւնքն ի Թովմայէ — որոց մասին յետոյ պիտի խօ-

սինք — եւ թէ գլեզուն տողերով. զայս հե-տաքրքիրք կարող են անձամբ տեսնել մի ակնարկով։

Բ. Եթէ ուրեմն Վարդանայ վերայ տը-րուած նոր տեղեկութիւնքը բղխած են Աբ-րահամու ընծայուած Համառօտութենէն, որոյ առասպելախառն կազմութիւնը ցուցինք մեր նախորդ գլխոյն մէջ, ո՞րչափ հաւատ կարելի է ընծայել աղոնց։ Բոլորովին անդիմադրելի չմարթէր լինել այդ բոլորին միանգամայն ուրացումն. Համառօտութիւնը կամ Հայոց Մնացորդքն ընծայեր է Միսրովբայ ստոյգ եւ չայեկան տեղեկութիւններ, եւ Թովմայի՝ Վահանայ վարուց կեղծիքը. ուրեմն դա խառն էր երկու տեսակէն եւս, լինելով գործ այլ-եւայլ անձանց՝ ինչպէս տեսանք։ Վարդանայ մասին հոն գրուածները չենք կարող ճշմար-տութիւն համարել. այլ եւ ոչ պնդել իբրեւ իսպառ սուտ, երբ կրնանք խեղաթիւրուած ճշմարտութիւն մի գտնել հոն. զի կեղծիքը կրնայ լինել նոր ստեղծելով բան մի, կամ եղածը ծամածռելով. եւ ահա այս երկրորդ տեսակէն է մեր քննածը։

Այսպէս դատեցաւ եւ Տէրպօղոսեան. կը գրէ նա. «Մեզ թուում է՝ թէ Վահանի գոր-ծունէութիւնն է, որ ժողովրդի երեւակայու-թեան մէջ գործողութեան տեղի եւ անձնաւո-րութեան վերաբերմամբ փոխուելուց յետոյ, հանդէս է գալիս մի շարք պատմիչների մէջ յատկացրած Վարդանին». մինչեւ հոս կը հասնէ նա, կը շօշափէ խորհրդաւոր տաճա-

րին դանները, բայց ներս չի մտներ. մանաւանդ թէ բոլորովին կ'ուրանայ Թովմայի յիշած անձինքը՝ զորս ըստ իրեն «ստեղծել է ժողովուրդը». ուստի եւ դոցա ընծայուած գործերը «Ե դարի պատմութիւնը լրացնելու խնդրում իբրեւ ժողովրդական աւանդութիւններ՝ զրկուում են որ եւ է նշանակութիւնից»։

Մենք այլազգ կը խորհինք. ցուցինք՝ թէ այդ տեղեկութիւնք ոչ եթէ ժողովրդենէն՝ այլ գրաւոր աղբերէ կը բղխեն. ուստի եւ սոնց մէջ ճշմարտութեան աւելի չափ մի կը տեսնենք՝ քան ինչ որ քննադատը։ Կ'ընդունինք եւ կը հաստատենք՝ թէ անոնք Վահանայ կամ մանաւանդ Վահանեանց կը յարմարին քան Վարդանայ. բայց միանգամայն կ'ընդունինք եւս թէ յիշեալ անձինքը եւ թէ նոցա գործերը։ Խօսինք նախ անձանց վերայ։

Դոցա մէջ գլխաւորն եւ ամենէն դժուարինն է Վարդան. մենք ասոր վերայ փոքրիկ ծայրատութիւն մի գործելով, այն է յապաւելով վերջին ան մասնիկը, կ'ունենանք Վարդանունը, եւ այդ անուան ներքոյ Վարդանայ եղբօրորդին՝ Հմայեկայ որդին՝ Վահանայ եղբայրը, ժամանակակից Պերոզի* եւ Գիւ-

* Թովմա Պերոզի թագաւորութիւնը սխալմամբ յառաջ կը դնէ քան զՅազկերտին, եւ Վարդանայ մահը վերջնոյս օրով՝ ըստ սովորականին։ Զայս կ'ընէ՝ որպէս զի կարենայ մամիկոնեան նահատակը Պերոզի հետ յարնչութեան մէջ դնել։

տայ։ Հմայեկայ մահուան ժամանակ՝ յամին 451՝ երբ նորա երեք մանր զաւակունքը գերի տարուեցան յարքունիս, չորրորդը Վարդ «էր մնացեալ տղայ ի դայեակս իւր ի Տայս» (Փրպ. 335). այդ ժամանակ եթէ համարինք զնա 2–5 տարւոյ, Վահանայ ապստամբութեան ժամանակ՝ յամին 482՝ կը լինի 33–36 տարւոյ։ Վարդանանց անկմանէն ի վեր՝ ուխտապահ եւ ուրացող կուսակցութեանց մէջ ի հայս կար միշտ գաղտնի պատերազմ մի, յորմէ վերջապէս ապստամբութիւնը ծնաւ (Փրպ. կԳ–կԶ)։ Այդ անցից մէջ անուրանալի է Վարդայ մեծ ձեռնտուութիւնն իւր եղբօր. որ թէ եւ առանձին չյիշուի ի Ղազարայ, բայց հաւաստրապէս իրեն համար այլ է նորա տուած գովեստը չորս եղբարց վերայ. «Լաւագոյնք էին եւ երեւէին յամենայնի, եւ ականաւորք ի խորհրդի, մտաւորք եւ իմաստնագիտք» եւ այլն (337)։ Բայց քան զամէնն աւելի զօրաւոր փաստ մ'է յաջորդելն իւր եղբօր ի մարզպանութեան (Սեբ. Գ, Ա), որ առանց նախընթաց արժանեաց չէր լինէր։

Թովմայի յիշած միւս անձինքն եւ անցք այսուհետեւ շատ լաւ կը պատշաճին Վարդայ հետ։ Նորա գործակիցքն Տաճատ եւ Վախրիճ չեն յիշուիր Վարդանանց օրով. այլ մանաւանդ թէ մեծ պատերազմի ժամանակ ռշտունեաց իշխան էր Արտակ ուրացող, եւ անձեւացեաց՝ Շմաւոն. ապա յայտնի է՝ թէ ուրիշ շրջանի մի կը պատշաճին, Վա-

հանեանց։ Ղազար կը պատմէ՝ թէ Վահան օգնութիւն խնդրեց չորս նշանաւոր նախարարութիւններէ, յորս կը հաշուին եւ յիշեալ երկու տոհմք (385). յԱնձեւացեաց Յոհան սեպուհ կը հետեւի անոր. բայց բուն «իշխանն» Սեւուկ հակառակորդ կը հանդիսանայ (388)։ Անձեւացիք կրկին են ի գահնամակին ս. Սահակայ. ուստի յայտնի չէ թէ Վախրիճ, զոր «տէր» կը կոչէ Թովմա, յաջո՞րդ էր Սեւկոյ՝ որ սպանաւ ի Վահանեանց (Ղզ. 389), թէ իշխան երկրորդ տան, կամ թէ սեպուհ մի։ — Յաւասպ ոչ թէ «գոյութիւն չէ ունեցել», այլ ծանօթ ոմն է. Թովմա ինքնին կը կոչէ զնա «եղբայր Վասակայ հօր Աղանայ արծրունւոյ». եւ իբր այդպիսի, դա կը լինի Յապհոյ պարսկի հետ մականախաղ խաղացողը (Խոր. Գ, ԾԵ. — Թով. 77)։ Յապհոյ թագաւորելէն (յամս 416–20) մինչեւ Վահանայ ապստամբութիւնը՝ որ ժամանակ միայն կարելի է դնել Յաւասպայ եւ Վնդոյի սպանութիւնը, կ'ընեն 66 տարի. որոյ վերայ յաւելլով գոնէ 20 տարի եւս՝ որով կարենար Յապհոյ հետ գործել Յաւասպ, սորա տարիքն 80էն անցած կը լինին 482ին։ Այս հասակի մէջ ապրած եւ ուրանալով ի Վարդայ սպանուելն եթէ ոչ անկարելի, բայց դժուարին է. ուստի մենք աւելի հակամէտ ենք կարծելու զայդ ուրիշ պատմական եւ յետնագոյն Յաւասպ մի, յետ անկման Վարդանանց կապեալն ի դրան պարսից։ Սա հոն երկրորդ կը հաշուի զկնի Մեր-

շապհոյ իշխանի, ուստի եւ անշուշտ յաջորդած անոր. եւ ըստ սովորական բարուց իւր տոհմին՝ «որ դիւրամոռաց զերախտիսն Քրիստոսի համարէին, միայն զկնի փառաց աշխարհիս ընթանային եւ մոգութեան մոլորապաշտութեանն հետեւէին» (Թով. 75), գուցէ դարձոյց ապա իւր դրօշակը։ Արդէն Թովմա արծրունեաց պատմութեան մէջ զայս Շաւասպ անյիշատակ կը թողու. թուի՝ թէ իւր աղբիւրն այլ զսա իւր գործովք հանդերձ միացուցեր էր առաջնոյն հետ։ — Կը մնայ Վնդոյ մարզպան. դա մեծին Վարդանայ օրով չէր կրնար լինել, զի Վասակ էր մարզպանը մինչեւ ի մահ դիւցազնին. եւ ոչ իսկ յառաջ քան զՎասակ, զի Վարդան ապստամբութեան ժամանակ միայն կրնար սպանել զՎնդոյ եւ զայլսն. իսկ մենք գիտենք՝ թէ «աստուածպաշտութիւնն բարձրագլուխ կամակարութեամբ երեւելի լինէր յաշխարհին հայոց՝ ի սկզբան տէրութեանն Շապհոյ արքայից արքայի մինչեւ ցամն երկրորդ* Յազկերտի» (Եղ. 11). ուրեմն այդ մոգ մարզպանն այլ կը յարմարի Վահանեանց ժամանակին. յետ Ատրվշնասպ մարզպանի սպանութեան ի սոցանէ՝ ապստամբութիւնը սանձելու եկաւ ի պարսից Ատրներսեհ զօրավար (Ղզ. 378, 90), անշուշտ իւր հետ բերելով մի նոր մարզպան։ Իրաւացի չէ Տէրպօղո-

* Ուղղելի է Երկոտասաներորդ (որ է 449) ըստ նոյն ինքն Եղ. 31, եւ Ղզ. 106։

(77) մամիկոնեան սպարապետն ի կռուելն ընդ Տաւսապեանց։ Թովմա եւս այլոց պէս կը կոչէ զսա «մարզպան» (79). եւ կը յարէ. «Մշկանս այս փոխանակ Արտաշրի (որ է Արտաշէս որդի Վռամշապհոյ) մեր Թագաւորի մտեալ ունի զաշխարհս՝ հրամանաւ Վռամայ». այս տողերը վրիպած են յոչաց քննադատին։ Յիրաւի Թովմա կը յաւելու եւս՝ թէ էր նա եւ «զօրավար պարսից» (81). բայց այս զարմանալի չէ. մի մարդ կրնար նախ զօրավար լինել եւ ապա մարզպան, կամ անոր հակառակը։ Այն կէտով՝ որ սա յաջորդ է մեր Արտաշրի, կը նոյնանայ Վեհմիհրշապհոյ անձին հետ, որ զուգէ երկու անուն ունէր։ Եթէ այս այսպէս է, ախորժելի է մեզ կարծել՝ թէ նոյն անձն էր նա եւ Նիւսաղաւուրտն Մուշկան՝ սպարապետ պարսից 451ի մեծ պատերազմին մէջ. ուրեմն նախ «մարզպան» եւ ապա «զօրավար»։ — Թովմա զՎնդոյ եւս «մարզպան» կը կոչէ, այս ստոյգ է, եւ «պարսից մոգպետ». ուրեմն երկու մարզպանք։ Այս արդիւնք է Վարդայ ընդ Վարդանայ շփոթուելուն, որով առաջնոյն թէ գործերն եւ թէ գործակիցքն երկրորդին տրուելով, սորա հետ կապուեր են թէ Մշկան կամ Վեհմիհրշապուհ՝ իւր ժամանակակից մարզպանը, եւ թէ Վնդոյ՝ Վարդայ ժամանակակից մարզպանը։ Թովմայի պատմելէն այնպէս կ'երեւի՝ թէ նա զՎնդոյ ուղղակի կամ անուղղակի յաջորդ կը նկատէ Մշկանայ. ուստի անտեղութիւն

եւ չփոթութեան սկիզբները դարձաւ փախըս-
տեամբ (Ղզ. 384, 98). բայց մենք զինք
չենք տեսներ իւր եղբարց հետ գնացած ի
վիրս՝ մասնակցելու հայոց համար բազմաչխատ
պատերազմին (Ղզ. 406–12), այլ մնացած
զՀայաստան պահելու։ Ահա այս ժամանակ
կը կարծենք նորա դիմելն առ Տաճատ եւ
Վախրիճ եւ բախիլը Շաւասպեանց հետ։
Ձայս իբրեւ մասնական դէպք մի — զի բուն
բանակն ի վիրս կը գործէր — չէ յիշած Փար-
պեցին. սոր վերայ պէտք չէ զարմանալ, երբ
չէ յիշած եւ ոչ հայրապետական աթոռոյն
յայտնի փոխադրութիւնը։

Գ. Թովմայի եւ միւս պատմագրաց մէջ՝
ըսինք յառաջ՝ կան ինչ ինչ զանազանութիւնք։
Ահա ադոնք ըստ Տէրպօղոսեանի. Յովհան-
նէս եւ Վարդան պատմին «Վնդոյին եւ
Շաւասպին աւագ Նախարար են յիշում,
. . . իսկ Աշկանին՝ մարզպան։ Արանց գոր-
ծունէութեան կենդրոնը Դուինն էր։ Իսկ
Թովման Վնդոյին յիշում է ոչ իբրեւ հայ
Նախարար, այլ պարսից մոգպետ՝ . . .
մարզպանի իշխանութիւնով . . . իսկ Աշկա-
նին յիշում է ոչ իբրեւ մարզպան, այլ զօ-
րավար։ Արանց գործունէութեան կենդրոնը
Արտաշատն է եւ ոչ Դուինը»։

Մենք այդչափ զանազանութիւն չենք գըտ-
ներ՝ որչափ քննադատը. յիշեալ անձներէն
առնունք նախ զԱշկան։ Աս եւս ժամանա-
կակից է Վարդանայ ըստ երից պատմչաց,
զոր ըստ Յովհաննու «փախստական առնէր»

(77) մամիկոնեան սպարապետն ի կռուելն ընդ Շաւասպեանց։ Թովմա եւս այլոց պէս կը կոչէ զսա «մարզպան» (79). եւ կը յարէ. «Մշկանս այս փոխանակ Արտաշրի (որ է Արտաշէս որդի Վռամշապհոյ) մեր Թագաւորի մտեալ ունի զաշխարհս՝ հրամանաւ Վռամայ». այս տողերը վրիպած են յոչաց քննադատին։ Յիրաւի Թովմա կը յաւելու եւ՝ թէ էր նա եւ «զօրավար պարսից» (81). բայց այս զարմանալի չէ. մի մարդ կրնար նախ զօրավար լինել եւ ապա մարզպան, կամ անոր հակառակը։ Այն կէտով՝ որ սա յաջորդ է մեր Արտաշրի, կը նոյնանայ Վեհմիհրշապհոյ անձին հետ, որ զուցէ երկու անուն ունէր։ Եթէ այս այսպէս է, անհօրժելի է մեզ կարծել՝ թէ նոյն անձն էր նա եւ Նիւսաղաւուրտն Մուշկան՝ սպարապետ պարսից 451ի մեծ պատերազմին մէջ. ուրեմն նախ «մարզպան» եւ ապա «զօրավար»։ — Թովմա զՎնդոյ եւս «մարզպան» կը կոչէ, այս ստոյգ է, եւ «պարսից մոգպետ». ուրեմն երկու մարզպանք։ Այս արդիւնք է Վարդայ ընդ Վարդանայ շփոթուելուն, որով առաջնոյն թէ գործերն եւ թէ գործակիցքն երկրորդին տրուելով, սորա հետ կապուեր են թէ Մշկան կամ Վեհմիհրշապուհ՝ իւր ժամանակակից մարզպանը, եւ թէ Վնդոյ՝ Վարդայ ժամանակակից մարզպանը։ Թովմայի պատմելէն այնպէս կ՚երեւի՝ թէ նա զՎնդոյ ուղղակի կամ անուղղակի յաջորդ կը նկատէ Մշկանայ. ուստի անտեղութիւն

րին դռները, բայց ներս չի մտներ. մանաւանդ թէ բոլորովին կ'ուրանայ Թովմայի յիշած անձինքը՝ զորս ըստ իրեն «ստեղծել է ժողովուրդը». ուստի եւ դոցա ընծայուած գործերը «Ե դարի պատմութիւնը լրացնելու խնդրում իբրեւ ժողովրդական աւանդութիւններ՝ զրկուում են որ եւ է նշանակութիւնից»։

Մենք այլազգ կը խորհինք. ցուցինք՝ թէ այդ տեղեկութիւնք ոչ եթէ ժողովրդենէն՝ այլ գրաւոր աղբերէ կը բղխեն. ուստի՝ եւ ասոնց մէջ ճշմարտութեան աւելի չափ մի կը տեսնենք՝ քան ինչ որ քննադատը։ Կ'ընդունինք եւ կը հաստատենք՝ թէ անոնք Վահանայ կամ մանաւանդ Վահանեանց կը յարմարին քան Վարդանայ. բայց միանգամայն կ'ընդունինք եւս թէ յիշեալ անձինքը եւ թէ նոցա գործերը։ Խօսինք նախ անձանց վերայ։

Դոցա մէջ գլխաւորն եւ ամենէն դժուարինն է Վարդան. մենք ասոր վերայ փոքրիկ ծայրատութիւն մի գործելով, այն է յապաւելով վերջին ան մասնիկը, կ'ունենանք Վարդ անունը, եւ այդ անուան ներքոյ Վարդանայ եղբօրորդին՝ Հմայեկայ որդին՝ Վահանայ եղբայրը, ժամանակակից Պերոզի* եւ Գիւ-

* Թովմա Պերոզի թագաւորութիւնը սխալմամբ յառաջ կը դնէ քան զՅազկերտին, եւ Վարդանայ մահը վերջնոյս օրով՝ ըստ սովորականին։ Զայս կ'ընէ՝ որպէս զի կարենայ մամիկոնեան նահատակը Պերոզի հետ յարնչութեան մէջ դնել։

տայ։ Հմայեկայ մահուան ժամանակ՝ յամին 451՝ երբ նորա երեք մանր զաւակունքը գերի տարուեցան յարքունիս, չորրորդը Վարդ «էր մնացեալ տղայ ի դայեակս իւր ի Տայս» (Փրպ. 335). այդ ժամանակ եթէ համարինք զնա 2–5 տարեայ, Վահանայ ապստամբութեան ժամանակ՝ յամին 482՝ կը լինի 33–36 տարեայ։ Վարդանանց անկմանէն ի վեր՝ ուխտապահ եւ ուրացող կուսակցութեանց մէջ ի հայս կար միշտ գաղտնի պատերազմ մի, յորմէ վերջապէս ապստամբութիւնը ծնաւ (Փրպ. ԿԳ–ԿՋ)։ Այդ անցից մէջ անուրանալի է Վարդայ մեծ ձեռնտուութիւնն իւր եղբօր. որ թէ եւ առանձին չյիշուի ի Ղազարայ, բայց հաւաստապէս իրեն համար այլ է նորա տուած գովեստը չորս եղբարց վերայ. «Լաւագոյնք էին եւ երեւէին յամենայնի, եւ ականաւորք ի խորհրդի, մտաւորք եւ իմաստնագիտք» եւ այլն (337)։ Բայց քան զամէնն աւելի զօրաւոր փաստ մ'է յաջորդելն իւր եղբօր ի մարզպանութեան (Սեբ. Գ, Ա), որ առանց նախընթաց արժանեաց չէր լինէր։

Թովմայի յիշած միւս անձինքն եւ անցք այսուհետեւ շատ լաւ կը պատշաճին Վարդայ հետ։ Նորա գործակիցքն Տաճատ եւ Վախրիճ չեն յիշուիր Վարդանանց օրով. այլ մանաւանդ թէ մեծ պատերազմի ժամանակ ռշտունեաց իշխան էր Արտակ ուրացող, եւ անձեւացեաց՝ Շմաւոն. ապա յայտնի է՝ թէ ուրիշ շրջանի մի կը պատշաճին, Վա-

րին դռները, բայց ներս չի մտներ. մանաւանդ թէ բոլորովին կ'ուրանայ Թովմայի յիշած անձինքը՝ զորս ըստ իրեն «ստեղծել է ժողովուրդը». ուստի եւ դոցա ընծայուած գործերը «Ե դարի պատմութիւնը լրացնելու խնդրում իբրեւ ժողովրդական աւանդութիւններ՝ զրկուում են որ եւ է նշանակութիւնից»:

Մենք այլազգ կը խորհինք. ցուցինք՝ թէ այդ տեղեկութիւնք ոչ եթէ ժողովրդենէն՝ այլ գրաւոր աղբերէ կը բղխեն. ուստի եւ ասոնց մէջ ճշմարտութեան աւելի չափ մի կը տեսնենք՝ քան ինչ որ քննադատը: Կ'ընդունինք եւ կը հաստատենք՝ թէ անոնք Վահանայ կամ մանաւանդ Վահանեանց կը յարմարին քան Վարդանայ. բայց միանգամայն կ'ընդունինք եւս թէ յիշեալ անձինքը եւ թէ նոցա գործերը: Խօսինք նախ անձանց վերայ:

Դոցա մէջ գլխաւորն եւ ամենէն դժուարինն է Վարդան. մենք ասոր վերայ փոքրիկ ծայրատութիւն մի գործելով, այն է յապաւելով վերջին ան մասնիկը, կ'ունենանք Վարդանունը, եւ այդ անուան ներքոյ Վարդանայ եղբօրորդին՝ Հմայեկայ որդին՝ Վահանայ եղբայրը, ժամանակակից Պերոզի* եւ Գիւ-

* Թովմա Պերոզի թագաւորութիւնը սխալմամբ յառաջ կը դնէ քան զՅազկերտին, եւ Վարդանայ մահը վերջնոյս օրով՝ ըստ սովորականին: Զայս կ'ընէ՝ որպէս զի կարենայ մամիկոնեան նահատակը Պերոզի հետ յարնչութեան մէջ դնել:

տայ։ Հմայեկայ մահուան ժամանակ՝ յամին 451՝ երբ նորա երեք մանր զաւակունքը գերի տարուեցան յարքունիս, չորրորդը Վարդ «էր մնացեալ տղայ ի դայեակս իւր ի Տայս» (Փրպ. 335). այդ ժամանակ եթէ համարինք զնա 2–5 տարւոյ, Վահանայ ապստամբութեան ժամանակ՝ յամին 482՝ կը լինի 33–36 տարւոյ։ Վարդանանց անկմանէն ի վեր՝ ուխտապահ եւ ուրացող կուսակցութեանց մէջ ի հայս կար միշտ գաղտնի պատերազմ մի, յորմէ վերջապէս ապստամբութիւնը ծնաւ (Փրպ. ԿԳ–ԿԶ)։ Այդ անցից մէջ անուրանալի է Վարդայ մեծ ձեռնտուութիւնն իւր եղբօր. որ թէ եւ առանձին չյիշուի ի Ղազարայ, բայց հաւասարապէս իրեն համար այլ է նորա տուած գովեստը չորս եղբարց վերայ. «Լաւագոյնք էին եւ երեւէին յամենայնի, եւ ականաւորք ի խորհրդի, մտաւորք եւ իմաստնագիւտք» եւ այլն (337)։ Բայց քան զամէնն աւելի զօրաւոր փաստ մ'է յաջորդելն իւր եղբօր ի մարզպանութեան (Սեբ. Գ, Ա), որ առանց նախընթաց արժանեաց չէր լինէր։

Թովմայի յիշած միւս անձինքն եւ անցք այսուհետեւ շատ լաւ կը պատշաճին Վարդայ հետ։ Նորա գործակիցքն Տաճատ եւ Վախրիճ չեն յիշուիր Վարդանանց օրով. այլ մանաւանդ թէ մեծ պատերազմի ժամանակ ռշտունեաց իշխան էր Արտակ ուրացող, եւ անձեւացեաց՝ Շմաւոն. ապա յայտնի է՝ թէ ուրիշ շրջանի մի կը պատշաճին, Վա-

հանեանց։ Ղազար կը պատմէ՝ թէ Վահան օգնութիւն խնդրեց չորս նշանաւոր նախարարութիւններէ, յորս կը հաշուին եւ յիշեալ երկու տոհմք (385). յանձնւեցաւ Յոհան սեպուհ կը հետեւի անոր. բայց բուն «իշխանն» Սեւուկ հակառակորդ կը հանդիսանայ (388)։ Անձնւացիք կրկին են ի գահնամակին ս. Սահակայ. ուստի յայտնի չէ թէ Վախրիճ, զոր «տէր» կը կոչէ Թովմա, յաջորդ էր Սեւկոյ՝ որ սպանաւ ի Վահանեանց (Ղզ. 389), թէ իշխան երկրորդ տան, կամ թէ սեպուհ մի։ — Շաւասպ ոչ թէ «գոյութիւն չէ ունեցել», այլ ծանօթ ոմն է. Թովմա ինքնին կը կոչէ զնա «եղբայր Վասակայ հօր Աշոտնայ արծրունոյ». եւ իբր այդպիսի, դա կը լինի Շապհոյ պարսկի հետ մականախաղ խաղացողը (Խոր. Գ, ԾԵ. — Թով. 77)։ Շապհոյ թագաւորելէն (յամս 416–20) մինչեւ Վահանայ ապստամբութիւնը՝ որ ժամանակ միայն կարելի է դնել Շաւասպայ եւ Վնդոյի սպանութիւնը, կ՚ընեն 66 տարի. որոյ վերայ յաւելլով գոնէ 20 տարի եւս՝ որով կարենար Շապհոյ հետ գործել Շաւասպ, սորա տարիքն 80էն անցած կը լինին 482ին։ Այս հասակի մէջ ապրած եւ ուրանալով ի Վարդայ սպանուիլն եթէ ոչ անկարելի, բայց դժուարին է. ուստի մենք աւելի հակամէտ ենք կարծելու զայդ ուրիշ պատմական եւ յետնագոյն Շաւասպ մի, յետ անկման Վարդանանց կապեալն ի դրան պարսից։ Սա հօն երկրորդ կը հաշուի զկնի Մեր-

շապհոյ իշխանի, ուստի եւ անշուշտ յաջորդած անոր. եւ ըստ սովորական բարուց իւր տոհմին՝ «որ դիւրամոռաց զերախտիսն Քրիստոսի համարէին, միայն զկնի փառաց աշխարհիս ընթանային եւ մոգութեան մոլորապաշտութեանն հետեւէին» (Թով. 75), գուցէ զարձոյց ապա իւր դրօշակը։ Արդէն Թովմա արծրունեաց պատմութեան մէջ զայս Շաւասպ անյիշատակ կը թողու. թուի՝ թէ իւր ազգիւրն այլ զսա իւր գործովք հանդերձ միացուցեր էր առաջնոյն հետ։ — Կը մնայ Վնդոյ մարզպան. դա մեծին Վարդանայ օրով չէր կրնար լինել, զի Վասակ էր մարզպանը մինչեւ ի մահ դիւցազնին. եւ ոչ իսկ յառաջ քան զՎասակ, զի Վարդան ապստամբութեան ժամանակ միայն կրնար սպանել ըզՎնդոյ եւ զայլսն. իսկ մենք գիտենք՝ թէ «աստուածպաշտութիւնն բարձրագլուխ կամակարութեամբ երեւելի լինէր յաշխարհին հայոց՝ ի սկզբան տէրութեանն Շապհոյ արքայից արքայի մինչեւ ցամն երկրորդ* Յազկերտի» (Եղ. 11). ուրեմն այդ մոգ մարզպանն այլ կը յարմարի Վահանեանց ժամանակին. յետ Ատրվշնասպ մարզպանի սպանութեան ի սոցանէ՝ ապստամբութիւնը սանձելու եկաւ ի պարսից Ատրներսեհ զօրավար (Ղզ. 378, 90), անշուշտ իւր հետ բերելով մի նոր մարզպան։ Իրաւացի չէ Տէրպօղո-

* Ուղղելի է Երկոտասաներորդ (որ է 449) ըստ նոյն ինքն Եղ. 31, եւ Ղզ. 106։

սեանի նորութեան կամ «ժողովրդականութեան հետք» տեսնելը Վնդոյ եւ Տիրոյ անուանց կազմութեան մէջ, (նման Կարապետ = Կարոյ, Սարգիս = Սարգոյ եւ այլ անուանց), երբ մենք այդպիսի կազմութիւն արդէն Ե դարու մէջ կը գտնենք. Բրքիշոյ, Գադիշոյ, Սատոյ. եւ Զ դարուն Վնդոյ կը կոչուէր Որմզդի չորրորդի աներորդւոց մին (ի Սեբէոս). ուստի եւ այդ եւ Տիրոյ շատ հեռի են Վանանդ եւ Տիրակ կամ այլ անուանց կրճատումն լինելէ։

Անձանց խնդիրն աւելի կը պարզուի քննութեամբ դիպաց՝ որք աւելի որիշ են։ Հաւանական է ս. Գրիգորի շինութիւնը Գիւտայ օրով. արդէն նախ քան զԹովմա կը պատմէ Սեբէոս Վահանայ համար, թէ «շինեաց եկեղեցիս մեծամեծս՝ զոր աւերեալ էր պարսից ի Վաղարշապատ քաղաք, եւ ի Դուին» եւ այլն (Գ, Ա). եւ այդ կը լինի Պերոզի ժամանակ։ Ստոյգ է եւ հայրապետական աթոռոյն ի Դուին փոխադրութիւնը Գիւտայ ժամանակ. սորա մասին նա եւ Շարադրութիւն հայրապետացն հայոց կոչուած ամենահին յիշատակարանը կ՚աւանդէ՝ թէ «հաստատեաց զաթոռ հայրապետութեան ի Դուին»։ — Այս անցքերը Թովմա կը պատմէ յետ սպանութեան Շաւասպայ եւ Վնդոյի։ Սակայն մենք նկատելով՝ որ այս վերջինս առանց քաղաքական շփոթութեանց չէր կրնար լինել, — որով հարկ է Վահանեանց ապստամբութեան ժամանակ դնել զայն, — եւ

թէ յապստամբութեան Յոհան մանդակունի կը նշանակուի ի Փարպեցւոյն կաթողիկոս, եւ Գիւտ վաղուց գահընկէց լինելով ի Պերոզէ՝ կամ մեռած էր յայնժամ եւ կամ առանձնացած կ'ապրէր (Ղզ. 350–2), կը ստիպուինք սորա գահափոխութիւնը պատմութեան մէջ տեղափոխել յառաջ քան զմահ Շաւասպեանց։

Հետեւեալ հանգամանքն այլ, Վարդանայ «ամրանալն ի տորոսականն Ձռայլ» սկսեալ թագաւորութեան անկմանէն, եւ «կործանումն աշխարհիս հայոց» ըստ Թովմայի (81, 85), նոյնպէս չեն յարմարիր մեծին Վարդանայ. զի նա ի խաղաղութեան կը ծառայէր պարսից (Եղ. Ղզ.), եւ ապստամբութեան ժամանակ միշտ ակնյանդիման կռուեցաւ, եւ բնաւ չապաւինեցաւ ի լերինս. եւ հայրենեաց աւերածն յետ իւր անկման միայն պատահեցաւ։ Անոր հակառակ՝ Վահանեանք էին որ մերթ կ'ապաւինէին ի լերինս Տայոց, Խաղտեաց եւ այլն (Ղզ. 413, 43), եւ զաշխարհն արդէն աւերուած գտան։ — Այս բոլորը կը միաբանին հաստատելու՝ թէ Թովմայի կամ Յովհաննու աւանդածները միայն Վահանեանց օրով պատահածներն են, եւ ոչ բնաւ Վարդանանց կամ այլ ժամանակի։ Նոյնպէս եւ յիշատակած նոր անձինքը նոքա են զորս ցուցինք։

Մեր խօսքը յատկացնելով Վարդայ վերայ, գիտենք որ սա իւր եղբօր ապստամբութեան ժամանակ ի Պարսկաստան էր իբր պատանդ,

սեանի Նորութեան կամ «Ժողովրդականութեան Հետք» տեսնելը Վնդոյ եւ Տիրոյ անուանց կազմութեան մէջ, (Նման Կարապետ = Կարոյ, Սարգիս = Սարգոյ եւ այլ անուանց), երբ մենք այդպիսի կազմութիւն արդէն Ե դարու մէջ կը գտնենք. Բրքիշոյ, Գադիշոյ, Սատոյ. եւ Զ դարուն Վնդոյ կը կոչուէր Որմզդի չորրորդի աներորդւոց մին (ի Սեբէոս). ուստի եւ այդ եւ Տիրոյ շատ հեռի են Վանանդ եւ Տիրակ կամ այլ անուանց կրճատումն լինելէ։

Անձանց խնդիրն աւելի կը պարզուի քըննութեամբ դիպաց՝ որք աւելի որիշ են։ Հաւանական է ս. Գրիգորի շինութիւնը Գիւտայ օրով. արդէն նախ քան զԹովմա կը պատմէ Սեբէոս Վահանայ համար, թէ «շինեաց եկեղեցիս մեծամեծս՝ զոր աւերեալ էր պարսից ի Վաղարշապատ քաղաք, եւ ի Դուինի» եւ այլն (Գ, Ա). եւ այդ կը լինի Պերոզի ժամանակ։ Ստոյգ է եւ հայրապետական աթոռոյն ի Դուին փոխադրութիւնը Գիւտայ ժամանակ. սորա մասին նա եւ Շարադրութիւն հայրապետացն հայոց կոչուած ամենահին յիշատակարանը կ՚աւանդէ՝ թէ «հաստատեաց զաթոռ հայրապետութեան ի Դուին»։ — Այս անցքերը Թովմա կը պատմէ յետ սպանութեան Տաւասպայ եւ Վնդոյի։ Սակայն մենք նկատելով՝ որ այս վերջինս առանց քաղաքական շփոթութեանց չէր կրնար լինել, — որով հարկ է Վահանեանց ապըստամբութեան ժամանակ դնել զայն, — եւ

թէ յապստամբութեան Յոհան մանդակունի կը նշանակուի ի Փարպեցւոյն կաթողիկոս, եւ Գիւտ վաղուց գահընկէց լինելով ի Պերոզէ՝ կամ մեռած էր յայնժամ եւ կամ առանձնացած կ'ապրէր (Ղզ. 350–2), կը ստիպուինք սորա գահափոխութիւնը պատմութեան մէջ տեղափոխել յառաջ քան զմահ Շաւասպեանց:

Հետեւեալ հանգամանքն այլ, Վարդանայ «ամրանալն ի տորոսականն Ձռայլ» սկսեալ թագաւորութեան անկմանէն, եւ «կործանումն աշխարհիս հայոց» ըստ Թովմայի (81, 85), նոյնպէս չեն յարմարիր մեծին Վարդանայ. զի նա ի խաղաղութեան կը ծառայէր պարսից (Եղ. Ղզ.), եւ ապստամբութեան ժամանակ միշտ ակնյանդիման կռուեցաւ, եւ բնաւ չապաւինեցաւ ի լերինս. եւ հայրենեաց աւերածն յետ իւր անկման միայն պատահեցաւ: Անոր հակառակ՝ Վահանեանք էին որ մերթ կ'ապաւինէին ի լերինս Տայոց, Խաղտեաց եւ այլն (Ղզ. 413, 43), եւ զաշխարհն արդէն աւերուած գտան: — Այս բոլորը կը միաբանին հաստատելու՝ թէ Թովմայի կամ Յովհաննու աւանդածները միայն Վահանեանց օրով պատահածներն են, եւ ոչ բնաւ Վարդանանց կամ այլ ժամանակի: Նոյնպէս եւ յիշատակած նոր անձինքը նոքա են զորս ցուցինք:

Մեր խօսքը յատկացնելով Վարդայ վերայ, գիտենք որ սա իւր եղբօր ապստամբութեան ժամանակ ի Պարսկաստան էր իբր պատանդ,

եւ չփոթութեան սկիզբները դարձաւ փախըստեամբ (Ղզ. 384, 98). բայց մենք զինք չենք տեսներ իւր եղբարց հետ գնացած ի վիրս՝ մասնակցելու հայոց համար բազմավնաս պատերազմին (Ղզ. 406–12), այլ մնացած զՀայաստան պահելու։ Ահա այս ժամանակ կը կարծենք նորա դիմելն առ Տաճատ եւ Վախրիճ եւ բախիլը Շաւասպեանց հետ։ Զայս իբրեւ մասնական դէպք մի — զի բուն բանակն ի վիրս կը գործէր — չէ յիշած Փարպեցին. ասոր վերայ պէտք չէ զարմանալ, երբ չէ յիշած եւ ոչ հայրապետական աթոռոյն յայտնի փոխադրութիւնը։

Գ. Թովմայի եւ միւս պատմագրաց մէջ՝ ըսինք յառաջ՝ կան ինչ ինչ զանազանութիւնք։ Ահա ադոնք ըստ Տէրպօղոսեանի. Յովհաննէս եւ Վարդան պատմիչ «Վնդոյին եւ Շաւասպին ազգ նախարար են յիշում, . . . իսկ Մշկանին՝ մարզպան։ Սրանց գործունէութեան կենդրոնը Դուինն էր։ Իսկ Թովման Վնդոյին յիշում է ոչ իբրեւ հայ նախարար, այլ պարսից մոգպետ՝ . . . մարզպանի իշխանութիւնով . . . իսկ Մշկանին յիշում է ոչ իբրեւ մարզպան, այլ զօրավար։ Սրանց գործունէութեան կենդրոնը Արտաշատն է եւ ոչ Դուինը»։

Մենք այդչափ զանազանութիւն չենք գըտներ՝ որչափ քննադատը. յիշեալ անձներէն առնունք նախ զՄշկան։ Սա եւս ժամանակակից է Վարդանայ ըստ երից պատմչաց, զոր ըստ Յովհաննու «փախստական առնէր»

